ՊՐՈԼԵՏԱՐՆԵՐ ԲՈԼՈՐ ԵՐԿՐՆԵՐԻ, ՄԻԱՑԵ՛Ք

# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

ՀԿԿ ԿԵՆՏԿՈՄԻ ԱՄՍԱԳԻՐ

9

ՍԵՊՏԵՄԲԵՐ

ԵՐԵՎԱՆ • 1971

## ՄԵՐ ՀԵՂԻՆԱԿՆԵՐԻՆ

«Լենինյան ուղիով» ամսագրի խմբագրությունը խնդրում է հոդվածներ ուղարկելիս ճշտորեն պահպանել հետևյալ կանոնները. տեսական բնույթի հոդվածները 18 մեքենագրական էջից ոչ ավելի, պրակտիկ աշխատանքը և առաջավոր փորձը լուսաբանող հոդվածները՝ 8—10, նամակներն ու թղթակցությունները՝ 4—6, գրախոսականները և մամուլի տեսությունները՝ 6—8 էջ։

Անդրկովկասի ու Հայաստանի հեղափոխական շարժման թեմաներով գրված և Հայաստանում մարքսիզմ-լենինիզմի տարածմանը նվիրված հոդվածները պետք է ունենան ռուսերեն ամփոփում՝ 8 տողի չափով։

Հոդվածները պետք է մեքենագրված լինեն երկու ինտերվալով, երկու օրինակից, հեղինակի կողմից ստորագրված, նշելով հեղինակի լրիվ անունը, հայրանունը և ազգանունը, հասցեն, աշխատանքի վայրն ու հեռախոսի համարը։ Խմբագրությանը հանձնված հոդվածներից մեկը պետք է լինի մեքենագրվածի առաջին օրինակը։ Հոդվածում անհրաժեշտ է ցույց տալ մեջբերումների և թվական տվյալների աղբյուրները։ Ներկայացված հոդվածը անհետևանք կմնա, եթե այն ամբողջապես կամ հատվածներով հրապարակված լինի մամուլի և ինֆորմացիայի որևէ օրգանում։

Սույն կանոնները խախտողների հոդվածները չեն տպագրվի։

Խմբագրությանն ուղարկված հոդվածները չեն վերադարձվում։


# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

9

ՍԵՊՏԵՄԲԵՐ 1971

ԼՈՒՅՍ Է ՏԵՍՆՈՒՄ 1922 ԹՎԱԿԱՆԻՑ

ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ԿԿ-Ի ՏԵՍԱԿԱՆ-ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

«Ленинян угиов» — теоретический и политический журнал ЦК КП Армении


## Բովանդակություն


Լ. Գ. ՍԱՀԱԿՅԱՆ— Կես դար լենինյան դրոշով . . . . . . . . 3

Մ. Հ. ԱՆՏՈՆՅԱՆ— Հասարակության գիտական կառավարման շուրջ . . . 11

Ս. Հ. ԱՎԵՏԻՍՅԱՆ— Դիալեկտիկական մտածելակերպը և մաթեմատիկան . 19

Ա. Տ. ՂԱՆԱԼԱՆՅԱՆ— Սոցիալական մոտիվները հայ ժողովրդական բանահյուսության մեջ . . . . . . . . . . . . . 27

Վ. Հ. ՍԱՐԳՍՅԱՆ— Աշխատանքային նոր օրենսդրություն . . . . . 35

Վ. Պ. ՍԱՀԱՐՅԱՆ— Ռազմա-հայրենասիրական դաստիարակությունը դպրոցում 40

ԿՈՒՍԱԿՑԱԿԱՆ ԿՅԱՆՔ

Ա. Ա. ՀՈՎՍԵՓՅԱՆ— Պրոպագանդայի արդյունավետության չափանիշը . 45

Ա. Վ. ԳԵՎՈՐԳՅԱՆ— Քաղաքական աշխատանքը սեզոնային գործ չէ . . . 53

Վ. Ա. ՄԵՀՐԱԲՅԱՆ— Լիխաչովցիների օգտակար փորձը . . . . . . 59

Ա. Ա. ՍԱՐԳՍՅԱՆ— Ղեկավար կադրերի պատրաստումն ու տեղաբաշխումը (1945—1955 թթ.) . . . . . . . . . . . . . 64

ԷԿՈՆՈՄԻԿԱՅԻ ՀԱՐՑԵՐ

Գ. Ա. ԽՈՐԱՍԱՆՅԱՆ— Մեր քաղաքների զարգացման պրոբլեմները . . 71

Վ. Բ. ՍՏԵՓԱՆՅԱՆ— Ջարենցավանի լիվինի գործարանը . . . . . 78

ՄԻՋԱԶԳԱՅԻՆ ԿՅԱՆՔ

Ն. Վ. ԳԱՍՊԱՐՅԱՆ— Հանուն խաղաղության, ընդդեմ իմպերիալիզմի . . . 82

ՄԵՐ ՀՐԱՊԱՐԱԿՈՒՄՆԵՐԸ

Ստ. Շահումյանի նորահայտ հոդվածը։ . . . . . . . . . 89

ՆՈՐ ՔԱՂԱՔՆԵՐ

ԷՄՄԱ ՍԱՐՈՅԱՆ— Հրազդանի հորիզոնները . . . . . . . . 93

Ս. Ս. ՆԱԼԲԱՆԴՅԱՆ— Կյանքը սարահարթի վրա . . . . . . . 102

ԳՐԱԽՈՍՈՒԹՅՈՒՆ ԵՎ ՔՆՆԱԴԱՏՈՒԹՅՈՒՆ

ԱՋ. Գ. ԱԴՈՅԱՆ— Ամենքին անհրաժեշտ գիրք . . . . . . . 108

Կարևոր ճշգրտում . . . . . . . . . . . . . 112

# Содержание


Л. Г. Саакян — Полвека под ленинским знаменем . . . . 3
М. О. Антонян — О научном управлении обществом . . . . 11
С. А. Аветисян — Диалектическое мышление и математика . . . 19
А. Т. Ганаланян — Социальные мотивы в армянском народном фольклоре . . . . . . . . 27
В. А. Саргсян — Новое трудовое законодательство . . . . 35
В. П. Саарян — Военно-патриотическое воспитание в школе . . 40

ПАРТИЙНАЯ ЖИЗНЬ

А. А. Овсепян — Критерий эффективности пропаганды . . . 45
А. В. Геворкян — Политическая работа—несезонное дело . . . 53
В. А. Меграбян — Полезный опыт лихачевцев . . . . 59
А. А. Саргсян — Подготовка и размещение руководящих кадров (1945 — 1955) . . . . . . . . 64

ВОПРОСЫ ЭКОНОМИКИ

Г. А. Хорасанян — Проблемы развития наших городов . . . 71
В. Б. Степанян — Лизинный завод Чаренцавана . . . . 78

МЕЖДУНАРОДНАЯ ЖИЗНЬ

Н. В. Гаспарян — За мир, против империализма . . . . 82

НАШИ ПУБЛИКАЦИИ

Неизвестная статья С. Шаумяна . . . . . . 89

НОВЫЕ ГОРОДА

Эмма Сароян — Горизонты Раздана . . . . . 93
С. С. Налбандян — Жизнь на горах . . . . . 102

КРИТИКА И БИБЛИОГРАФИЯ

Аз. Г. Адоян — Нужная всем книга . . . . . 108
Важная поправка . . . . . . . 112








# ԿԵՍ ԴԱՐ ԼԵՆԻՆՅԱՆ ԴՐՈՇՈՎ


Լ. Գ. ՍԱՀԱԿՅԱՆ

*ՀԼԿԵՄ Կենտկոմի առաջին քարտուղար*


Լրացավ Հայաստանի լենինյան կոմերիտմիության 50 տարին: Մի փոքր ջոկատից (1921 թվականին նրա շարքերում հաշվվում էր ընդամենը 8 հազար մարդ) Հայաստանի կոմերիտմիությունն աճեց ու դարձավ մի հսկայական բանակ: Այժմ նրա շարքերում քայլում են 285 հազարից ավելի պատանիներ ու աղջիկներ: Անցնելով պայքարի ու փորձությունների դժվարին ուղի, բռնելով ժամանակի քննությունը՝ պատմության բոլոր էտապներում Հայաստանի կոմերիտմիությունն ապացուցեց իր կենսունակությունը, գաղափարական կայունությունը, անսահման անձնվիրությունն ու հավատարմությունը կոմունիստական կուսակցությանը և ժողովրդին: Կոմերիտմիության ամբողջ գործունեությունը՝ երիտասարդության քաղաքական կազմակերպության դերի մասին Լենինի մշակած ուսմունքի ճշմարտացիության և կենսահաստատության վկայությունն է:

Հայաստանի կոմերիտմիության պատմությունը հարուստ է բազում հերոսական գործերով և աշխատավոր մարդու երջանկության համար իրենց կյանքը չխնայած երիտասարդ հերոսների պանծալի անուններով: Նրանց բազմաբեղուն գործունեության շնորհիվ այդ պատմությունը ներկայանում է որպես մի խորհուրդ՝ կյանք մտնող այսօրվա և վաղվա սերունդներին: Կոմերիտմիությունը, կոմունիստական կուսակցության ղեկավարությամբ, հանրապետության երիտասարդությանը տարել է քանդվածն ու ավերվածը վերաշինելու և կառուցելու, ստեղծագործելու հաստատուն ուղիներով: Նա կանգ չի առել արգելքների ու դժվարությունների առջև, չի խուսափել փոթերից ու վըրկանքներից և ժողովրդի մեջ իր բարի անունն ու հարգանքը վաստակել է համառ պայքարի ու անդուլ աշխատանքի գնով:

Հայաստանի առաջին կոմերիտական կազմակերպությունները փարեցին կոմունիզմի դրոշին, որն ահա կես դար է, միշտ վեր պարզած, առաջ է տանում Հայաստանի լենինյան կոմերիտմիությունը: Երբ ետադարձ հայացք ես նետում կոմերիտմիության անցած կեսդարյա ճանապարհին, աչքերիդ առջև իրենց ամբողջ վեհությամբ հառնում են այն անմոռաց գործերը, որոնք նա

գրել է իր ոսկետառ պատմության մեջ:

Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության հաղթանակից հետո, նախասովետական Հայաստանում ստեղծվեցին մի շարք երիտասարդական առաջադիմական կազմակերպություններ, որոնք ակտիվ գործունեություն ծավալեցին աշխատող և սովորող երիտասարդության շրջանում մարքսիզմի ուսմունքը տարածելու, նրանց սոցիալական և քաղաքական ազատագրության պայքարին նախապատրաստելու համար: Սակայն նրանցից ոչ բոլորն էին գաղափարապես և կազմակերպչորեն համախմբված, նկատվում էր երիտասարդական միությունների ծրագրերի, նրանց աշխատանքային մեթոդների, կազմակերպչական ձևերի բազմազանություն: Հայաստանի բոլշևիկների ղեկավարած միությունների առաջադեմ մասը պայքարում էր աշխատավոր երիտասարդությանը միասնական մեկ կազմակերպության մեջ համախմբելու համար: Օրվա հրատապ հարց դարձավ՝ մշակել երիտասարդական շարժման միասնական հեղափոխական ծրագիրը, կազմակերպության գործունեության ձևերն ու մեթոդները, որոշել նրա կազմակերպական սկզբունքները, ուժեղացնել նրանց կուսակցական ղեկավարությունը:

Այդ խնդիրների լուծման գործում անգնահատելի դեր կատարեց Ռուսաստանի բոլշևիկյան կուսակցության պատմական VI համագումարը, որը քննարկեց նաև երիտասարդական կազմակերպությունների ստեղծման հարցը: Ելնելով լենինյան ցուցումներից՝ համագումարն արտահայտվեց կազմակերպչորեն ինքնուրույն, կուսակցության հետ գաղափարապես ամուր կապված երիտասարդական միությունների ստեղծման օգտին: «Երիտասարդական միությունների մասին» բանաձևում համագումարը նշեց, որ պրոլետարիատի կուսակցությունը խորապես գիտակցում է, թե բանվորական երիտասարդությունն ինչ հսկայական նշանակություն ունի ամբողջ բանվորական շարժման համար: Համագումարը միաժամանակ հավաստիացրեց՝ կուսակցությունը ձգտում է, որ երիտասարդական միությունն իր ծագման օրից ընդունի սոցիալիստական բնույթ, Ռուսաստանի բանվորական երիտասարդության ապագա սոցիալիստական միությունը հարի երիտասարդական ինտերնացիոնալին (տե՛ս ՍՄԿԿ-ն բանաձևերում և որոշումներում..., I մաս, Երևան, 1954 թ., էջ 488):

Վեցերորդ համագումարի որոշումները կուսակցության մեծ ուշադրության արտահայտությունն էր իր փոխարինողների նկատմամբ: Այդ պատմական որոշումները լուրջ խթան հանդիսացան ինչպես ամբողջ երկրում, այնպես էլ Անդրկովկասում երիտասարդական հեղափոխական միությունների կազմակերպման համար: Անդրկովկասում, բոլշևիկյան ղեկավարության շնորհիվ, երիտասարդական միություններն ինտերնացիոնալիստական բնույթ ստացան և դարձան Անդրկովկասի կոմերիտմիության նախորդները: Փորձված բոլշևիկ, աննկուն լենինյան Ստեփան Շահումյանի անմիջական նախաձեռնությամբ կուսակցության Բաքվի կոմիտեին կից ստեղծված երիտասարդական միությունն ակտիվ օգնություն էր ցույց տալիս կուսակցությանը՝ նրա մղած հերոսական պայքարում: Միության ակտիվիստներ Սուրեն Շահումյանը, Օլյա Շատունովսկայան, Բորիս Բարխաշևը և ուրիշներ երիտասարդության ուժերը համախմբում էին պրոլետարական ինտերնացիոնալիզմի դրոշի ներքո:

Հայաստանի բոլշևիկների գործունեությունը բանվորների և ամբողջ աշխատավոր մասսաների ինտերնացիոնալ համախմբման, ռուսական պրոլետա-



րիատի հետ նրանց միասնության համար ընթանում էր հայկական բուրժուազիայի հակահեղափոխական, նացիոնալիստական կուսակցության՝ դաշնակների հետ չափազանց սուր պայքարի պայմաններում: Բոլշևիկյան կազմակերպությունների ղեկավարությամբ կազմակերպվեցին հայ երիտասարդության առաջին մարքսիստական ինտերնացիոնալիստական խմբերը: Դրանցից առաջինը Երևանի թեմական դպրոցում ստեղծված խմբակն էր, որի ղեկավարն էր Ղուկաս Ղուկասյանը:

Դաշնակցական ռեժիմի հակաժողովրդական ծանր պայմաններում, որպես հեղափոխական ահազանգ, հնչեց երիտասարդ սպարտակյանների խրոխտ ձայնը: Կոմունիստ-ինտերնացիոնալիստների «Սպարտակ» կազմակերպությունը փաստորեն հանդիսացավ Հայաստանի կոմերիտմիության նախափուլը: Այդ կազմակերպության ոգեշնչողներն ու անմիջական ղեկավարներն էին Ղուկաս Ղուկասյանը, Աղասի Խանջյանը և Արմենակ Բուդաղյանը, որոնք, Հայաստանի մյուս առաջին կոմերիտականների հետ միասին, իրենց կերպարում մարմնավորում էին գաղափարի մարդուն: Նրանք գիտակցական խիզախ պայքարի ելան հանուն հայ ժողովրդի ազատության և լուսավոր ապագայի:

Բանվոր և գյուղացի երիտասարդությունը, Հայաստանի կոմունիստական կուսակցության ղեկավարությամբ, ուս-ուսի տված ավագ սերնդի հետ, խիզախորեն մարտնչում էր մեր հինավուրց հողում սովետական կարգերի հաստատման և ամրապնդման համար: Մայիսյան ապստամբության օրերին Հայաստանի կոմերիտականներից, երիտասարդներից շատերը չխնայեցին իրենց կյանքը՝ այսօրվա և գալիք սերունդների երջանկության, ժողովրդի բարօրության համար: Հայ ժողովրդի ազատագրման արշալույսին հերոսի մահով անհավասար մարտում ընկավ Ղուկաս Ղուկասյանը: Մի քանի օր անց Թիֆլիսի կոմերիտական կազմակերպության կոնֆերանսը լսեց Ղուկասյանի սպանության և Հայաստանում դաշնակցականների վայրագ գործողությունների լուրը: Այդ առթիվ ընդունված բանաձևում ասվում էր, որ Երիտասարդ կոմունիստների Թիֆլիսի կազմակերպության քաղաքային կոնֆերանսը Հայաստանում դաշնակցականների կատարած գազանությունների առթիվ հայտնում է իր բուռն բողոքը և դիմում Ժողկոմխորհին, ընկեր Լենինին, Օրջոնիկիձեին և Բաքվի ռազմահեղափոխական կոմիտեին՝ անմիջապես վերջ տալու Հայաստանում սկսված արյան բաղնիքը և ազատելու բանտարկված ընկերներին:

Անդրկովկասի հեղափոխական երիտասարդությունը սրտի խոր ցավով ընդունեց Ղ. Ղուկասյանի մահվան լուրը: Այդ օրերին ՌԿԵՄ Անդրկովկասյան մարզային կոմիտեի հրապարակած հատուկ թերթիկում կոչ էր արվում երկրամասի երիտասարդությանը՝ անմոռաց պահել կուսակցության անձնվեր զավակ Ղուկաս Ղուկասյանի հիշատակը և նրա օրինակով պայքարել սոցիալիզմի և կոմունիզմի գործի համար:

Մռձավանչը երկար տևել չէր կարող: 1920 թվականի աշնանը Հայաստանում գնալով ավելի էր բարձրանում հեղափոխական շարժման ալիքը: Հաշվի առնելով երկրում ստեղծված իրադրությունը՝ Հայաստանի կոմունիստական կազմակերպություններն աշխատավոր մասսաների ուժերը մոբիլիզացրին՝ հեղափոխության հաղթանակն ապահովելու համար: 1920 թ. նոյեմբերի 29-ին Հայաստանի հեղափոխական կոմիտեն Հայկոմկուսի անունից Հայաստանը հռչակեց Սովետական Սոցիալիստական Հանրապետություն: Հայաստանի աշխատավորությանն օգնության եկավ Սովետական Ռուսաստանի կարմիր

բանակը: Դաշնակցականների և նրանց իմպերիալիստական տերերի անփա-
ռունակ տիրապետությունը խորտակվեց:
Նոյեմբերի 29-ի ապատարար արշալույսից հետո անշեղորեն աճեցին Հա-
յաստանի կոմերիտմիության շարքերը. մեր հանրապետության բոլոր գավառ-
ներում կազմակերպվեցին կոմերիտական բջիջներ: Այդ պայմաններում ի հայտ
եկան աշխատավոր երիտասարդության քաղաքական ակտիվությունն ու ան-
հատնում եռանդը: Կոմերիտմիությունը հանդես եկավ որպես հեղափոխական
ստեղծագործ ուժ, որպես կուսակցության ակտիվ օգնական՝ Հայաստանում սո-
ցիալիստական վերափոխումների համար մղվող պայքարում:

Հայաստանի երիտասարդական կազմակերպությունների միավորման, կո-
մունիստական կուսակցության շուրջը նրանց համախմբման հարցը դարձավ
օրվա հրատապ խնդիր: 1921 թ. օգոստոսի 21-ին հանրապետության կոմերի-
տական կազմակերպությունների առաջին համագումարը հռչակեց Հայաստա-
նի կոմունիստական երիտասարդական միության ստեղծումը: Ձևավորվելով
որպես ՌԿԵՄ (հետագայում ՀամԼԿԵՄ) մարտական ջոկատներից մեկը՝ Հա-
յաստանի կոմերիտմիությունը, կոմունիստական կուսակցության ղեկավարու-
թյամբ, ամբողջովին նվիրվեց հանրապետության ժողովրդական տնտեսության
վերականգնման, նոր հասարակարգի կառուցման խնդիրների լուծմանը:

Ապատագրված Հայաստանը պետք էր կառուցել, դարձնել երկրի ծաղկուն
ու շեն հանրապետություններից մեկը: Բայց դա հեշտ գործ չէր: Սակայն կյան-
քի նկատմամբ լավատեսությունը, նվիրվածությունը հեղափոխական գործին՝
հայ երիտասարդությանը մղում էր անձնուրաց աշխատանքի: Հանրապետու-
թյան կոմերիտմիության, ամբողջ երիտասարդության կյանքի և պայ-
քարի ծրագիր դարձավ Վ. Ի. Լենինի ճառը Ռուսաստանի կոմունիստական
երիտասարդական միության III համագումարում, 1920 թ. հոկտեմբերի 2-ին:
Սահմանելով կոմերիտմիության խնդիրները՝ Վ. Ի. Լենինը ՌԿԵՄ III համա-
գումարում ասել է. «...երիտասարդության միությունը և կոմունիզմին անցնել
ցանկացող ամբողջ երիտասարդությունն ընդհանրապես պետք է կոմունիզմ
սովորի» (Երկեր, հ. 31, էջ 334): Հայաստանի կոմերիտմիությունը հավատա-
րիմ մնաց լենինյան այս ավանդին իր պատմության ամբողջ ճանապարհին:
Պատմական երրորդ համագումարից հետո հաջորդող ժամանակաշրջանում նո-
րանոր խնդիրներ ծառացան կոմերիտմիության առջև: Կոմերիտմիությունը կո-
մունիստական կուսակցության ղեկավարությամբ կառուցեց բկկտված Հայաս
տանը: Սովի և քայքայվածության տարիներին կոմերիտմիությունն իր մեջ
ուժ գտավ՝ պատվով կատարելու կուսակցության հանձնարարությունները:

1924 թ. հունվարի 21-ին սովետական ժողովուրդը, կոմունիստական կու-
սակցությունը ծանր կորուստ կրեցին: Վախճանվեց կոմունիստական կուսակ-
ցության և միջազգային հեղափոխական բանվորական շարժման առաջնորդ,
սովետական պետության հիմնադիր Վլադիմիր Իլյիչ Լենինը: 1924 թ. հուլի-
սին Մոսկվայում հավաքված կոմերիտմիության VI համագումարը միահամուռ
կամքով որոշեց այսուհետև երիտասարդության կազմակերպությունը կոչել Լե-
նինի անունով: Նույն թվականից մեծ առաջնորդի անունն է կրում նաև Հա-
յաստանի կոմերիտմիությունը: Փարելով այդ անվանը՝ Հայաստանի կոմերի-
տականներն ու երիտասարդները երդվեցին՝ ապրել, աշխատել և պայքարել
լենինաբար, ճշտորեն իրագործել Իլյիչի պատգամները: Հայաստանի կոմերիտ-
միության անցած հիսնամյա ուղին նրա հավատարմության համոզիչ ապա-



ցույցն է: Կոմունիստական կուսակցության ղեկավարությամբ Հայաստանի կո-
մերիտականներն ու երիտասարդներն ակտիվորեն մասնակցեցին ժողովրդա-
կան տնտեսության վերականգնմանը, սոցիալիստական ինդուստրացմանը,
գյուղատնտեսության կոլեկտիվացմանը, կուլտուրական հեղափոխության իրա-
կանացմանը, հնգամյակների հոյակապ պլանների կատարմանը:

Սոցիալիզմի կառուցման ծրագիրն էր ՍՍՀՄ ժողովրդական տնտեսության
զարգացման առաջին հնգամյա պլանի կենսագործումը: Հնգամյա պլանով
նախատեսված խնդիրների լուծման համար կուսակցությունը մեծ դեր էր տալիս
կոմերիտմիությանը՝ որպես իր մարտական օգնականի: Առաջին հնգամյակի
դիրեկտիվներում, որը հաստատվել էր կուսակցության XV համագումարում,
1927 թ. վերջին, ասվում էր. «Համագումարն ուշադրություն է դարձնում կո-
մերիտմիության մեծ դերին և նրա առջև կանգնած այժմյան խնդիրներին: Կո-
մերիտմիությունը պետք է նոր նախաձեռնությունների հեղինակը և անցկաց-
նողը լինի քաղաքում և գյուղում: Կոմերիտմիությունը պետք է լինի կուսակ-
ցության գլխավոր օգնականը տեխնիկական և կուլտուրական հետամնացու-
թյունը վերացնելու համար մղվող պայքարում...»: Վերոհիշյալ ցուցումներով
էր ղեկավարվում Հայաստանի կոմերիտմիությունը: Որպես անձնազոհ աշխա-
տանքի հուշարձաններ՝ ծնվեցին Ձորագէսն ու Շիր-կանալը, արդյունաբերա-
կան առաջնեկները, նոր շունչ առան հանքախորշերը, ծաղկեցին համայնական
դաշտերը, ստեղծվեց կուլտուր-լուսավորական օջախների լայն ցանց:

Հայաստանում չկա մեծ կամ փոքր արդյունաբերական ձեռնարկություն,
կառույց, կոլտնտեսություն կամ սովխոզ, որոնց շինարարությանն ու կազմա-
կերպմանը մասնակցած չլինեն հանրապետության կոմերիտականներն ու երի-
տասարդները: Առաջին հնգամյակի սկզբին հանրապետությունում կառուցվե-
ցին արդյունաբերական 14 օբյեկտներ: Հայաստանն արագ տեմպերով վերա-
կանգնում էր ժողովրդական տնտեսությունը: Մյուս միութենական հանրապե-
տությունների հետ միասին նա ձեռնամուխ եղավ կենսագործելու երկրի էլեկ-
տրիֆիկացման և ինդուստրացման լենինյան պլանը: Մեր հանրապետության
լենինյան կոմերիտմիությունը դարձավ էլեկտրիֆիկացման շեֆը, հերոսաբար
աշխատեց Ձորագէսի, Քանաքեռգէսի և Սևան—Հրազդան կասկադի մյուս հիդ-
րոէլեկտրակայանների շինարարությունում: Ձորագէսի կառուցմանն ակտիվո-
րեն մասնակցելու համար Հայաստանի կոմերիտմիությունը պարգևատրվեց
Անդրֆեդերացիայի Աշխատանքային կարմիր դրոշի շքանշանով:

Հայաստանի կոմերիտմիությունն ակտիվ մասնակցեց նաև գյուղի սոցիա-
լիստական վերափոխումներին: Միայն 1929 թվականին ՀԼԿԵՄ Կենտկոմի
նախաձեռնած «Բերքի համար» արշավի ընթացքում ստեղծվեցին 70 կոլտնտե-
սություններ:

Սոցիալիզմի կառուցումը մեր երկրում ընթանում էր միջազգային լարված
իրադրության պայմաններում: Իմպերիալիստները չէին հաշտվում աշխար-
հում միակ սոցիալիստական պետության գոյության փաստի հետ: Նրանք ծրա-
գրում էին ռազմական հարձակում գործել մեր երկրի վրա: Սովետական Միու-
թյան կոմունիստական կուսակցությունն անում էր ամեն ինչ՝ պատերազմից
խուսափելու համար: Սակայն կանգնեցնել պատերազմը հնարավոր չեղավ.
նենգ թշնամին 1941 թ. հուլիսի 22-ին, մինչև ատամները զինված, արևմտյան
երկրների դեմ տարած հեշտ հաղթանակներից արբած իր բանակների հար-
վածն ուղղեց խաղաղ շինարարությամբ զբաղված Սովետական Միության դեմ:

Կոմունիստական կուսակցությունը և սովետական կառավարությունը բանակին և ամբողջ ժողովրդին կոչ արեցին կրծքով պաշտպանելու հայրենիքը, Հոկտեմբերյան հեղափոխության նվաճումները: Այդ իրադրության մեջ առանձնահատուկ ուժով արտահայտվեցին Սովետական Հայաստանի կոմերիտականների և երիտասարդության բոցավառ սովետական հայրենասիրությունը, սերը սոցիալիստական հայրենիքի, հավատարմությունը կոմունիզմի մեծ իդեալների նկատմամբ: Հանրապետության երիտասարդ հայրենասերները բազմահազարներեն ներխուժում էին զինկոմիսարիատները՝ կամավոր գրվելու համար: Միայն պատերազմի առաջին օրերին կամավոր ռազմաճակատ մեկնեցին Հայաստանի 20 հազար կոմերիտականներ:

Կոմունիստական կուսակցությունը նշում էր, որ հաղթանակը ձեռք է բերվելու ո՛չ միայն ռազմաճակատում, այլև՝ թիկունքում: Տասնյակ հազարավոր երիտասարդներ կանգնեցին աշխատանքային հերթափոխի՝ «Ռազմաճակատում կռվող իմ հոր և եղբոր փոխարեն» նշանաբանով:

Հօդս ցնդեցին կայծակնային հաղթանակի հասնելու հիտլերականների հաշիվները: Սովետական հողում զավթիչները հանդիպեցին ո՛չ միայն սովետական բանակի, այլև ամբողջ ժողովրդի համառ դիմադրությանը: Հերոսության օրինակներ էին ցույց տալիս կոմերիտմիության սաները: Իր անունը ոսկե տառերով անմահացրեց Բրեստի ամրոցի հերոսական կայազորը: Սովետական ժողովուրդը հպարտությամբ իմացավ իր հերոս զավակների՝ Նիկոլայ Գաստելլոյի, Սամվել Մաթևոսյանի, Ալեքսանդր Մատրոսովի, Հունան Ավետիսյանի և հազարավոր այլ երիտասարդների սխրագործությունների մասին: Ֆաշիստական հրոսակախմբերն զգացին սովետական մարդու ուժը: Թշնամին սկսեց իրար ետևից ծանր պարտություններ կրել: Մեր քաջարի ռազմիկները, հաղթահարելով թշնամու համառ դիմադրությունը, սրընթաց գնում էին դեպի Արևմուտք: Այդ մարտերում իրենց անունը փառքով պսակեցին նաև հայ երիտասարդներ Ջահան Կարախանյանը, Սերգեյ Գրիգորյանը, Նելսոն Ստեփանյանը, Սերգեյ Բուռնազյանը, Գրիգոր Փալանջյանը, Սուրեն Առաքելյանը և շատ ուրիշներ, որոնք արժանացան Սովետական Միության հերոսի կոչման, պարգևատրվեցին շքանշաններով ու մեդալներով: 1945 թ. թշնամին ծնկի չոքեց սովետական հերոսական բանակի առջև. ֆաշիզմը ջախջախվեց իր բնում:

Պատերազմից հետո սովետական մարդիկ առանց ժամանակ կորցնելու, իրենց ամբողջ ուժը նվիրեցին նրա հետևանքների վերացմանը և ժողովրդական տնտեսության հետագա զարգացմանը: Հայաստանի կոմերիտականները, ցույց տալով անձնական օրինակներ, իրենց ետևից տանում էին երիտասարդությանը: Եվ չկար այնպիսի տեղամաս, որտեղ երիտասարդ հայրենասերները լավ նախաձեռնություններ հանդես չբերեին: Նոր կյանք առան Ղափանի ու Քաջարանի հանքերը, սխրանքների հիանալի օրինակներ ցույց տվեցին Կառնուտի ջրամբարի, Արփնի—Շամիրամ, Թալինի ջրանցքների, Սևան—Երևան կասկադի երիտասարդ շինարարները, Շիրակի և Արարատյան դաշտերի հողագործները, Երևանի և Կիրովականի քիմիագործները, Լենինականի տեքստիլագործները:

Հանրապետության ինդուստրիալ քարտեզի վրա հայտնված նոր օբյեկտների շինարարությունը անխզելիորեն կապված է Հայաստանի լենինյան կոմերիտմիության անվան հետ: Հրազդանի, Չարենցավանի, Կամոյի, Սևանի, Դիլիջանի, Աբովյանի արդյունաբերական ձեռնարկությունների հիմքը դրվել



է կոմերիտականների և երիտասարդների ձեռքերով: Հայ պատանիներն ու աղջիկներն օգնեցին կառուցելու ծանր արդյունաբերության այնպիսի հսկաներ, ինչպիսիք են Երևանի «Պոլիվինիլացետատ», Չարենցավանի հաստոցաշինական, Կիրովականի «Ավտոմատիկա» գործարանները: Տասներկու հազարից ավելի հայ երիտասարդներ կոմերիտական ուղեգրերով մեկնեցին խամ ու խոպան հողերը՝ յուրացնելու Սիբիրի, Հեռավոր Հյուսիսի, Հեռավոր Արևելքի և մեր մեծ հայրենիքի մյուս շրջանների բնական հարստությունները:

Հայաստանի կոմերիտմիության հայրենանվեր աշխատանքի արժանի գնահատականն էր նաև այն, որ նրա առաջավոր ջոկատներից մեկը՝ Հոկտեմբերյանի շրջանային կոմերիտական կազմակերպությունը, գյուղատնտեսական արտադրության զարգացման և երիտասարդության կոմունիստական դաստիարակության ասպարեզում կատարած ակտիվ գործունեության համար պարգևատրվեց Աշխատանքային կարմիր դրոշի շքանշանով:

Հավատարիմ լենինյան պատգամներին՝ Հայաստանի կոմերիտմիությունն ակտիվ մասնակցություն է ցույց տալիս կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծման համար մղվող համաժողովրդական պայքարին, հանդես գալիս որպես սոցիալիստական մրցության նախաձեռնող, պայքարում արտադրանքի ավելացման, որակի բարելավման, հումքի և էլեկտրաէներգիայի խնայման, հասարակական արտադրության տնտեսական արդյունավետության բարձրացման համար: Նա այնպիսի հարվածային խումբ է, որն, ինչպես մեծ առաջնորդ Վ. Ի. Լենինն էր ասում, ամեն մի աշխատանքում դրսևորում է իր ձեռներեցությունը:

Իրականացնելով լենինյան այս պատգամը՝ Հայաստանի կոմերիտմիությունը հանդես է գալիս որպես մեծ նշանակություն ունեցող խոշոր գործերի նախաձեռնող: Առանձնապես բեղմնավոր էր վերջին տասնամյակը, երբ ծնվեցին ու կյանքի կոչվեցին բազմաթիվ արժեքավոր նախաձեռնություններ, ինչպիսիք էին՝ «Մեկ գումարած երկու», «Մեր մակնիշը մեր պատիվն է», «Արտադրական նորմա չկատարող և ոչ մի երիտասարդ» և այլն: Արտաշատի շրջանում սկսված «Հարուստ հեկտարի համար» և Սիսիանում՝ «Հարուստ ֆերմայի համար» շարժումները լայն տարածում գտան ո՛չ միայն Հայաստանում, այլև ամբողջ երկրում մեկ: Իրենց անձնազոհ աշխատանքով համաժողովրդական ճանաչման արժանացան Երևանի էլեկտրամեքենաշինարարներն ու էլեկտրալամպերի գործարանի երիտասարդ բանվորները, Լենինականի տեքստիլագործներն ու երկաթուղայինները, Կիրովականի քիմիագործներն ու Ալավերդու հանքափորները: Հարվածային աշխատանքի արդյունքը եղավ այն, որ հանրապետության 70 հազարից ավելի կոմերիտականներ ժամկետից շուտ կատարեցին ութերորդ հնգամյակով նախատեսված իրենց պլանները: Հայաստանի կոմերիտականների լավագույն գործերի ստուգատես հանդիսացան Վ. Ի. Լենինի ծննդյան 100-ամյակի և ՍՄԿԿ XXIV համագումարի առթիվ անցկացված համամիութենական լենինյան ստուգարքները: Միայն «Մենք Լենինի և կուսակցության գործին հավատարիմ ենք» համամիութենական լենինյան ստուգարքին մասնակցեցին կես միլիոնից ավելի կոմերիտականներ և երիտասարդներ:

Ստովի թերթելով Հայաստանի կոմերիտմիության վերջին տասնամյակի տարեգրությունը՝ ակամայից հանգում ես այն հետևության, թե որքա՜ն մեծ ու բազմազան են կոմերիտմիության գործերը, որքա՜ն մեծացել է նրա դերը՝ որպես հասարակական-քաղաքական ուժի: Մեր կոմերիտականների և երիտա-

սարդության աշխատանքային փառահեղ հաջողությունների պատմության յուրաքանչյուր տողը պերճախոս բացահայտում է այն գլխավորը, որ լենինյան կոմերիտմիությունը, մեր ողջ երիտասարդ սերունդն ակտիվ մասնակցում է կոմունիզմի կառուցման ծրագրի իրականացման համար մղվող համաժողովրդական պայքարին: Ահա մի քանի բնորոշ թվեր: Վերջին մի քանի տարվա ընթացքում մոտ 10 հազար երիտասարդներ մեկնեցին նորակառույցները, ավելի քան 10 հազար մարդ՝ խամ և խոպան հողերը, ավելի քան 5 հազար պատանիներ ու աղջիկներ համալրեցին անասնապահների շարքերը: Հանրապետության ուսանողական-շինարարական ջոկատների ուժերով կատարվեց ավելի քան 20 միլիոն ռուբլու շինմոնտաժային աշխատանք:

Այժմ կյանքում արմատավորվել են այնպիսի հասկացություններ, ինչպես «Կոմերիտական հարվածային կառույց», «Կոմերիտական-երիտասարդական բրիգադ», «Կոմերիտական-երիտասարդական ֆերմա», «Կոմերիտմիության ազդեցության գոտիներ» և այլն: Ոչ մի խոշոր նորակառույց առանց կոմերիտմիության մասնակցության շահագործման չի հանձնվում: Կոմերիտական հարվածային բոլոր կառույցները, որպես կանոն, գործարկվում են ժամկետից շուտ, դառնում շինարարության առաջավոր մեթոդների լաբորատորիաներ:

Հայաստանի լենինյան կոմունիստական երիտասարդական միության պատմությունը մեր կուսակցության պատմության անբաժան մասն է: Աշխատավոր երիտասարդությունն ընթացավ բոլշևիկների ետևից, և դա դարձավ պատմության ամենամեծ օրինաչափությունը: Նա բոլշևիկների մեջ տեսավ այն միակ ուժը, որը կարող էր պատանիներին տալ լավ կյանք ու երջանկություն: Իր հիսնամյա ամբողջ ճանապարհին Հայաստանի կոմերիտմիությունը միշտ զգացել և զգում է կուսակցության հայրական հոգատարությունը:

ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար Լ. Ի. Բրեժնևը կուսակցության XXIV համագումարում բարձր գնահատեց լենինյան կոմերիտմիության խաղացած դերը երկրի հասարակական-քաղաքական կյանքում: Չէ՛ որ կուսակցությունը կոմերիտմիությունից շարունակ նոր ուժեր է քաղում: Նա կոմերիտմիությանը համարում է սովետական երիտասարդության մարտական ավանգարդը, իր հուսալի ռեզերվը: «...Կուսակցությունը, ասաց Լ. Ի. Բրեժնևը,— իրավամբ հպարտանում է կոմունիզմի երիտասարդ կառուցողներով: Մեր պարտքն է նոր սերունդներին հաղորդել մեր քաղաքական փորձը, տնտեսական և կուլտուրական շինարարության պրոբլեմների լուծման փորձը, ղեկավարել երիտասարդության գաղափարական դաստիարակությունը, ամեն ինչ անել, որպեսզի նա ըստ արժանվույն շարունակի հայրերի գործը, մեծ Լենինի գործը» (ՍՄԿԿ Կենտկոմի հաշվետու զեկուցումը, Երևան, 1971 թ. էջ 125):

Այս բարձր գնահատականն ու կուսակցության վստահությունը ոգեշնչում են սովետական երիտասարդությանը, նրան կոչում աշխատանքային նորանոր սխրանքների՝ ի փառս մեր հայրենիքի:

Աշխատանքային ու քաղաքական աննախընթաց հաջողություններով դիմավորելով իր կեսդարյա տարելիցը՝ մեր հանրապետության կոմերիտականները, պատանիներն ու աղջիկները հավաստիացնում են հարազատ կուսակցությանը, որ նրանք միշտ և անշեղ կընթանան կուսակցության ետևից, բոլոր ուժերը, գիտելիքները, եռանդը կնվիրաբերեն նրա XXIV համագումարի որոշումների կենսագործմանը:

# ՀԱՍԱՐԱԿՈՒԹՅԱՆ ԳԻՏԱԿԱՆ ԿԱՌԱՎԱՐՄԱՆ ՇՈՒՐՋ

Մ. Հ. ԱՆՏՈՆՅԱՆ

*ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ XXIV համագումարը պատմական իրադարձություն է, նոր ուղենիշ կոմունիզմի կառուցման գործում: Համագումարի փաստաթղթերում տրված է սոցիալիստական հասարակության հետագա սոցիալական, տնտեսական, քաղաքական, հոգևոր զարգացման, ժողովրդի կյանքի նյութական և կուլտուրական մակարդակի անշեղ բարձրացման գիտական ծրագիրը:*

*Համագումարն հատկապես ընդգծեց, որ նշված խնդիրների լուծման կարևորագույն պայմանը սոցիալ-տնտեսական բոլոր պրոցեսների պլանավորման և կառավարման ըստ ամենայնի կատարելագործումն է: Ահա թե ինչու է արդի էտապում գիտական կառավարման պրոբլեմը դարձել կուսակցության քաղաքականության և պրակտիկ գործունեության առանցքային խնդիրներից մեկը: Առանց գիտական կառավարման մեր հասարակության նյութական և հոգևոր ուժերը չեն կարող բազմակողմանիորեն առաջադիմել:*

## ԳԻՏԱԿԱՆ ԿԱՌԱՎԱՐՄԱՆ ԱՃՈՂ ԴԵՐԸ

*ԿԱՌԱՎԱՐՄԱՆ տիպը, դերն ու խնդիրները կրում են կոնկրետ-պատմական բնույթ: Տվյալ էտապում իշխող արտադրահարաբերությունների հասարակական զարգացման էությամբ է բնորոշվում հասարակական պրոցեսների կառավարման սոցիալական բնույթը: Կապիտալիստական հարաբերությունների պայմաններում կառավարումը, որ բացառապես շահագործողական փոքրամասնության ֆունկցիան է, կոչված է ապահովելու այդ փոքրամասնության տիրապետությունը մասսաների նկատմամբ:*

*Սոցիալիզմը արմատապես փոխում է հասարակության կառավարման բնույթը, նպատակը և խնդիրները: Պատմության մեջ առաջին անգամ հասարակության կառավարումը դարձավ աշխատավորական լայն զանգվածների ֆունկցիան, որոնք նպատակ ունեն կառուցել ամենաարդարացի և առաջադիմական հասարակարգ՝ կոմունիզմ, որի առաջին փուլը սոցիալիզմն է: Միայն կոմունիստական ֆորմացիայի ժամանակ է հասարակության կառավարումը իրականացվում գիտության օրենքների հիման վրա:*

Մեր ժամանակներում հասարակության, մասնավորապես, սոցիալիստա-
կան հասարակության կառավարումը դարձել է ինքնուրույն գիտություն։ Վեր-
ջինս, ներգործելով հասարակական սիստեմի վրա, կոչված է կոմունիստական
հասարակության կառուցման խնդիրներին համապատասխան կարգավորելու,
կանոնավորելու հասարակական պրոցեսները։
Կառավարման գիտականության էությունը կառավարման սուբյեկտի այն-
պիսի ներգործությունն է դրա օբյեկտի բոլոր օղակների, սոցիալ-տնտեսական
բոլոր պրոցեսների վրա, որոնք լիովին համապատասխանում են սոցիալական
կյանքի՝ ամբողջությամբ վերցրած, նրա յուրաքանչյուր օղակի՝ մասնավորա-
պես, ճանաչված օբյեկտիվ օրենքներին։ Կառավարման գիտականությունն
արտահայտվում է նաև նրանում, որ մարդկանց կառավարչական գործունեու-
թյունը, կառավարման սուբյեկտի ողջ սիստեմը ճշտորեն համապատասխա-
նում են հասարակության հնարավորություններին, աշխատավոր մասսաների՝
պատմական պրոցեսի արարիչների ձգտումներին, շահերին։
Միայն այդպիսի համապատասխանության դեպքում է հնարավոր նպա-
տակային ներգործությունը հասարակական կյանքի, միլիոնավոր աշխատա-
վորների, աշխատավորական կոլեկտիվների գործունեության վրա։ Այդ նշա-
նակում է, որ պետք է առավել լավ կազմակերպել հասարակության գործու-
նեությունը՝ տնտեսական և սոցիալ-քաղաքական զարգացումն արագացնելու
նպատակով, ապահովել եղած հնարավորությունների ու ռեզերվների առավել
լրիվ օգտագործումը, ավելի սերտորեն միավորել աշխատավորական կոլեկ-
տիվներին ու զանգվածներին՝ կուսակցության քաղաքականության գլխավոր
նպատակների շուրջը։ Ուստի, կառավարման հարցերը վերաբերում են ո՛չ մի-
այն ղեկավարների ու մասնագետների մի նեղ շրջանակի, այլև բոլոր կազմա-
կերպություններին, աշխատավորների բոլոր կոլեկտիվներին։
Սակայն ինչո՞ւ հասարակության գիտական կառավարման հարցերն այժմ
առանձնապես հրատապ են դարձել։ Այդ հարցի խորապես պատճառաբանված
պատասխանը մենք գտնում ենք կուսակցության XXIV համագումարին տրված
ՍՄԿԿ Կենտկոմի հաշվետու զեկուցման մեջ, որով հանդես եկավ ՍՄԿԿ Կենտ-
կոմի գլխավոր քարտուղար Լ. Ի. Բրեժնևը։ Նա ասաց, որ, առաջին, մեր էկո-
նոմիկայի մասշտաբների աճը և նրանում կատարված որակական տեղաշար-
ժերը նոր, ավելի բարձր պահանջներ են ներկայացնում կառավարմանը, թույլ
չեն տալիս բավարարվելու գոյություն ունեցող ձևերով ու մեթոդներով, նույ-
նիսկ եթե դրանք անցյալում լավ են ծառայել։
Խոսելով ՍՍՀՄ-ում սոցիալիզմի հաղթանակի սկզբնական ժամանակա-
շրջանի համեմատությամբ մեր էկոնոմիկայի նոր մասշտաբների մասին, կա-
րելի է բերել հետևյալ հանրահայտ փաստը. մեր էկոնոմիկան ներկայումս մեկ
օրվա ընթացքում արտադրում է գրեթե երկու միլիարդ ռուբլու հասարակական
արտադրանք, այսինքն՝ 10 անգամ ավելի, քան օրական արտադրվում էր 30-
ական թվականների վերջում։ Պետք է դրան ավելացնել նաև տեղի ունեցող
գիտատեխնիկական առաջընթացի արագ աճը, որը հասարակական վիթխարի
ուժ է։ Այդ ամենը պահանջում է բարձրացնել կառավարման մակարդակը։
Երկրորդ, այժմ լուրջ կերպով ընդլայնվել են հասարակական պրոցեսնե-
րի կառավարումը բարելավելու հնարավորությունները։ Դա կապված է կադ-
րերի, աշխատավորների միլիոնավոր զանգվածների գիտելիքների մակարդա-
կի և պրոֆեսիոնալ պատրաստության բարձրացման, կառավարման գիտու-



թյան և էլեկտրոնային հաշվիչ տեխնիկայի, արդյունաբերության, գյուղա-
տնտեսության, կապի, առևտրի և տրանսպորտի ձեռնարկությունների ու կազ-
մակերպությունների ավտոմատացված սիստեմների արագ զարգացման հետ։
Երրորդ, շատ կարևոր է գիտական կառավարման հարցի քաղաքական
կողմը։ Տնտեսական մեխանիզմի անխափան աշխատանքը, հասարակական
օրգանիզմի, որպես հսկայածավալ ու բարդ սիստեմի, բոլոր օղակների հըս-
տակ կառավարումն օգնում են բարեհաջող, գործարար իրադրության ստեղծ-
մանը երկրում, նպաստում լայն զանգվածների աշխատանքային վերելքին,
առաջ բերում աշխատավորների նախաձեռնության աճ, քանի որ մարդիկ
տեսնում են իրենց գործադրած ջանքերի արդյունքները։ Մյուս կողմից, ոչինչ
նրանց մեջ այնպես սառնություն չի առաջացնում, ինչպես չկշռադատված
որոշումների փաստերը, առանձին աշխատողների բյուրոկրատիզմը կամ
բյուրոկրատիզմը, երևույթներ, որոնք առաջացնում են ծախսված աշխատան-
քի, հասարակական հարստության անտեղի կորուստներ։
Հասարակության կառավարման ողջ աշխատանքի մակարդակի բարձրա-
ցումը արդի գիտական պահանջներին, այդ մակարդակի համապատասխան-
ցումը էկոնոմիկայի զարգացմանը, կարևոր խնդիր է, տնտեսական և սոցիա-
լական առաջընթացի գլխավոր աղբյուրներից մեկը։
Կառավարման գիտությունը, որ խարսխվում է փիլիսոփայական, մաթե-
մատիկական, սոցիոլոգիական, տնտեսական, իրավական գիտությունների
նվաճումների վրա, հասարակության ու մարդու ճանաչման ու կոմունիստա-
կան վերափոխության գործիք է։ Ուրեմն, կյանքի հրամայական պահանջն է՝
ուսումնասիրել այդ կենսաթրթիռ պրոբլեմներով հարուստ գիտությունը։
Իհարկե, կառավարման գիտության առկայությունը տակավին չի հեշ-
տացնում հասարակության կոնկրետ սոցիալական պրոցեսների կառավարու-
մը։ Վերջինիս կիրառումը կյանքում պահանջում է խոր գիտելիքներ ո՛չ միայն
արդի երևույթների, այլև զարգացման ուղղությունների ու հեռանկարների,
արդյունքների, ընդունվող որոշումների հնարավոր հետևանքների մասին։

## ԿԱՌԱՎԱՐՈՒՄԸ ԳԻՏՈՒԹՅՈ՞ՒՆ Է, ԹԵ՞ ԱՐՎԵՍՏ

ԱՐՏԱՍԱՀՄԱՆՅԱՆ սոցիոլոգիական գրականության մեջ երբեմն վի-
ճում են, թե սոցիալ-տնտեսական պրոցեսների կառավարումը գի-
տությո՞ւն է, թե՞ արվեստ։ Անդրադառնալով այդ հարցին, ակա-
դեմիկոս Վ. Ա. Տրապեզնիկովն ընդգծում է, որ հասարակական սիստեմների
կառավարումը նշանակալի չափով արվեստ է, բայց մեր ժամանակներում
այն ավելի ու ավելի մեծ չափով գիտություն է դառնում։
Կուրս բարձրագույն կառավարչական անձնակազմի համար խորագիրը
կրող վեցհատորյակի (որը ԱՄՆ-ում կառավարչական մտքի վերջին նվաճումն
է) հեղինակները, ըստ էության, այնպես են կարծում, թե կառավարումը սոսկ
արվեստ է։ Նրանք գրում են. «Մենք դիտավորությամբ տեսությունը հասցրել
ենք նվազագույնի, դրա փոխարեն մեր շարադրանքում նախապատվություն
տալով այն բանին, թե ինչ է արվում կառավարման հետ, ինչպես և ինչու է
դա այդպես արվում։ Մենք հավատում ենք, որ ընթերցողների մեծամասնու-
թյունը կողջունի այդպիսի պրագմատիկ մոտեցումը մեծ բարդության ներկա-

յացնող թեմային» (տե՛ս «Курс для высшего управленческого персонажа», համառոտ թարգմանություն անգլերենից. 1971, էջ 5)։

Հասարակության կառավարումը հանդես է գալիս թե՛ որպես գիտություն, թե՛ արվեստ։ Կառավարման այդ երկու կողմերը միշտ գոյություն կունենան, սակայն գերակշռողը գիտությունն է։ Դա հասկանալի է, որովհետև կառավարման բուն արվեստը, մարդկանց, կոլեկտիվների վրա նպատակահարմար ներգործությունը սոցիալական կյանքի զարգացման պրոցեսում կարող է հաջող լինել, եթե այն հենվում է գիտության, հասարակության և կառավարչական հարաբերությունների օբյեկտիվ օրինաչափությունների վրա։

Կառավարումը գիտություն է դիտվում, որովհետև այն ելնում է հասարակության մեջ տեղի ունեցող օբյեկտիվ փաստերի, պրոցեսների հաշվառումից, հասարակական զարգացման օբյեկտիվ պահանջներից, խարսխվում սոցիալական կյանքի օբյեկտիվ օրենքների ու օրինաչափությունների հաստատուն հիմքի վրա, ելակետ ընդունում հասարակական օրգանիզմի զանազան օղակներում եղած գործերի դրության ստույգ, օբյեկտիվ ինֆորմացիան, հենվում առաջավոր գիտության ու տեխնիկայի արդի նվաճումների վրա։

Կառավարման գիտությանը բնորոշ են հետևյալ գծերը. այն վեր է հանում օբյեկտիվ պրոցեսներ, փաստեր, բացահայտում կառավարչական ապարատի օրենքները, դրանք դարձնում հասարակության, աշխատանքային կոլեկտիվների ղեկավար կազմի, կառավարչական գործունեությանը մասնակից աշխատավորական զանգվածների սեփականությունը, հաշվի առնում հասարակության, առանձին դասակարգերի, հատուկ խմբերի, տարբեր ազգերի, ժողովուրդների, կոլեկտիվների, մարդկանց համակողմանի շահերը, աշխատավորներին ապահովում օբյեկտիվ ինֆորմացիայով՝ իրական սոցիալական իրադրության, նախատեսված միջոցառումների կատարման ընթացքի մասին։

Կենսագործելով կառավարման գիտության այդ պահանջները, կուսակցությունը պայքարել ու պայքարում է ինչպես տարերայնության տեսության, այնպես և սուբյեկտիվիզմի չհիմնավորված որոշումների դեմ։

Վ. Ի. Լենինը սովորեցնում էր, որ կառավարման արվեստը բնածին չէ, այլ փորձով է տրվում։ Այդ փորձին պետք է տիրապետեն բոլոր ղեկավարները։ Այլապես դժվար է կենսագործել սոցիալիստական հասարակության կառավարման հիմնական խնդիրը՝ առավել նվազագույն ծախսով աշխատանքի ավելի բարձր արդյունքների ապահովումը, բոլոր ցուցանիշներով պետական պլանի կատարումը՝ ունեցած միջոցների ու ռեզերվների լավագույն օգտագործումը։ Լենինն ընդգծում էր, որ հասարակության կառավարման արվեստը ուժերի առավել մեծ չափի տնտեսումն է և ժողովրդական աշխատանքի առավել արտադրողական կիրառումը։

Ելնելով լենինյան ցուցումից, մեր կուսակցության հսկայական փորձից, կարելի է այսպես բնորոշել հասարակության կառավարման արվեստի հիմնական գծերը՝ ժամանակին նկատել պատմական պրոցեսի բոլոր կեռմաններն ու դժվարությունները. յուրաքանչյուր տվյալ պահի, պատկերավոր ասած, սոցիալ-տնտեսական և քաղաքական պրոցեսների, իրադարձությունների շղթայում գտնել հիմնական օղակը, որից բռնելով կարելի կլինի քաշել ամբողջ շղթան. կարողանալ սահմանել տվյալ կոնկրետ ժամանակաշրջանի գլխավոր խնդիրները, առաջ քաշել առաջադրված խնդիրների լուծման գործում ժողովրդական մասսաներին մոբիլիզացնող համապատասխան լոզունգներ.



գիտական հիմնավորվածությամբ որոշել ձեռնարկությունների և տնտեսական մարմինների լայն տնտեսական ինքնուրույնության հետ կենտրոնացման սկզբունքի հարաբերակցությունը. ճիշտ սահմանազատել ֆունկցիաներն ու պատասխանատվությունը։ Կուսակցության XXIV համագումարում ընդգծվեց, որ կառավարման բոլոր մակարդակներում կարևոր է հստակ որոշել իրավունքների ու պատասխանատվության ծավալն ու հարաբերակցությունը։ Ավելի պակաս պատասխանատվության առկայությամբ մեծ իրավունքները հնարավորություններ են ստեղծում վարչական կամայականության, սուբյեկտիվիզմի, չկշռադատված որոշումների համար։ Ոչնչով լավ չէ նաև մեծ պատասխանատվությունը պակաս իրավունքների առկայությամբ։ Այդպիսի դրության մեջ, ինչպես նշում է Լ. Ի. Բրեժնևը, նույնիսկ ամենաջանասեր աշխատողը հաճախ անզոր է գտնվում և հանձնարարված գործի համար դժվար է նրանից լիաչափ պատասխան պահանջել։ Կառավարման արվեստ է առաջադրանքների կատարման նկատմամբ վերահսկողության առավել արդյունավետ սիստեմների իրագործումը՝ աշխատավոր լայն զանգվածներին ներգրավելով այդ վերահսկողության իրականացմանը, գիտության ու տեխնիկայի նորագույն նվաճումներն արտադրության մեջ արմատավորելու առավել լավագույն միջոցների մշակումն ու կենսագործումը։

Այսպիսով, մենք գործ ունենք կառավարման գիտության երկու անխզելի կողմերի դիալեկտիկական միասնության հետ, ուր առաջինը որոշիչ դեր է խաղում։ Դրա հետ միասին, առաջին կողմի կենսագործման հաջողությունը, այսինքն՝ օբյեկտիվ օրինաչափությունների ճանաչման ու օգտագործման հաջողությունը, որոշվում է սուբյեկտիվ կողմի (արվեստի) կառավարման ակտիվ բնույթով, սոցիալական կյանքի օբյեկտիվ պրոցեսների վրա նրա ներգործման արդյունավետությամբ։ Վերաշարադրելով Լենինի հայտնի դրույթը քաղաքականության վերաբերյալ, շեշտենք, որ «կառավարման գիտությունը ավելի շատ նման է հանրահաշվին, քան թվաբանությանը և ավելի նման է բարձրագույն, քան տարրական մաթեմատիկային»։

Այս հանգամանքը կրկին մատնանշում է կառավարման, որպես գիտության, որոշիչ նշանակությունը։ Իսկ կառավարումը՝ որպես արվեստ, բխում է առաջինից։ Այդ երկու կողմերի ճիշտ հարաբերակցությունը հասարակության գիտական կառավարման պարտադիր պայմանն է։

## ԿԱՌԱՎԱՐՄԱՆ ԳԻՏՈՒԹՅԱՆ ԱՐՏԱԴՐԱՈՒԺԻ ՎԵՐԱԾՎԵԼՈՒ ՀԱՐՑԻ ՇՈՒՐՋ

ԲԱՑԱՀԱՅՏԵԼՈՎ հասարակության կառավարման էական գծերը, հարկ է նշել, որ կառավարումը նույնպես, ինչպես բնական ու տեխնիկական գիտությունները, իր առանձնահատուկ ուղիներով ու միջոցներով փոխարկվում է հասարակության անմիջական արտադրաուժի։ Ուստի, կարելի է վիճել այդ թեզի ճշտության մասին։ Անվիճելի է, սակայն, որ այդ պրոբլեմը պահանջում է մանրազնին, բազմակողմանի հետազոտություն՝ կառավարման գիտության զարգացման ու հարստացման, արդի գիտատեխնիկական առաջընթացի համար։

Գրականության մեջ կառավարչական աշխատանքի էության բնութագրման տակավին միասնական կարծիք չկա։ Սովետական առանձին հետազո-

տողներ այն սխալ կարծիքն են պաշտպանում, թե, իբր, կառավարչական աշխատանքը արտադրական բնույթ չունի։ Այդպիսի դիրքերից, հասկանալի է, չի կարելի ընդունել կառավարման գիտության՝ անմիջական արտադրուժի փոխարկվելու հնարավորությունն ու օրինաչափությունը։ Ե. Ս. Ռոզենմանն իր Հասարակական արտադրության զարգացումը կոմունիզմի ծավալուն շինարարության ժամանակաշրջանում գրքում գրում է. «Կոմունիստական հասարակության կարևորագույն օրինաչափությունն այն է, որ հասարակության անդամները գնալով ավելի մեծ չափով են անարտադրողական աշխատանք կատարում իրենց հիմնական աշխատանքի հետ միասին։ Այդպիսին է կառավարումը ինչպես առանձին ձեռնարկությունների, այնպես և ողջ ժողովրդական տնտեսության մասշտաբով, սրան են վերաբերում նաև ստեղծագործական աշխատանքի զանազան ձևերը, սկսած գիտականից, արվեստի զանազան տեսակի զբաղմունքներից (երաժշտություն, գեղանկարչություն, թատրոն) և այլն (տե՛ս Е. С. Розенман, Развитие общественного производства в период развернутого строительства коммунизма, 1964, стр. 108)։

Նման տեսակետը հակասում է ճշմարտությանը։ Իսկ այդ հարցի ճշտությունը հանճարեղորեն արտահայտել է Կ. Մարքսը Կապիտալում և այլ ստեղծագործություններում։ Ընդ որում, Մարքսն այն ժամանակ իր առջև խնդիր էր դնում զարգացնել այդ գաղափարը։ Կապիտալի XIV գլխում նա գիտականորեն հիմնավորում է, թե ինչն է արտադրողական աշխատանքը։ «Միայն այն բանվորն է արտադրողական, որը հավելյալ արժեք է արտադրում կապիտալիստի համար կամ ծառայում է կապիտալի ինքնաճմանը» (Կ. Մարքս, Կապիտալ, հ. I, Հայպետհրատ, 1954 թ., էջ 532)։

Մարքսի այս ցուցումը կարևոր մեթոդոլոգիական նշանակություն ունի հասկանալու համար, որ արտադրողական է համարվում ո՛չ միայն այն աշխատանքը, որի օգնությամբ անմիջականորեն նյութական բարիքներ են արտադրվում, այլև այն, որը «ծառայում է կապիտալի ինքնաճմանը»։ Այդ կապակցությամբ Մարքսը օրինակ է բերում դպրոցական ուսուցչին, այսինքն՝ մի մարդու, որը դուրս է նյութական արտադրության ոլորտից։ Նա նշում է, որ ուսուցիչը արտադրողական բանվոր է, եթե նա ոչ միայն երեխաների գլուխներն է մշակում, այլև ուժասպառ է լինում ձեռնարկատիրոջը հարստացնելու համար։ Վերջինն իր կապիտալը ուսուցման գործարանի մեջ կդնի թե երշիկագործարանի, դրանից քննարկող հարաբերությունն ամենևին չի փոխվում։ Ուստի «արտադրողական բանվոր» հասկացողությունն ամենևին չի սպառվում այն հարաբերությամբ, որ կա գործունեության ու նրա օգտակար էֆեկտի միջև, բանվորի ու նրա աշխատանքի արդյունքի միջև. այդ հասկացությունը պարունակում է նաև առանձնահատուկ հասարակական, պատմականորեն առաջացած արտադրական հարաբերություն, որը բանվորին դարձնում է կապիտալի աճման անմիջական գործիք (Կ. Մարքս, հ. I, էջ 532)։

Այսպիսով, այն աշխատանքը, որը, օրինակ, կապիտալիզմի պայմաններում դառնում է հասարակության արտադրուժերի ավելացման անմիջական գործիք, փոխարկվում է անմիջական արտադրուժի։ Հենց այդպիսին է կառավարչական աշխատանքը ամեն մի հասարակության մեջ։

Կոմունիստական շինարարության ներկայիս փորձը ակնհայտորեն ցույց է տալիս, որ որքանով արդյունավետ է հասարակության, նրա բոլոր օղակների կառավարումը, որքան լավ են կազմակերպված արտադրության տեխնո-



լոգիայի պլանաչափ կատարելագործումը, մասնագիտացման զարգացումը, նոր տեխնիկայի և աշխատանքի նոր կազմակերպման արմատավորումը, այնքան ավելի լավ են արտադրության ցուցանիշները, բարձր է աշխատանքի արտադրողականությունը։ Այլ կերպ ասած, արտադրուժերի ամբողջությունը շատ բանով կախված է նրանից, թե սոցիալ-տնտեսական պրոցեսների ղեկավարման, կառավարման ոճը որքանով է համապատասխանում արդի պահանջներին։ Այսօր ավելի, քան երբևէ, մեծանում է հասարակության արտադրուժերի զարգացման կախվածությունը հասարակական բարդ օրգանիզմի բոլոր օղակների կառավարման գիտականության աստիճանից։ Գիտական կառավարման տնտեսական արդյունավետությունը շարունակում է անշեղորեն աճել։

Արդ, ավելի կոնկրետ քննարկենք այն հարցը, թե ի՞նչ յուրահատկություններ ունի կառավարման փոխարկումը անմիջական արտադրուժով, առաջադիմության հզոր աղբյուրով։ Հայտնի է, որ բնական և տեխնիկական գիտությունները մարդկային մտքի զարգացման համար նոր ուղիներ են հարթում, որոնց հիման վրա գյուտեր են արվում, ստեղծվում են տեխնիկա, ապարատներ, իսկ վերջիններն արմատավորվում են արտադրության մեջ։ Այստեղ մենք տեսնում ենք, թե իդեալականը (գիտական գաղափարը) ինչպես է առարկայանում, արմատավորվում արտադրության մեջ, դրանով իսկ դառնալով հասարակության անմիջական արտադրուժ։ Իսկ կառավարման գիտության՝ անմիջական արտադրուժի վերածվելու մեխանիզմն այլ է։ Տվյալ դեպքում բնորոշ է, որ կառավարման իրացված գաղափարը, սկզբունքները դառնում են արտադրուժերի առաջընթացի, ընդհանրապես սոցիալական առաջընթացի հզոր աղբյուր։ Կուսակցության XXIV համագումարն իր որոշումներում ընդգծեց, որ մեր հետագա աճի, անընդհատ առաջընթացի գլխավոր, վճռական ռեզերվներից է հասարակության արդի էտապի պահանջներին համապատասխան արտադրության կառավարման աշխատանքի մակարդակի բարձրացումը։

Արտադրության կառավարման մեթոդների, եղանակների ըստ ամենայնի կատարելագործումը, առաջին հերթին, ուղղված է մեր հիմնական խնդրի լուծմանը՝ արտադրության արդյունավետության բարձրացմանը։ Ապահովել արտադրության արդյունավետությունը, նշանակում է՝ յուրաքանչյուր միավորի վրա կատարված աշխատանքային, նյութական, ֆինանսական ծախսի դիմաց էականորեն ավելացնել արտադրության ծավալը և ազգային եկամուտը։ Վերջին հաշվով հենց այդ է աշխատանքի արտադրողականության բարձրացումը։

XXIV համագումարը սահմանեց, որ աշխատանքի արտադրողականության բարձրացման հաշվին պետք է ստացվի ազգային եկամտի աճի 80—85 տոկոսը, արդյունաբերական արտադրանքի ընդհանուր աճի՝ 87—90 տոկոսը։

Միանգամայն ճիշտ է գրել ակադեմիկոս Գ. Մարչուկը, որ ժողովրդական տնտեսության արդյունավետությունը նախ՝ կախված է կառավարման արդյունավետությունից բոլոր «մակարդակներում»— գործարանային արտադրամասից ու ամբողջ գործարանից մինչև մինիստրություն։ Իսկ կառավարման արդյունավետությունը լիարժեք և հավաստի ինֆորմացիայի հիման վրա ժամանակին, գիտականորեն հիմնավորված որոշումների ընդունումն է։ Եթե

առաջիկա 5—10 տարում, գրում է ակադեմիկոս Գ. Մարչուկը, մեզ հաջողվի բոլոր «մակարդակներում» արմատապես բարելավել պլանավորումն ու կառավարումը, օգտագործելով հաշվիչ տեխնիկա, տնտեսական-մաթեմատիկական մեթոդներ, հատկապես ԱՍՈՒ-ներ, աշխատանքի արտադրողականությունը շեշտակիորեն կաճի: ՈՒՍՍՀ ԳԱ կիբեռնետիկայի ինստիտուտի դիրեկտոր, ակադեմիկոս Վ. Մ. Գլուշկովը ընդգծում է, որ կառավարման ավտոմատացման մասշտաբների մեծությունից է կախված օգտաշափը: Նա այդ առթիվ բավական պատկառելի թվեր է բերում: Ձեռնարկություններում ԱՍՈՒ-ն արդյունավետությունը բարձրացնում է 10—15 տոկոսով, խոշոր ֆիրմաներում ու ճյուղերում՝ արդեն 50—60, պետության մասշտաբով՝ առնվազն 100 տոկոսով:

Կուսակցության XXIV համագումարի դիրեկտիվներում առաջին անգամ բարձրացվեց միասնական պետական ավտոմատացված կառավարման սիստեմ ստեղծելու առաջարկը: Արդեն ընթացիկ հնգամյակի ընթացքում շարք կմտնեն առնվազն 1600 ԱՍՈՒ-ներ:

Կառավարման գիտությունը անմիջական արտադրաուժի փոխարկելու կարևոր ուղղություններից է աշխատանքի գիտական կազմակերպումը: Բոլոր նյութական ու հոգևոր արժեքները, առանց որոնց անհնար են հասարակության գոյությունն ու զարգացումը, ստեղծվում են մարդկանց՝ բանվորների, գյուղացիների, ինտելիգենցիայի աշխատանքի պրոցեսում: Միանգամայն հասկանալի է, որ ինչքան ավելի լավ է կազմակերպված այդ աշխատանքը, այնքան արդյունավետ է, այնքան բեղմնավոր է ազդում հասարակության զարգացման վրա: Ահա թե ինչու աշխատանքի գիտական կազմակերպման նկատմամբ հետաքրքրությունն ընդհանուր է դարձել մեր ժամանակներում, ընդ որում, դա այդպես է, որովհետև, վերջին հաշվով, այն վերաբերում է յուրաքանչյուր աշխատողի առանց բացառության:

Աշխատանքի ճիշտ գիտական կազմակերպումից վճռականապես կախված են գիտատեխնիկական առաջընթացի տեմպերը, սոցիալիստական հասարակարգի ռեզերվների նպատակահարմար օգտագործումը:

ԱԳԿ-ի մասնագետները, արտադրության առաջավորները միանգամայն ճիշտ գտնում են, որ արդի էտապում աշխատանքի գիտական կազմակերպման հիմնական խնդիրն է՝ որոնել ստեղծագործական աշխատանքի այնպիսի մեթոդներ ու եղանակներ, որոնք ապահովեն հասարակական արտադրության բարձր արդյունավետությունը:

Արտադրական և այլ կոլեկտիվներում աշխատանքի գիտական կազմակերպման համար մղվող պայքարն արդեն դարձել է սոցիալիստական մրցության հիմնական բովանդակությունը. այն կոչված է՝ արմատապես բարելավելու բանվորական տեղի կազմակերպումն ու սպասարկումը, կատարյալ խնայողության ռեժիմ պահպանելու ամենուր, ուսումնասիրելու և տարածելու աշխատանքի առաջավոր փորձը, անընդհատ բարձրացնելու թողարկվող արտադրանքի որակը, խստագույնս պահպանելու պետական աշխատանքային կարգապահությունը, աշխատանքի կուլտուրան. անընդհատ բարելավելու նորարարության և գյուտարարության մակարդակը աշխատանքի կազմակերպման ու արտադրության կառավարման բնագավառում:

Այդ ամենն անսահման բարձրացնում է մարդկանց, հասարակության կազմակերպվածության և ակտիվության մակարդակը:

# ԴԻԱԼԵԿՏԻԿԱԿԱՆ ՄՏԱԾԵԼԱԿԵՐՊԸ ԵՎ ՄԱԹԵՄԱՏԻԿԱՆ

Ս. Հ. ԱՎԵՏԻՍՅԱՆ

ՄԱՐՔՍԻՍՏԱԿԱՆ փիլիսոփայության այն հայտնի դրույթը, որ մարդկային ողջ իմացությունն ընդհանուր առմամբ ունի առարկայական բովանդակություն, որ իմացությունը մարդկային գիտակցության մեջ օբյեկտիվ աշխարհի արտացոլման արդյունք է, օբյեկտիվ աշխարհի սուբյեկտիվ պատկերը, մաթեմատիկայի նկատմամբ կիրառելիս իր շատ կողմերով կարիք ունի լրացուցիչ լուսաբանման ու խորացման: Դա պայմանավորված է մաթեմատիկայի առարկայի և նրա մեթոդի յուրահատուկ բնույթով, նրանով, որ մաթեմատիկայում ավելի շատ, քան գիտության մի այլ բնագավառում, իմացության պրոցեսը չի սահմանափակվում արտաքին աշխարհի անմիջական հայեցումով, նրա անմիջական ընկալմամբ, այլ ուղեկցվում է մտածողության ակտիվ, ստեղծագործական գործունեությամբ: Մարդկային մտածողության ակտիվությունը, նրա ներքին, ստեղծագործական զարգացման հնարավորությունները մաթեմատիկայում հասնում են ավելի մեծ չափերի, որը և լուրջ դժվարություններ է հարուցում իմացության այդ բնագավառի մատերիալիստական մեկնաբանման գործում:

Նախ համառոտակի ծանոթանանք մաթեմատիկական իմացության այդ առանձնահատկության հետ: Մաթեմատիկան, առաջին հերթին, աչքի է ընկնում իր ուսումնասիրման օբյեկտների խիստ վերացական բնույթով: Դրանք բովանդակությունից կտրված և ինքնուրույն էության վերածված ձևեր են: Մաթեմատիկան ուսումնասիրում է ոչ թե ռեալ առարկաների որևէ համախումբ, այլ վերացական թվեր, ոչ թե ռեալ առարկաներ, այլ վերացական երկրաչափական ձևեր: Թեև հայտնի է, որ բնության մեջ չկա ոչ մի իդեալական գունդ, հարթություն, սակայն մաթեմատիկան, վերանալով կոնկրետ առարկաների ձևերից, իր համար ստեղծում է իդեալական հարթության ու գնդի գաղափարները և հենվում դրանց վրա: Այդ օբյեկտները, լինելով իդեալականացման արդյունք, բնականաբար պետք է լինեն իդեալական ճշգրիտ, զերծ ամեն մի մոտավորությունից ու պայմանականությունից: Այս հանգամանքը հնարավորություն է տալիս մաթեմատիկայում դրույթներն ապացուցելու ոչ թե անմիջապես դիմելով արտաքին աշխարհին, ոչ թե հենվելով դրանց ակնհայտության ու պարզության վրա, ոչ թե փորձեր դնելով ու դրանց արդյունքներն ընդհանրացնելով, այլ զուտ տրամաբանական միջոցներով, հենվելով նախօրոք ընդունված որոշ դրույթների՝ աքսիոմաների վրա: Այս պատճառով բուն մաթեմատիկան, եթե հաշվի չառնենք նրա առանձին կիրառությունները ու մեկնաբանությունները, ունի դեդուկտիվ, մտահայեցողական բնույթ:

Մաթեմատիկայի մյուս առանձնահատկությունը նրա դրույթների բացարձակ անառարկելիությունն է: Օրինակ, մտքով հնարավոր է պատկերացնել, որ հաջորդակից անոթներում հեղուկը գտնվի տարբեր մակարդակների վրա, որ դատարկության մեջ տարբեր զանգվածներ ունեցող մարմիններն

առարկաների: Ուստի, մաթեմատիկական գիտելիքներն իրենց բնույթով չեն տարբերվել այլ տիպի գիտելիքներից, օրինակ, աստղագիտական, աշխարհագրական, բժշկական և այլն: Սակայն, եթե մաթեմատիկական գիտելիքները չեն տարբերվել այլ տիպի գիտելիքներից իրենց բովանդակությամբ, ապա դրանք էապես տարբերվել են իրենց ձևով: Դրանք եղել են այնպիսի գիտելիքներ, որոնք իրենց ընդհանրական ձևի հետևանքով կարող էին վերաբերել միանգամայն տարբեր բնագավառների պատկանող մի շարք առարկաների: Այսպես, ծավալի գաղափարը հավասարապես կիրառելի է ինչպես կենցաղում օգտագործվող առարկաների, այնպես և շինարարական կառույցների՝ բուրգերի, պատնեշների նկատմամբ, մակերեսի գաղափարը կիրառելի է հողատարածությունների, ամենատարբեր գործվածքների և այլնի նկատմամբ: Այսպիսով մաթեմատիկական գիտելիքներն իրենց բովանդակությամբ հանդես գալով որպես կոնկրետ գիտելիքներ, այնուամենայնիվ ունեցել են ձևական մասշտաբներով ընդհանրացվելու մեծ պոտենցիալ: Այդ ձևական ընդհանրացումն իրականացվել է հին հունական քաղաքակրթության շրջանում: Դրա սկիզբը դրել են Թալեսն ու Պյութագորասը և ինչ-որ չափով ավարտվել է Էվկլիդեսի հռչակավոր Հիմունքներ աշխատության մեջ: Վերջինս ընդհանրացնելով մինչ այդ եղած կոնկրետ երկրաչափական գիտելիքները, շարադրել է դրանք ըստ նրանց ձևական-տրամաբանական կառուցվածքի: Պատմականորեն այս մոմենտը նշանավորվում է որպես մաթեմատիկայի ծնունդ: Նախ մաթեմատիկական ճշմարտության ըմբռնման հարցում մաթեմատիկական դրույթի և առարկայական աշխարհի համապատասխանության հարցը սրանով մղվում է երկրորդ պլան. առաջին պլանի վրա է դրվում ապացուցման մաթեմատիկական-տրամաբանական չափանիշը: Դրույթը համարվում է ապացուցված ոչ թե այն ժամանակ, երբ վերջինս համապատասխանում է արտաքին աշխարհին, այլ այն ժամանակ, երբ դա տրամաբանական միջոցներով առբերվում է աքսիոմներից: Այնուհետև, մաթեմատիկական գիտելիքների աքսիոմատիկ դեդուկտիվ շարադրանքով այդ գիտելիքների ձևը լրիվ կտրվում է դրանց բովանդակությունից, դառնում ինքնուրույն էություն, որը կարող է զարգանալ իր ներքին տրամաբանությամբ:

Հենց այս հանգամանքը հիմք է տալիս մաթեմատիկական իմացության բնույթի սխալ, իդեալիստական մեկնաբանության: Ստացվում է այնպիսի տպավորություն, որ մաթեմատիկան վերաբերում է իրական աշխարհի հետ ոչ մի առնչություն չունեցող ձևերի: Քննադատելով այս իդեալիստական տեսակետը, Ֆ. Էնգելսը գրում է. «Զուտ մաթեմատիկայի առարկան կազմում են իրական աշխարհի տարածական ձևերն ու քանակական հարաբերությունները, այսինքն՝ մի վերին աստիճանի ռեալ նյութ: Այն փաստը, որ այդ նյութը չափազանց վերացական ձև է ընդունում, կարող է սոսկ թույլ կերպով սքողել նրա ծագումը արտաքին աշխարհից» (Ֆ. Էնգելս, Անտի-Դյուրինգ, Հայպետհրատ, 1952, էջ 48—49):

Ուրեմն, որքան ինքնուրույն լինեն մաթեմատիկական օբյեկտները, որքանով մաքուր, առարկայական աշխարհից անկախ թվան դրա ուսումնասիրած տարածական ձևերն ու քանակային հարաբերությունները, միևնույն է, դրանք, վերջին հաշվով, արտաքին աշխարհի առարկաներից են աբստրահված, ուստի, վերջին հաշվով, վերաբերում են արտաքին աշխարհին: Հարցի այսպիսի լուծումը բխում է հենց մարդկային իմացության էության և նրա խնդիրների մարքսիստական մեկնաբանությունից: Իդեալիստական փիլիսոփայության մեջ մարդը դիտվում է, առաջին հերթին, որպես մտածող, բանական էակ, ուստի, նրա մտավոր ստեղծագործությունը սկզբունքորեն կարող է ամենևին չառնչվել արտաքին աշխարհի հետ, չունենալ ոչ մի առարկայական նախատիպ: Դիալեկտիկական մատերիալիզմի տեսակետից մարդը, նախ գործող էակ է, բնությունն ակտիվ վերափոխող, իր նպատակներին հարմարեցնող, բնությունն ստեղծագործաբար յուրացնող էակ: Ուստի, մարդկային ամեն մի գործունեություն պետք է ունենա ո՛չ միայն առարկայական հիմք, այլև առարկայական ուղղվածություն. յուրաքանչյուր ակտիվ գործունեու-



թյան, ինչպես և մաթեմատիկական իմացության զարգացումը, վերջին հաշվով, կոչված է պրակտիկ, առարկայական խնդիրներ լուծելու:

Մաթեմատիկական վերացական օբյեկտները առարկայական աշխարհի ընդհանրացված, վերացարկված պատկերներն են: Մարդը, անտեսելով առարկաների երկրորդական հատկությունները, օրինակ՝ նրանց գույնը, ինչ նյութից լինելը, հաստությունը և այլն, ընդհանրացնում է էական հատկությունները, իդեալականացնում դրանք, հասցնելով իդեալիզացիայի ծայրահեղ աստիճանի և դրանով ստեղծում գծի գաղափարը, որը զուրկ է լայնությունից, հարթության գաղափարը, որը զուրկ է հաստությունից, թվի գաղափարը, որը զուրկ է առարկայական-զգայական բովանդակությունից և այլն:

Այն հարցին, թե ում է համարում ամենախոշոր մաթեմատիկոսը, գերմանացի խոշորագույն մաթեմատիկոս Դ. Հիլբերտը պատասխանել է. ամենախոշոր մաթեմատիկոսը եղել է այն առաջին կիսավայրենի մարդը, որը նկատել է, որ աշխարհում կան ո՛չ միայն երկու առարկաներ՝ երկու քար, երկու կացին և այլն, այլև կա երկուսը որպես այդպիսին: Առաջին հայացքից անլուրջ թվացող այս պատասխանն ունի խոր իմաստ: Մաթեմատիկան ծնվել է այն պահին, երբ առաջին անգամ միտքը կտրվել է առարկայական աշխարհից, երբ ստեղծվել է վերացական քանակի գաղափարը: Այդ պահից մարդը արտաքին աշխարհի քանակական առնչությունը բացահայտելու համար կարիք չի ունեցել անմիջականորեն դիմելու արտաքին աշխարհի առարկաներին: Վերացական քանակական առնչությունների միջև սահմանված ներքին տրամաբանական անցումները հնարավորություն են ընձեռել լուծելու այդ հարցն առանց ձեռքի տակ կոնկրետ առարկաներ ունենալու: Ի դեպ, այս հարցում մարդկության անցած ողջ ուղին զարմանալի կրկնվում է անհատ մարդու մոտ: Երեխայի մոտ չկա վերացական քանակի գաղափար, նա չի կարող հաշվումներ կատարել, առանց կոնկրետ առարկաների վրա հենվելու, առանց ձեռքի մատներին, հաշվիչի հատիկներին կամ այլ առարկաների դիմելու: Քանակի վերացական գաղափարին նա հասնում է միայն բարձր տարիքում, երբ կարողանում է գործողություններ կատարել այնպիսի մեծ թվերով, որոնց համապատասխանող առարկաները ո՛չ միայն առկա ձևով չկան, այլև սկզբունքորեն չեն էլ կարող լինել: Հետագայում անցում է կատարվում թվաբանությունից հանրահաշվի. շրջանառության մեջ են մտնում այնպիսի օբյեկտներ, որոնց թվային իմաստ ունենալն ամենևին էլ անհրաժեշտ չէ: Դրանք սոսկ հասկացություններ են, որոնք վերացարկված են արդեն վերացական օբյեկտներից, մասնավորապես բնական թվերից: Այս ընդհանրացման պրոցեսն սկզբունքորեն կարող է շարունակվել անվերջ, որի հետևանքով մաթեմատիկայում ծնվում են նորանոր վերացական օբյեկտներ, սահմանվում նորանոր հարաբերություններ: Բնական թվի գաղափարից վերացարկվում են նոր, ավելի վերացական օբյեկտներ, ինչպես, կեղծ և տրանսցենդենտ թվեր, մատրիցաներ և թենզորներ:

Եթե մաթեմատիկական իմացությունը, թեև վերացարկված ձևով, բայց, վերջին հաշվով, արտահայտում է օբյեկտիվ աշխարհի օրինաչափությունները, ապա գիտությունների մյուս բնագավառների հետ մեկտեղ մաթեմատիկան ևս պետք է լինի պատմական երևույթ, նրա դրույթների ճշմարտացիությունը ևս պետք է լինի հարաբերական: Սակայն այսպիսի եզրակացությունը ողջախոհության տեսակետից թվում է անընդունելի, առողջ բանականությամբ մենք միշտ հակված ենք կարծելու, որ «$2\times2=4$» դրույթը բացարձակ ճշմարտություն է, ենթակա չէ փոփոխման: Հարց է առաջանում, ինչպե՞ս հաշտեցնել միմյանց հետ այս երկու մոտեցումները, ինչպե՞ս ըմբռնել մաթեմատիկական ճշմարտության հարաբերականությունը:

Այս հարցի պատասխանը թաքնված է իմացության պրոցեսի դիալեկտիկական ըմբռնման մեջ: Մետաֆիզիկական ըմբռնմամբ աշխարհը առարկաների, փաստերի հավաքածու է, այդ պատճառով յուրաքանչյուր գիտելիք, եթե այն ճշմարիտ է, պետք է ունենա իր համապատասխան փաստը, պետք է ուղ-

դրության սկզբունքային դրույթները, որոնք, ինչպես ցույց է տվել նրանց երկարամյա կիրառման պրակտիկան, լրիվ համապատասխանում են բանվոր-ծառայողների շահերին:

Հիմունքները[1] կարգավորում են բանվորների ու ծառայողների աշխատանքային հարաբերությունները, անկախ այն բանից, թե որտեղ են աշխատում նրանք—պետական ձեռնարկություններում, հիմնարկություններում, կազմակերպություններում, թե՞ աշխատանքային պայմանագրով՝ կոլտնտեսություններում, հասարակական կազմակերպություններում կամ առանձին քաղաքացիների անձնական տնային տնտեսությունում: Հիմունքները, միաժամանակ, նախատեսում են տարբեր կատեգորիայի բանվոր-ծառայողների աշխատանքի իրավական կարգավորման տարբերություններ: Դա հատկապես վերաբերում է տրանսպորտի, կապի, գյուղատնտեսության աշխատողների աշխատաժամանակի և հանգստի կարգավորմանը:

ՍՍՀՄ Սահմանադրությունում գրված է, որ քաղաքացիներն ունեն աշխատանքի իրավունք: Բանվորներն ու ծառայողներն այն իրականացնում են ձեռնարկությունների, հիմնարկությունների, կազմակերպությունների հետ աշխատանքային պայմանագիր կնքելով: Այդ հարցում կարևոր նշանակություն ունի հիմունքների այն դրույթը, որը խիստ արգելում է չհիմնավորված մերժումը աշխատանքի ընդունելիս, ինչպես նաև չի թույլատրվում իրավունքների որևէ ուղղակի կամ անուղղակի առավելությունների սահմանում, ելնելով սեռից, ռասայից, ազգային պատկանելությունից և կրոնի նկատմամբ ունեցած վերաբերմունքից:

Ադմինիստրացիային արգելվում է բանվոր-ծառայողից պահանջել այնպիսի աշխատանք կատարել, որը չի նախատեսված աշխատանքային պայմանագրով, բացի բացառիկ դեպքերից՝ կապված արտադրական հանգամանքների, պարապուրդի հետ:

Բանվոր-ծառայողներին իրավունք է տրվում լուծարելու անորոշ ժամկետով կնքված աշխատանքային պայմանագիրը, այդ մասին երկու շաբաթ առաջ գրավոր հայտնելով ադմինիստրացիային: Ժամկետային աշխատանքային պայմանագիրն աշխատողի պահանջով կարող է վաղաժամ լուծվել միայն հարգելի պատճառների առկայությամբ՝ աշխատողի հիվանդությունը կամ հաշմանդամությունը, ադմինիստրացիայի կողմից աշխատանքային օրենսդրության, կոլեկտիվ կամ աշխատանքային պայմանագրի խախտումը և այլն (հոդված 16):

Հիմունքներում սկզբունքորեն պահպանվել են այն կանոնները, որոնցով ադմինիստրացիան կարող է իր նախաձեռնությամբ լուծարել աշխատանքային պայմանագիրը և մարդկանց հեռացնել աշխատանքից: Սակայն, աշխատանքային պայմանագրի լուծարման մի շարք հիմքեր ձևակերպված են ավելի պարզ. այդ հնարավորություն կընձեռի վերացնելու կամայականությունն ու սխալները բանվոր-ծառայողներին աշխատանքից ազատելու դեպքում: Այսպես, աշխատանքային նախկին օրենսդրությամբ նախատեսված էր աշխատանքային պայմանագրի լուծարում այն դեպքերում, երբ վարձված գործի համար աշխատողը պիտանի չէր: Հիմունքներում ավելի պարզ են որոշված այն պատճառաբանությունները, որոնցով ադմինիստրացիան կարող է լուծարել աշխատանքային պայմանագիրը, երբ դրսևորվի բանվորի կամ ծառայողի անհամապատասխանությունը գրաված պաշտոնին կամ կատարած աշխատանքին: Այդպիսի փաստարկներն են՝ անբավարար որակավորումը, անառողջ վիճակը, որոնք խանգարում են շարունակելու տվյալ աշխատանքը:

Հիմունքներում պարզ ձևակերպված է աշխատանքային պայմանագրի լուծարումն, երբ աշխատողն իր պարտականություններն անհարգելի պատճառով սիստեմատիկաբար չի կատարում: Այդ մասին հիմունքներում կարդում ենք. «Երբ բանվորը կամ ծառայողն անհարգելի պատճառներով, աշխատանքային պայմանագրի կամ ներքին աշխատանքային կարգացանկի կանոններով իր վրա դրված պարտականությունները սիստեմատիկ չի կատարում, երբ բանվորի կամ ծառայողի նկատմամբ ավելի վաղ կիրառվել են կարգապահական կամ հասարակական տույժի միջոցներ», ապա ադմինիստրացիան իրավունք ունի նման աշխատողին հեռացնելու աշխատանքից:

Մինչև հիմունքների կիրառումը, գոյություն ունեցող կարգի համաձայն, հիվանդ բանվոր-ծառայողի աշխատանքի տեղը պահպանվում էր երկու ամիս. այդ ժամկետը լրանալուց հետո ադմինիստրացիան իրավունք ուներ լուծարելու աշխատանքային պայմանագիրը: Այժմ հիմունքներում նախատեսված է, որ ժամանակավոր անաշխատունակության հետևանքով ավելի քան 4 ամիս աշխատանքի չներկայանալու դեպքում իրավունք է վերապահվում ադմինիստրացիային՝ աշխատանքից ազատելու բանվորին կամ ծառայողին, չհաշված հղիության ու ծննդաբերության արձակուրդը, երբ ՍՍՀ Միության օրենսդրությամբ որոշ հիվանդությունների դեպքում չի սահմանված ավելի երկար ժամանակ: Բացի դրանից, աշխատանքային խեղման կամ պրոֆեսիոնալ հիվանդության հետևանքով աշխատունակությունը կորցրած բանվորների ու ծառայողների աշխատանքի տեղը (պաշտոնը) պահպանվում է մինչև աշխատունակության վերականգնումը կամ հաշմանդամության կարգը որոշելը:

Աշխատանքային նախկին օրենսդրությամբ նախատեսված չէին այն հանգամանքները, որոնց առկայությամբ թույլատրվում էր արտադրական անհրաժեշտության դեպքում ժամանակավոր փոխադրում այլ աշխատանքի: Բացի դրանից, չնայած գոյություն ուներ մեկ ամսով ժամանակավոր փոխադրում այլ աշխատանքի, սակայն այն կարող էր տարվա ընթացքում կիրառվել մի քանի անգամ:

Այժմ հիմունքներում թվարկված են այն հանգամանքները, որոնց առկայությամբ թույլատրվում է ժամանակավոր փոխադրում այլ աշխատանքի, մինչև մեկ ամիս ժամանակով, որը թույլատրվում է այն դեպքում, երբ անհրաժեշտ է կանխել կամ վերացնել տարերային աղետը, արտադրական վթարը կամ դրանց հետևանքները, դժբախտ դեպքերը, պարապուրդները, պետական կամ հանրային գույքի կորուստն ու փչացումը, ինչպես նաև բացակայող բանվորին կամ ծառայողին փոխարինելու համար: Վերջինիս դեպքում այլ աշխատանքի փոխադրելու տևողությունն օրացուցային տարվա ընթացքում չի կարող գերազանցել մեկ ամսից: Ճիշտ է, նախկին օրենսդրությամբ նախատեսված էր աշխատանքային պայմանագրի լուծարում արհմիութենական օրգանի պահանջով, բայց նշված չէին այն հանգամանքներն ու աշխատողների շրջանակը, որոնց նկատմամբ կարող էին կիրառվել:

ՍՄԿԿ XXIV համագումարին տված Կենտրոնական կոմիտեի հաշվետու և իններորդ հնգամյա պլանի դիրեկտիվների նախագծի մասին զեկուցումներում մեծ հոգատարություն է հանդես բերված կադրերի պատրաստման նկատմամբ: Ուրախալի է, որ համագումարն անհրաժեշտ համարեց 1972 թ. սեպտեմբերի 1-ից 25 տոկոսով բարձրացնել բուհերում և, միջին հաշվով, 50 տոկոսով տեխնիկումներում սովորողների կրթաթոշակները. մեծ ուշադրություն է նվիրվել պրոֆեսիոնալ-տեխնիկական կրթությանը: Բավական է նշել, որ իններորդ հնգամյակի պլանով նախատեսված է պատրաստել մոտ 9 միլիոն մասնագետ:

Կոմունիստական կուսակցության և սովետական կառավարության կադրերի նկատմամբ հոգատարության վառ արտահայտություն է նաև այն փաստը, որ հիմունքներում իրավականորեն ձևակերպվել են կադրերի աշխատանքային իրավունքները, նրանց որակավորման բարձրացման հարցերը, այնտեղ ամրապնդված է մեր երկրի աշխատավորների մեծագույն նվաճումներից մեկը՝ անվճար պրոֆտեխնիկական կրթության և վերաորակավորման իրավունքը: Պահպանված են աշխատավարձի հիմնական սկզբունքները. այստեղ նորն այն է, որ աշխատողի մեղքով չառաջացած պարապուրդի, խոտանի, արտադրական նորմաները չկատարելու դեպքերում ապահովվում է աշխատավարձի նվազագույն չափը:

ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար Լ. Ի. Բրեժնևը նշում է, որ աշխատավորների նյութական խրախուսման ձևերը և այլն կոչված են ստեղծելու այնպիսի տնտեսական պայմաններ, որոնք նպաստեն արտադրական կոլեկտիվների, միլիոնավոր աշխատավորների հաջող գործունեությանը, ապահովեն նրանց աշխատանքի արդյունքների հիմնավորված գնահատականը:

Ահա թե ինչու նշված հարցերը ժամանակին իրավական կարգավորման են ենթարկվել հիմունքներում, որտեղ ասված է. ի լրումն աշխատանքի վարձատրության սիստեմների, կարող է սահմանվել ձեռնարկությունների և կազմակերպությունների բանվորների ու ծառայողների վարձատրություն՝ ըստ տարեկան աշխատանքի արդյունքների, ձեռնարկության, կազմակերպության շահույթից գոյացած ֆոնդից:

Բանվոր-ծառայողներին տրված աշխատանքային իրավունքներն ու արտոնությունները կնպաստեն կազմակերպության և աշխատանքային գիտակցական կարգապահության բարձրացմանը, որը յուրաքանչյուր ձեռնարկության, հիմնարկության, կազմակերպության նորմալ աշխատանքի անհրաժեշտ պայմանն է: ՍՄԿԿ XXIV համագումարն ընդգծեց, որ սոցիալիստական գիտակցական կարգապահությունը հանրային հարստության բազմապատկման, սովետական մարդկանց նյութական բարեկեցության և կուլտուրական մակարդակի բարձրացման գրավականն է: Պատշաճ կարգապահությունը, կազմակերպվածությունը, աշխատանքի նկատմամբ բարեխղճությունը հնարավորություն են ընձեռում լրիվ օգտագործելու արտադրության կարողություններն ու ռեզերվները, բարելավելու ձեռնարկությունների տնտեսական ցուցանիշները:

Ահա այդ է պատճառը, որ Վ. Ի. Լենինը մեծ տեղ էր տալիս սոցիալիստական գիտակցական կարգապահությանը և այն համարում կուսակցության ու ժողովրդի հզոր զենքը նրանց ողջ ստեղծագործական աշխատանքում: Մեծ առաջնորդն ընդգծում էր, որ աշխատանքային ու պետական բարձր կարգապահությունը՝ դա գիտակցական կարգապահություն է, ընկերական կարգապահություն, մի կարգապահություն,

1. Այսուհետև կնշենք միայն հիմունքներ:

որը հիմնված է մասսաների ինքնուրույնության ու նախաձեռնության վրա՝ հասարակական կյանքի բոլոր բնագավառներում:

Լենինը հատուկ ուշադրություն էր նվիրում երիտասարդ բանվորներին աշխատանքային կարգապահության ոգով դաստիարակելուն. նա գտնում էր, որ անհրաժեշտ է բարձրացնել աշխատավորների կրթական և կուլտուրական մակարդակը, մշակել օրինակելի վարքագիծ կենցաղում: Այս հարցերն այնքան այժմեական ու հրատապ են, որ ՍՄԿԿ XXIV համագումարի որոշումներում իրենց արտահայտությունն են գտել: Իններորդ հնգամյակի դիրեկտիվներում ասված է՝ տնտեսական պլանները մարդիկ են կատարում: Ամեն մի սովետական մարդ իր աշխատանքով մոտեցնում է կոմունիզմի հաղթանակը, իսկ կոմունիզմի հաղթանակը մոտեցնող մարդու աշխատանքային իրավունքները պաշտպանվում են օրենքով:

Պաշտպանելով քաղաքացիների աշխատանքային իրավունքները, աշխատանքային օրենսդրությունը, միաժամանակ, նրանց վրա դնում է որոշակի պարտականություններ— աշխատել ազնիվ ու բարեխիղճ, պահպանել աշխատանքի կարգապահությունը, ժամանակին և ճիշտ կատարել ադմինիստրացիայի կարգադրությունները, բարձրացնել աշխատանքի արտադրողականությունը, բարելավել արտադրանքի որակը, պահպանել տեխնոլոգիական կարգապահությունը, աշխատանքի պաշտպանության, անվտանգության տեխնիկայի և արտադրական սանիտարիայի պահանջները, պահպանել և ամրապնդել սոցիալիստական սեփականությունը:

Սակայն, պետք է նշել, որ կյանքում դեռևս քիչ չեն այնպիսի դեպքերը, երբ առանձին աշխատողներ, հիանալի գիտենալով իրենց աշխատանքային իրավունքները, մոռանում են պարտականությունները: Պրակտիկան ցույց է տալիս, որ հաճախ աղմուկ բարձրացնող, այս կամ այն մարմիններին դիմող մարդիկ արտադրության մեջ, աշխատանքում, կենցաղում իրենց վատ են պահում: Խախտում են աշխատանքային կարգապահությունը և չեն կատարում իրենց պարտականությունները:

Այդ է պատճառը, որ, ելնելով մեր հասարակության շահերից, հիմունքներում օրենսդրականորեն սևեռված են նորմեր, որոնց համաձայն ադմինիստրացիային իրավունք է վերապահվում սահմանված կարգով աշխատանքից ազատելու այն բանվոր-ծառայողներին, որոնք սիստեմատիկաբար չեն կատարում իրենց պարտականությունները: Այստեղ պետք է հասկանալ այն խախտումները, երբ աշխատողը չի կատարում աշխատանքային պայմանագրով կամ ներքին կարգացանկով իր վրա դրված պարտականությունները, աշխատողի հակաիրավական գործողությունները կամ անգործությունը, որը նա թույլ է տալիս աշխատանքային պարտականությունները կատարելիս, կանխամտածված կամ անզգույշ (աշխատանքային ներքին կանոնների, պաշտոնական հրահանգների, կանոնադրությունների, ադմինիստրացիայի հրամանների, տեխնիկական կանոնների խախտումները և այլն):

Հիմունքներում սևեռված է սովետական ժողովրդի սոցիալական մեծ նվաճումներից մեկը՝ աշխարհում ամենակարճ աշխատանքային շաբաթվա տևողությունը: Այստեղ նշվում է, որ բանվոր-ծառայողների աշխատանքի նորմալ տևողությունը չպետք է անցնի շաբաթական 41 ժամից: Տնտեսական և այլ անհրաժեշտ պայմանների ստեղծման համեմատ անցում կկատարվի ավելի կարճ աշխատանքային շաբաթի: Հիմնական աշխատանքային ռեժիմը համարվում է երկու հանգստյան օրով հնգօրյա աշխատանքային շաբաթը: Աշխատաժամանակի ավելի կարճ տևողություն է սահմանված մի քանի կատեգորիայի բանվոր-ծառայողների համար: Այսպես, 15—16 տարեկան անձանց համար՝ շաբաթական 24 ժամ, 16—18 տարեկան բանվոր-ծառայողների՝ 36, աշխատանքի վնասակար պայմաններ ունեցող բանվոր-ծառայողների համար՝ շաբաթական 36 ժամից ոչ ավելի:

Աշխատանքի պաշտպանության հիմունքներում ասված է, որ ձեռնարկությունների, հիմնարկությունների, կազմակերպությունների ադմինիստրացիաները պարտավոր են ստեղծել աշխատանքի առողջ ու անվտանգ պայմաններ, արմատավորել տեխնիկայի անվտանգության այնպիսի ժամանակակից միջոցներ, որոնք արգելակեն արտադրական տրավմատիզմը, ապահովեն սանիտարա-հիգիենիկ այնպիսի պայմաններ, որոնք կանխեն բանվոր-ծառայողների պրոֆեսիոնալ հիվանդությունները:

Աշխատանքի պահպանության կանոններն ու նորմաները պետք է խստորեն կիրառվեն, սկսած արտադրաշենքերի ու կառուցվածքների նախագծման էտապից, վերջացրած կառուցման ու շահագործման հանձնումով: Ոչ մի ձեռնարկություն, արտադրամաս չի կարելի շահագործման հանձնել, եթե դրանք չեն ապահովված աշխատանքի առողջ ու անվտանգ պայմաններով: Արգելվում է այդ նպատակին հատկացված միջոցների ծախսումն այլ նպատակով: Այստեղ նախատեսված է նաև ադմինիստրացիայի պարտականությունը. առողջական վիճակի պատճառով ավելի հեշտ աշխատանքի կարիք ունեցող բանվորներին ու ծառայողներին երկու շաբաթվա ընթացքում փոխադրել այլ գործի, պահպանելով միջին վաստակը: Այդպիսի կարգ, աշխատանքային նախկին օրենսդրությամբ, նախատեսված չէր: Ընդլայնված են կանանց արտոնությունները:

Նոր օրենքով արգելվում է առանց իրենց համաձայնության արտաժամյա աշխատանքների ներգրավել, գործուղման ուղարկել այն կանանց, որոնք ունեն մինչև 8 տարեկան երեխա, ինչպես նաև արգելված է ադմինիստրացիայի նախաձեռնությամբ աշխատանքից ազատել հղի կանանց, կրծքով կերակրող և մինչև մեկ տարեկան երեխա ունեցող մայրերին, բացի այն դեպքերից, երբ լրիվ լուծարքի են ենթարկվում ձեռնարկությունը, հիմնարկությունը, կազմակերպությունը, այդ դեպքում թույլատրվում է ազատել միայն աշխատանքի տեղավորելու պայմանով:

Մի շարք նորմաներ են սահմանված աշխատող դեռահասների արտոնությունների ընդլայնման վերաբերյալ: Սահմանափակված է անչափահասների աշխատանքից ազատումն ադմինիստրացիայի նախաձեռնությամբ, ըստ որում՝ 18 տարեկանից ցածր անձանց ազատումը թույլատրվում է միայն անչափահասների գործերի հանձնաժողովի համաձայնությամբ և աշխատանքի տեղավորելու պայմանով:

ՍՄԿԿ XXIV համագումարին տված Կենտրոնական կոմիտեի հաշվետու զեկուցման մեջ ընկ. Բրեժնևը, խոսելով սովետական պետության ամրապնդման, սոցիալիստական դեմոկրատիայի հետագա զարգացման հարցերի մասին, նշում է՝ կուսակցության գիծն այն է, որ այսուհետև ևս մեծանա արհմիությունների դերը, բարձրանա նրանց աշխատանքի մակարդակը: Հիմունքներում հատուկ տեղ է տրված արհմիություններին, որոնց համար սահմանված են լայն իրավունքներ:

Աշխատանքային օրենսդրության պահպանման հսկողությունն ու վերահսկողությունն իրականացնում են դրա համար հատուկ լիազորված պետական մարմիններն ու տեսչությունները, որոնք իրենց գործունեության ընթացքում անկախ են ձեռնարկության, հիմնարկության, կազմակերպության ադմինիստրացիայից և դրանց վերադաս մարմիններից: Դրա հետ միասին արհեստակցական միությունները նույնպես հսկում են աշխատանքային օրենսդրության և աշխատանքի պահպանության կանոնների կիրառմանը, իսկ մինիստրություններն ու գերատեսչությունները՝ իրենց ենթակա ձեռնարկություններում, հիմնարկություններում, կազմակերպություններում աշխատանքային օրենսդրության պահանջների ճիշտ կատարմանը: Այս կապակցությամբ հիմունքներում նշված է, որ արհմիութենական մարմինները պետք է ուժեղացնեն հսկողությունը և պահանջկոտությունը պաշտոնատար անձանց նկատմամբ, որպեսզի վերջիններս պահպանեն բանվոր-ծառայողների աշխատանքային իրավունքները, ճիշտ կիրառեն աշխատանքի վարձատրության սահմանված կարգը, աշխատանքի և հանգստի ռեժիմը, ակտիվացնեն մշտական արտադրական խորհրդակցությունների գործունեությունը: Դրա համար անհրաժեշտ է բանվորներին ու ծառայողներին հանգամանորեն պարզաբանել աշխատանքային օրենսդրության հիմունքները:

Աշխատանքային օրենսդրությունը մեր երկրի էկոնոմիկայի զարգացման պատմության բոլոր էտապներում միշտ կարևոր դեր է խաղացել կոմունիստական հասարակության և սովետական պետության առաջադրած խնդիրների լուծման գործում, մեծ ազդեցություն գործել սոցիալիստական արտադրահարաբերությունների զարգացման վրա:

Կասկած չկա, որ կոմունիստական շինարարության ներկա էտապում այն մեծապես կնպաստի կուսակցության XXIV համագումարի առաջադրած մեծ ծրագրի հաջող կատարմանը:



# ՌԱԶՄԱՀԱՅՐԵՆԱՍԻՐԱԿԱՆ ԴԱՍՏԻԱՐԱԿՈՒԹՅՈՒՆԸ ԴՊՐՈՑՈՒՄ

Վ. Պ. ՍԱՀԱՐՅԱՆ
Ավագ դասախոս, պաճեստի փոխգճդապետ

Սովետական մարդկանց քաղաքական-գաղափարական դաստիարակության, սոցիալիստական հայրենիքի արժանավոր պաշտպաններ պատրաստելու գործում իր պատվավոր տեղն ունի դպրոցը: ՍՄԿԿ XXIV համագումարն ընդգծեց դպրոցում պատանիների ռազմա-հայրենասիրական դաստիարակության կարևորությունը: Մանկավարժական կոլեկտիվները կարող են հպարտանալ նրանով, որ ակտիվորեն մասնակցում են սովետական մարդկանց, հատկապես մատաղ սերնդի հայրենասիրական դաստիարակության, նրա հոգևոր աճի մեծ ու պատվաբեր գործին: Սովետական դպրոցում դաստիարակվել են հազարավոր հայրենասերներ: Նրանք պատվով քննություն բռնեցին Հայրենական մեծ պատերազմի ահեղ փորձության տարիներին, իսկ այժմ բուռն եռանդով, անձնուրաց կառուցում են կոմունիստական հասարակության շենքը:

Կուսակցությունը, սովետական կառավարությունն անընդհատ հոգ են տանում բանակը և նավատորմը ժողովրդի լավագույն ներկայացուցիչներով համալրելու մասին: Այժմ մեր զինված ուժերի զինվորների և նավաստիների 90 տոկոսից ավելին ունի բարձրագույն, միջնակարգ և լրիվ միջնակարգ կրթություն:

Սովետական զինված ուժերի մարտական հզորության բարձրացման նկատմամբ կուսակցության և կառավարության անդուլ հոգատարության վառ արտահայտությունն է ընդհանուր զինվորական պարտականության մասին օրենքը, որն ընդունվեց 1967 թ. հոկտեմբերին, ՍՍՀՄ Գերագույն սովետի երրորդ սեսիայում: Օրենքի ամեն հոդված և տող տոգորված են սոցիալիստական հայրենիքի պաշտպանության լենինյան գաղափարներով: Օրենքում կա հատուկ գլուխ՝ «ՍՍՀՄ զինված ուժերում ծառայելու երիտասարդության նախապատրաստման մասին»: Այն պահանջում է՝ կազմակերպել պատանիների ընկղընական ռազմական նախապատրաստումը դպրոցում, տեխնիկումում, նրանց դաստիարակել ռազմա-հայրենասիրական ոգով, բարձրացնել պատանիների և երիտասարդության ընդհանուր գրագիտությունը, կատարելագործել նրանց ֆիզիկական դաստիարակությունը: Ըստ օրենքի՝ մինչև զինվորական ծառայությունը, պատանիները պարտավոր են գիտենալ սովետական զինված ուժերի դերն ու նշանակությունը հայրենիքի պաշտպանության գործում, յուրացնել ռազմական երդման և զինվորական կանոնադրության հիմնական կանոնները:

Ռազմական ուսուցման ընթացքում աշակերտներին պետք է տոգորել բարոյական և մարտական բարձր հատկություններով: Ապագա ռազմիկների խնդիրն է՝ ծանոթանալ զինվորի գործողություններին մարտի տարբեր տեսակներում, ունենալ զենքից կրակելու փորձ, ուսումնասիրել մասսայական ոչնչացման զենքի մարտական հատկությունները, դրանից պաշտպանվելու միջոցները և այլն: Ռազմա-տեխնիկական պատրաստության ընթացքում պատանիները ձեռք են բերում նախնական գիտելիքներ և հմտություն ռազմական որևէ մասնագիտությունից:

Կարևոր է նաև, որ ռազմական ուսուցման գործը հանձնարարվի դրան քաջ գիտակ, բարեխիղճ մարդկանց: Ելնելով ընդհանուր գործի շահերից՝ շատ դպրոցներում ռազմագիտության դասատուներ են նշանակված բանիմաց, պարտաճանաչ ընկերներ: Լավ են աշխատում Ղ. Հովհաննիսյանը (էջմիածնի № 7 դպրոց), Ն. Շահնազարյանը (Երևանի Րաֆֆու անվան դպրոց), Գ. Գասպարյան (Երևանի Նար-Դոսի անվան դպրոց), Ս. Սիմոնյանը (Լենինականի № 23 դըպրոց) և ուրիշներ:

Զինղեկ Գ. Գասպարյանն, օրինակ, ունի բարձրագույն մանկավարժական կրթություն, դարձել է իր գործի գիտակը: Ռազմական ուսուցման ծրագիրը հաջողությամբ կատարելու և դասավանդումն արդյունավետ դարձնելու համար նա կազմում է տարեկան, ամսական, շաբաթական պլաններ, ամենօրյա պլան-կոնսպեկտներ: Գասպարյանը բովանդակալից և հետաքրքրական է դարձնում յուրաքանչյուր դասը՝ կիրառելով զանազան օգտավետ մեթոդներ: Այսպես, կրակային պատրաստություն դասավանդելիս նա օգտագործում է վարժական զենքեր, փամփուշտներ, զենքերի առանձին մասերի մակետներ, մասերի փոխգործողության ցուցադրման սարքավորումներ, պլակատներ: Դասն սկսում է զենքերի առանձին մասերի, մեխանիզմների ցուցադրմամբ, ապա բացատրում դրանց մարտական հատկությունները:

Կրակադաշտում Գասպարյանը կազմակերպում է 4—5 ուսումնական կետ, որտեղ աշակերտներն ուսումնասիրում են զենքի նյութական մասը, կրակելու պայմանները, մարզվում նշանառությունից, կրակում փոքր տրամաչափի հրացանից և այլն: Նա հմտորեն օգտագործում է տեխնիկական միջոցները (կինոֆիլմեր, դիաֆիլմեր, էպիդիասկոպներ) հատկապես մասսայական ոչնչացման զենքից պաշտպանվելուն նվիրված դասերին:

Դպրոցում լավ է կազմակերպված աղջիկների ռազմական ուսուցման, նրանցից սանիտարական դրուժիննիկներ պատրաստելու գործը: Պարապմունքներն անց է կացնում դպրոցի բժիշկը՝ Գասպարյանի օժանդակությամբ և անմիջական ղեկավարությամբ: Այստեղ առանձնապես մեծ ուշադրություն է նվիրվում առաջին օգնության ուսուցմանը: Աղջիկները ձեռք են բերում միջուկային զենքից տուժածներին առաջին օգնություն ցույց տալու հմտություն:

Ռազմական ուսուցման հարուստ նյութական բազա է ստեղծված Երևանի № 62 դպրոցում (դիրեկտոր՝ Ա. Աբրահամյան, զինղեկ՝ Բ. Բունիաթյան): Նկուղային հարկում ստեղծված է հրաձգարան:

Սակայն ռազմական ուսուցման գործում կան նաև լուրջ թերություններ: Երբեմն այդ պատասխանատու գործը հանձնարարվում է պատահական, ռազմական գործը չիմացող մարդկանց: Հարկավոր է ամենուրեք օգտագործել պրոպագանդայի տեխնիկական միջոցները, փորձի փոխանակման նպատակով կազմակերպել ցուցադրական դասեր, առաջավոր փորձը պրոպագանդել հեռուստատեսությամբ:

Այժմյան պայմաններում դպրոցը պետք է դաստիարակի հայրենիքին նվիրված պաշտպաններ, որոնք կոչված են պատվով կատարելու իրենց քաղաքացիական պարտքը հարազատ ժողովրդի նկատմամբ:

Լավ է գրում այդ մասին Սովետական Միության մարշալ Հ. Բաղրամյանը. «Ուս-ուսի տված վետերանների հետ, հավասարվելով նրանց, կանգնած են հայրենիքի երիտասարդ պաշտպանները, մեր որդիները, թոռները, մեր ժառանգորդները» («Известия», 24. XII, 1970):

Պատանիներին զինվորական ծառայության նախապատրաստելը, նրանց ռազմա-հայրենասիրական դաստիարակությունը չափազանց դըժվար ու բարդ պրոցես է: Այն կոմունիստական դաստիարակության բաղկացուցիչ մասն է, որը խոշոր դեր է խաղում երեխաների աշխարհայացքի ձևավորման գործում:

Սովետական ժողովրդի և նրա զինված ուժերի հեղափոխական ու մարտական ավանդների պրոպագանդումը ռազմահայրենասիրական դաստիարակության հիմքն է: Անհրաժեշտ է դաստիարակել գիտակից հայրենասերներ: Դպրոցի մանկավարժական կոլեկտիվի, կոմերիտական ու պիոներական կազմակերպությունների պատվի խնդիրն է՝ աճող սերնդին դաստիարակել բարձր կարգապահության ոգով, նրանց համակել պարտքի խոր գիտակցությամբ: Հասարակության առջև ունեցած պարտականության զգացման դաստիարակությունը պետք է դառնա դպրոցում կատարվող դաստիարակչական աշխատանքի կարևորագույն խնդիրը: Սովետական զինված ուժերում ծառայելը պատանիների, երիտասարդների սրբազան պարտքն է: Պատանին հայրենիքի լիարժեք պաշտպան, զինվոր կդառնա այն ժամանակ, երբ նրա հայրենասիրական դաստիարակության մասին հոգ տանեն ընտանիքը, դըպրոցը, կուսակցական, կոմերիտական, պիոներական ու հասարակական կազմակերպությունները, զինվորական կոմիսարիատը: Դա ամենագլխավորն է պատանուն բանակում ծառայելու նախապատրաստման գործում:

Վ. Ի. Լենինը հայրենասիրությունը համարում էր մարդկային խոր, վեհ զգացմունքներից մեկը: «Հայրենասիրությունը՝ մեկուսացված հայրենիքների՝ դարերով ու հազարավոր տարիներով ամրացված ամենախոր զգացմունքներից մեկն է» (Երկեր, հ. 28, էջ 227—228):

«Հայրենասիրությունը,— ասել է ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար Լ. Ի. Բրեժնևը,— մի այնպիսի սքանչելի հատկություն է, որն ամենախորին հարգանք է ներշնչում» (Սովետական

րոցներ (Երևանի Նար-Դոսի անվան, № 62, № 128 և այլն), զորամասի հրամանատարների և զինվորների հետ միասին, անցկացրին «փայլակ» խաղը։ Երևանի Օրջոնիկիձեի շրջանի դպրոցականների «փայլակ» խաղին մասնակցում էին մեծ թվով հրամանատարներ, քաղաշխատողներ և զինվորներ։ Մայրաքաղաքի դպրոցներում գործում են ռազմատեխնիկական զանազան խմբակներ, որոնք ղեկավարում են զորամասերի կոմերիտական կազմակերպությունների ներկայացուցիչները։ Ռազմա-հայրենասիրական դաստիարակության ասպարեզում հանրապետության մի շարք դպրոցներ լուրջ հաջողությունների են հասել, դիրեկցիաները, մանկավարժական կոլեկտիվները, կուսակցական ու կոմերիտական կազմակերպությունները մեծ ուշադրություն են նվիրում այդ կարևոր գործին։

Բայց, մեր կարծիքով, դպրոցներում օգտագործվում են ոչ բոլոր միջոցներն ու հնարավորությունները՝ աճող սերնդին ռազմա-հայրենասիրական ոգով դաստիարակելու համար։ Այդ գործում դեռևս կան լուրջ թերություններ։ Դըպրոցում անհրաժեշտ է ունենալ վահանակներ՝ «Կոմերիտմիությունը Հայրենական մեծ պատերազմում», «Մեր հասակակիցների սխրագործությունները», «Հայրենիքի պաշտպանությունը յուրաքանչյուր քաղաքացու սրբազան պարտքն է», «Ո՞րն է մեր պարտքը ծնողների նկատմամբ», «Ի՞նչ է սպասում մեզանից մեր հայրենիքը» և այլ թեմաներով։

Հայրենասիրության դաստիարակության գործում անբավարար է օգտագործվում ռազմամեմուարային գրականությունը։ Բարձր դասարանների աշակերտների համար գրեթե չեն կազմակերպվում գրական երեկոներ, ընթերցողների կոնֆերանսներ։ Այդպիսի միջոցառումներն, ինչ խոսք, կնպաստեն ռազմա-հայրենասիրական դաստիարակությանը։ Մինչդեռ այդ ասպարեզում շատ անելիքներ ունեն դըպրոցների գրադարանները։ Հարկավոր է առանձնացնել հայրենասիրական գրականությունը, կազմակերպել թեմատիկ ցուցահանդեսներ. «Հայ ժողովրդի հերոսական անցյալն ու ներկան», «Նրանք ընկան հայրենիքի ազատության համար», «Հայ թամանցիները» և այլ թեմաներով։ Անհրաժեշտ է դպրոցի ռադիոյի միջոցով սիստեմատիկաբար մասսայականացնել ռազմա-հեյրենասիրական բովանդակություն ունեցող գրականությունը։

Հայրենասիրական թեմաներով կան գեղարվեստական և վավերագրական շատ կինոնկարներ, բայց դպրոցներում չեն կազմակերպվում դրանց ցուցադրումը և քննարկումը, մինչդեռ բոլոր աշխատողներին հայտնի է այդ կինոնկարների դաստիարակչական նշանակությունը։

Ռազմահայրենասիրական դաստիարակության տեսակետից կարևոր նշանակություն ունեցավ Երևանում տեղի ունեցած անհայտ զինվորի թաղման ծիսակատարությունը։ Սակայն, ցավոք, մանկավարժական կոլեկտիվները մոռացել են այդ մասին. դպրոցականների գերակշռող մասը չի այցելել անհայտ զինվորի գերեզմանը։

Խոշոր դաստիարակչական նշանակություն ունի նաև աշակերտների հանդիպումն իրենց դպրոցի՝ սովետական բանակում ծառայող, արձակուրդում գտնվող զինվորների հետ։ Երեխաները մեծ հաճույքով են լսում իրենց դպրոցի սանին։ Շատ կարևոր են նաև հանդիպումները Հայրենական պատերազմի մասնակիցների հետ։ Մայրաքաղաքի Նար-Դոսի անվան դպրոցի երեխաները հանդիպել են փառքի շքանշանի ասպետներ Ի. Կարախանյանին և Ի. Ստեփանյանին։ Նման հանդիպումների կազմակերպումը պետք է դառնա դպրոցի մանկավարժական կոլեկտիվի և ԼԿԵՄ կազմակերպության խնդիրներից մեկը։

Պատանիներին զինվորական ծառայության պատրաստելու գործում կարևոր տեղ է գրավում ֆիզիկական դաստիարակությունը։ Ժամանակակից պայմաններում բանակում ծառայելն այնքան էլ դյուրին չէ։ Չէ՛ որ հիմա զինվորը գործ ունի շատ բարդ տեխնիկայի հետ, երկար ժամանակ կարող է գտնվել մեքենայում, տանկում, ինքնաթիռում, սուզանավում։ Իրենց առջև դրված խնդիրը կարող են ճիշտ լուծել միայն ֆիզիկապես առողջ մարդիկ։ Զինվորական ծառայությունը պահանջում է ո՛չ միայն ամուր առողջություն, այլև դիմացկունություն, կոփվածություն, կամքի ուժ։ Այս լավագույն, հայրենիքի պաշտպանության համար անհրաժեշտ հատկություններով բոլոր պատանիներին իրոք օժտել կարելի է ֆիզկուլտուրայի դասի, սպորտային միջոցառումների ժամանակ։

Մի շարք դպրոցներում ուշադրություն չի նվիրվում ՊՀՊ (Պատրաստ հայրենիքի պաշտպանությանը) նորմաների հանձնմանը։ Մինչդեռ պարզ է, որ այդ կոմպլեքսները նպատակ ունեն ամրապնդել պատանու առողջությունը, ֆիզիկապես համաչափ զարգացնել նրան։

Ստեղծվում են բոլոր հնարավորությունները մեր աճող սերնդի ֆիզիկական դաստիարակության, նրան հայրենիքի պաշտպանությանը նախապատրաստելու համար։ Հարկավոր է ցուցաբերել նախաձեռնություն, հմտություն, հաճախակի կազմակերպել ռազմականացված սպորտխաղեր, դրանց մասնակից դարձնել պատանիներին ու երիտասարդներին։




Ա. Ա. ՀՈՎՍԵՓՅԱՆ
Պատմական գիտությունների թեկնածու

## ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ԱՐԴՅՈՒՆԱՎԵՏՈՒԹՅԱՆ ՉԱՓԱՆԻՇԸ

Հասարակության գիտական կառավարումը նոր խնդիրներ է հարուցում գաղափարական ներգործման բոլոր ինստիտուտների առջև, հաշվի առնում դրանց արդյունավետության գործակիցը, ազդեցության չափը, որոշում ներազդման ուղիները։ Գաղափարական աշխատանքում, գիտական գիտելիքների տարածման գործում կայուն տեղ են գրավում մասսայական հաղորդակցման միջոցները, ժամանակակից ինֆորմացիայի ձևերը։

Կյանքը հրամայաբար պահանջում է գիտականորեն վերլուծել հասարակության հոգեկանի վրա գաղափարախոսության ազդեցության ձևերը, մասսաներին սոցիալապես կողմնորոշելու, գաղափարները համոզմունքի վերածելու, պոզիտիվ տրամադրություններ սերմանելու ուղիները։

Մեր օրերում գիտա-տեխնիկական հեղափոխությունը և աննախադեպ սոցիալական պրոգրեսը տեղի են ունենում անձնավորության առաջադիմության պայմաններում։ Պատահական չէ արդի հասարակագիտության, գրականության, արվեստի, մամուլի հարաճուն հետաքրքրությունն անձնավորության, նրա արժեքների, ժամանակակից հասարակության մեջ ունեցած դիրքի, այլ խոսքով՝ նրա սոցիալիզացիայի նկատմամբ։

Հասարակական երկու իրարամերժ սիստեմների գաղափարական մենամարտը պայքար է հանուն մարդկանց մտքերի ու հոգու տիրապետության։ Դրանով է պայմանավորվում գաղափարների դասակարգայնությունը, քաղաքական կողմնորոշումը։

Գաղափարների ձևավորումը ո՛չ միայն կարևոր, այլև չափազանց բարդ ու դժվարին խնդիր է, որի հաջող լուծման գործում առաջնակարգ նշանակություն ունի կուսակցական քաղաքական կրթության համակարգը։ Կուսակցական քաղաքական կրթությունն աչքի է ընկնում բազմապլանայնությամբ ու բազմաշերտությամբ։ Այդ համակարգի յուրաքանչյուր բաղադրատարր՝ լեկցիոն պրոպագանդա, քաղաքական ագիտացիա, քաղինֆորմացիա, խմբակ-

ներ, մարքսիզմ-լենինիզմի համալսարաններ և այլն, իր հերթին և իր չափով նպաստում է հասարակության քաղաքական գիտակցականության բարձրացմանը։

Կուսակցության քաղաքական կրթության համակարգում մասսաները սիստեմատիկաբար տիրապետում են մարքսիստական փիլիսոփայությանը, քաղաքատնտեսությանը, գիտական կոմունիզմի հիմունքներին, հաղորդակից դառնում ՍՄԿԿ, միջազգային կոմունիստական, բանվորական ու ազգային-ազատագրական շարժումների պատմությանը, էթիկայի ու գեղագիտության պրոբլեմներին։ Այսուհանդերձ՝ մարքս-լենինյան տեսության պրոպագանդումն իրականացվում է նաև ժամանակակից ինֆորմացիայի այլ միջոցներով։

Գաղափարական ներգործումն առավել արդյունավետ է, երբ նրա բովանդակությունն ու ձևը, նյութը հաղորդելու միջոցներն ու հնարները, լսարանի վրա ներազդելու պրակտիկ մեթոդները ներդաշնակ են։ Այստեղ էական է նաև դասախոսի ու լսարանի փոխհարաբերությունը։ Այդ գործի յուրահատկությունն այն է, որ պրոպագանդայի տվյալ ձևում պրոպագանդիստի և ունկնդիրների միջև անմիջական կապ կա։ Պրոպագանդիստի անմիջական շփումը ունկնդիրների հետ հրամայաբար պահանջում է շերտավորված, դիֆերենցված մոտեցում, լսարանի տարիքասեռային հատկանիշների իմացություն, յուրաքանչյուր ունկնդրի անհատական-տիպային առանձնահատկություննե՞րի ճանաչում։ Հատկապես սկսնակ պրոպագանդիստի, դասախոսի, քաղինֆորմատորի համար դժվար է, իսկ որոշ դեպքերում՝ գրեթե անհնար երևան բերել անհատական մոտեցում, եթե նրա տրամադրության տակ չկան ունկնդիրների տարբեր խմբերի առանձնահատկություններին նվիրված սոցիոլոգիական ու սոցիալ-հոգեբանական կոնկրետ հետազոտություններ։

Վ. Ի. Լենինը սոցիոլոգիական հետազոտությունները դիտում էր որպես աշխատավորների հոգեբանության և ռեալ իրականության ուսումնասիրման կարևորագույն միջոցներից մեկը։ Նա գտնում էր, որ դրանք շատ բանով կօգնեն հասարակական գիտակցության ճանաչմանը և նրա վրա ներազդելու միջոցների կատարելագործմանը։

Սոցիոլոգիական հետազոտությունների միջոցով հասարակական երևույթների վերաբերյալ փաստական նյութերի հավաքագրմամբ, հետազոտմամբ ու վերլուծմամբ գաղափարական, մասսայական-քաղաքական աշխատանքում վերջին տարիներս սկսվել է մի նոր էտապ։ Այդ հետազոտությունները հետապնդում են մեկ հիմնական նպատակ. օժանդակել կուսակցական կազմակերպություններին՝ մշակելու գաղափարական աշխատանքի, կուսակցական կրթության առավել արդյունավետ, գործուն ձևեր ու միջոցներ։

Սոցիոլոգիական կոնկրետ հետազոտություններն օգնում են ճշտելու, թե կուսակցական կրթության այս կամ այն ձևն ինչպե՞ս է նպաստում ունկնդիրների մարքս-լենինյան կրթության արդյունավետության բարձրացմանը, ի՞նչ գործոնների ազդեցությամբ և ինչպե՞ս է աճում մարդկանց քաղաքական մակարդակը, երբ և ի՞նչ պայմաններում է տեղի ունենում նրանց գաղափարական հասունությունը, պարզելու, թե կրթությունն ի՞նչ ազդեցություն է ունենում մարդկանց հասարակական-քաղաքական և արտադրական ակտիվության վրա, ընտանիքում, կենցաղում, կոլեկտիվում նրանց դրսևորած վարքագծի վրա և այլն։

Երկրի առանձին կուսակցական կազմակերպություններում փորձեր են



արվում գիտականորեն ուսումնասիրելու գաղափարական աշխատանքի արդյունավետության չափանիշները։ Սակայն մեզ մոտ գաղափարական հաստատություններում, մասսայական կոմունիկացիայի կենտրոններում (ռադիո, հեռուստատեսություն, պարբերական մամուլ, վավերագրական կինոնկար), պրոպագանդայի այլ հիմնարկություններում, կուլտուրայի, լուսավորության մինիստրություններում, արհմիություններում, կոմերիտական օրգաններում դեռևս չեն մշակված գաղափարական աշխատանքի արդյունավետությունը որոշելու գիտական չափանիշները։ Կատարվող աշխատանքը երբեմն էպիզոդիկ բնույթ է կրում։ Այնինչ, կուսակցական պրոպագանդայի արդյունավետության չափանիշների որոշումը օրվա հրամայական պահանջ է։ Այսօր խիստ կարևոր է լուծել կոլեկտիվի ու անհատի տնտեսական գործունեության առնչությունը պրոպագանդայի հետ, մարդկանց հասարակական գործունեության՝ որպես գաղափարական աշխատանքի արդյունավետության օբյեկտիվ չափանիշի խնդիրները, գիտական մեթոդներով բացահայտել հասարակական-քաղաքական կրթության և անձի հասարակական ակտիվության միջև եղած կապը և այլն։ Այս ամենը կօգնի՝ պրոպագանդիստական աշխատանքի արդյունավետությունը որոշելու ոչ թե կազմակերպված միջոցառումների քանակով, այլ մարդկանց սովորածով, նրանց ձեռք բերած գիտելիքների կիրառմամբ, քաղաքական ակտիվությամբ, պրոպագանդիստական աշխատանքը տնտեսական առօրյա խնդիրներին զուգակցելով։ Գաղափարական աշխատանքի արդյունավետության ամենակարևոր և անառարկելի չափանիշը մարդկանց հասարակական-քաղաքական վարքագիծն է, նրանց քաղաքացիական պարտքի գիտակցումը։

Քաղուսուցման ցանցում գաղափարական աշխատանքի արդյունավետության սահմանումը բարդ ու բազմակողմանի խնդիր է։ Այն պայմանավորված է, առաջին հերթին, պրոպագանդման պրոցեսի բոլոր բաղադրատարրերի ուսումնասիրմամբ. նախ՝ անհրաժեշտ է սկսել ուսուցման պրոցեսի վերլուծումից ու պրոպագանդման անմիջական օբյեկտի՝ ունկնդրի տիպական հատկանիշների ուսումնասիրումից։ Այստեղ անհրաժեշտ է պարզել, թե ունկնդրի անհատական-տիպական հատկանիշներից, կենցաղի ու աշխատանքի պայմաններից որո՞նք են առավել ազդում քաղուսուցման պարապմունքների, ընդհանրապես պրոպագանդայի նկատմամբ անհատի վերաբերմունքի վրա և ի՞նչ չափով պետք է պրոպագանդիստը հաշվի առնի տվյալ լսարանի բնույթն ու առանձնահատկությունները։

Շատ է բարդ յուրաքանչյուր լսարանի կազմը։ Ունկնդիրներն իրարից տարբերվում են ո՛չ միայն տարիքասեռային հոգեբանությամբ, այլև հետաքրքրությունների շրջանակով, պահանջով, ճաշակով, ինֆորմացիա ընկալելու կարողությամբ, ընկալածի նկատմամբ ունեցած վերաբերմունքով և այլն։ Պրոպագանդիստական աշխատանքի արդյունավետությունը պայմանավորված է նաև պրոպագանդիստի ու լսարանի ներդաշնակությամբ, փոխադարձ շփումով։ Ուստի, իր և լսարանի համագործակցությունը կայունացնելու խնդիրները պրոպագանդիստից պահանջում են լավ իմանալ նաև լսարանի սոցիալական կազմը, նախասիրություններն ու տիպական առանձնահատկությունները, անհատական շահերն ու յուրահատկությունները։ Իսկ դա նշանակում է, որ քաղաքական լուսավորության համակարգի արդյունավետությունը մեծ չափով կախված է պրոպագանդիստի կողմից ունկնդիրների անհատական

գիտակցության ձևավորման յուրահատկություններն իմանալուց ու հաշվի առնելու հնարավորությունից, այդ պրոցեսի վրա ներազդելու կարողությունից ու միջոցներից։ Այսօր սոցիոլոգիայի ընձեռած հնարավորությունները թույլ են տալիս ճիշտ վերլուծելու լսարանը, վերջինիս սոցիալ-հոգեբանական առանձնահատկությունները։ Միայն կոնկրետ սոցիոլոգիական հետազոտությունները և ստացված հիմնական տվյալների վերլուծությունը հնարավորություն են ընձեռում կատարելագործելու գաղափարական աշխատանքի ձևերն ու մեթոդները, ներգործման միջոցները։

Ինչպես նշվեց, քաղաքական ուսուցման համակարգի աշխատանքի արդյունավետության գործում վճռական դեր են կատարում մասսայական կոմունիկացիայի միջոցները։ Դրանցով են պայմանավորվում նաև մարդկանց կուլտուրական և քաղաքական մտահորիզոնի լայնացումը, գիտելիքների հարստացումը։ Քաղաքական լուսավորության ցանցի զարգացման ու բարելավման պայմաններում դեռևս չեն հաղթահարված որոշակի թերություններ ու բացեր։ Մինչև օրս հստակ չեն որոշված գաղափարական ներազդման միջոցների ընդհանուր շղթայում քաղաքական ուսուցման որոշակի սահմանները, քաղուսուցման արդյունավետության չափանիշները, տարբեր լսարանների նկատմամբ մոտեցման մեթոդները, ինչպես նաև նրա կազմակերպման օպտիմալ սկզբունքները և այլն։

Երկրի մի շարք քաղաքներում գաղափարական աշխատանքին, մասնավորապես քաղաքական կրթությանը նվիրված հետազոտություններում ցույց են տրված քաղուսուցման ցանցի կազմակերպման մեթոդներն ու եղանակները, լուսաբանված է ունկնդիրների կողմից ուսուցման օղակների ընտրության հարցը և այլն։

Քաղաքական լուսավորության սիստեմի արդյունավետությունը մեծապես կախված է պրոպագանդիստի և ունկնդիրների գաղափարական շփումից, որը փոխադարձաբար նպաստում է կողմերի անհատական գիտակցության ձևավորմանն ու զարգացմանը։ Այստեղ անհրաժեշտ է նկատի ունենալ ունկնդիրների անհատական-տիպական այլ գծեր՝ կրթությունը, դաստիարակությունը, կուտակված անհատական փորձը, հասարակական հարաբերությունների սիստեմում տվյալ մարդու գրաված տեղը, ինչպես նաև արտադրության, կենցաղի կոնկրետ պայմանները, արտադրական կոլեկտիվի բնույթը և այլն։ Հատկանշական է, որ մարդու կյանքի և գործունեության անհատական յուրահատկություններով է հիմնականում որոշվում նրա վերաբերմունքը գաղափարների, տեսության նկատմամբ։ Ավելին, դրանով է որոշվում մարդու՝ ինֆորմացիայի ընկալման աստիճանն ու ընկալածի նկատմամբ ունեցած վստահությունը, յուրացրած դրույթների, հայացքների, տեսությունների կենսունակությունը, այսինքն՝ անհատական գիտակցության դրսևորումը հասարակականի նկատմամբ։

Մի խոսքով՝ պետք է լուրջ ուշադրություն նվիրել գաղափարներն անձի ներքին համոզմունքի վերածելու մեխանիզմը բացահայտող սոցիալ-հոգեբանական գործոններին։ Սոցիալական խմբերի, կոլեկտիվի, լսարանի, անհատի և վերջապես հասարակության հոգեբանական առանձնահատկություններն իմանալը քաղաքական-դաստիարակչական, առօրյա կուսակցական աշխատանքի արդյունավետության անհրաժեշտ պայմանն է։ «...ի՞նչ հատկանիշներով մենք պետք է գտնենք ռեալ անհատների ռեալ «խոհերի ու զգացմունքների»



մասին։ Հասկանալի է, որ այդպիսի հատկանիշը միայն մեկը կարող է լինել, այն է՝ այդ անհատների գործողությունները,— և որովհետև խոսքը միայն հասարակական «խոհերի ու զգացմունքների» մասին է, ապա պետք է ավելացնել նաև՝ անհատների հասարակական գործողությունները, այսինքն՝ սոցիալական փաստերը»,— գրում է Վ. Ի. Լենինը (Երկեր, հ. 1, էջ 523)։

Քաղաքական կրթության և անհատի հասարակական գործունեության կապը փոխադարձ է և չի սահմանափակվում լոկ հասարակական աշխատանքի վրա քաղաքական գիտելիքների ներազդման ֆունկցիայով։ Իր հերթին հասարակական-քաղաքական գործունեությանը մասնակցելն անհատներին թելադրում է տիրապետել մարքս-լենինյան տեսությանը, ձեռք բերել քաղաքական բազմատեսակ գիտելիքներ։

Պրոպագանդիստական աշխատանքում առանձին դեպքերում անտեսվում են հասարակության և մարդկանց գիտակցության մեջ կատարված սոցիալ-քաղաքական լուրջ տեղաշարժերը։ Փաստերը ցույց են տալիս, որ լսարանը վատ իմանալիս որոշակի նպատակային ինֆորմացիան երբեմն ուղղվում է այն ունկնդրին, որը դրա կարիքը չի զգում։ Վերջինս այս դեպքում ընտրում է ինֆորմացիայի իրեն ձեռնտու աղբյուրը և հաճախ դուրս մնում գաղափարական ներազդման ցանկալի ոլորտից։ Մարքսիստական գաղափարախոսության պրոպագանդման մեթոդների ու միջոցների մշակման հարցը մեզնից պահանջում է ոչ միայն ուսումնասիրել հասարակական ու անհատական գիտակցության խնդիրները, այլև՝ հասարակական գիտակցության տարբեր մակարդակները, դրանց ձևավորման կերպերն ու պրոբլեմները։

Ինքնին հասկանալի է, որ գաղափարական սուր պայքարի ժամանակակից պայմաններում գաղափարախոսության տարբեր պրոբլեմների՝ որպես հասարակության հոգևոր գործունեության ձևերի, գիտական, մասնագիտական մշակումն առաջնակարգ նշանակություն է ստանում։ Մեր օրերում բուրժուական գաղափարախոսները հակակոմունիզմի թույն են տարածում ժամանակակից գիտության ընձեռած բոլոր միջոցներով, ինֆորմացիայի բոլոր եղանակներով, հատկապես կինոյի, գրականության, ռադիոյի և հեռուստատեսային հաղորդումների միջոցով և ձգնում իրենց հերյուրանքները ներարկել գաղափարապես անկայուն մարդկանց, առանձնապես երիտասարդության գիտակցության մեջ։ Հակակոմունիզմի մերկացումը գաղափարական ճակատի առաջնահերթ խնդիրներից է, գաղափարական պայքարի կիզակետը։

Հակակոմունիզմի դեմ մեր պրոպագանդան հենվելով մի շարք գիտությունների նվաճումների վրա, կատարելագործում է գաղափարական ներգործման միջոցները. առանց գաղափարական աշխատանքներին նվիրված լուրջ հետազոտությունների, մեր օրերում անհնար է ճիշտ կողմնորոշվել անակնկալ իրավիճակներում և նպատակադրված խոսք ուղղել լսարանին, ունկնդրին։ Այժմ առավել անհրաժեշտ է շերտավորված պրոպագանդան։ Այս գործում խիստ կարևոր է հասարակական հոգեբանության ուսումնասիրումը, որը մեծապես կնպաստի ըմբռնելու մարդկանց վարքագիծը, հոգեկան աշխարհը, կարծիքների ու տրամադրությունների ձևավորումը, վերաբերմունքը հասարակական երևույթների հանդեպ։ Այդ կապակցությամբ կարևոր է պարապմունքների ժամանակ ունկնդիրների վրա ցուցադրական-էմոցիոնալ միջոցի ազդեցության արդյունավետության որոշման խնդիրը. այստեղ, իհարկե, հաշվի է առնվում թեման, ունկնդիրների կրթական մակարդակը, տարիքը և

այլն։ Առանց հասարակական հոգեբանության հիմնական դրույթների իմացության, մարդկանց վարքագծի շատ փաստեր, ինչպես կարծիքների ու տրամադրությունների ձևավորումը, կարող են ճիշտ չհասկացվել կամ ուղղակի սխալ գնահատվել։ Այնինչ, մեր պրոպագանդիստների զգալի մասը, քաջածանոթ չլինելով մարդու էմոցիոնալ ֆունկցիաների ծագմանը, չի կարող հոգուտ գործի դրանք ճիշտ օգտագործել իր պրակտիկ աշխատանքում։

Վերլուծությունը ցույց է տալիս, որ ուսուցման հաջողությունը շատ բանով պայմանավորված է ինչպես դրա մեթոդիկայով, այնպես և մատուցվող նյութի նկատմամբ ունկնդիրների ունեցած վերաբերմունքով։ Հետևապես, ավելորդ չէր լինի, վերոհիշյալին զուգահեռ, ուսումնասիրել ընկալման և հետաքրքրության հոգեբանական սկզբունքներն ու դրանց ձևավորման ուղիները։ Այսօր գաղափարական աշխատանքի արդյունավետության հարցերով զբաղվող սոցիոլոգները, առանց մեծ ջանքերի, կարողանում են հայտնաբերել լսարանի, այսպես կոչված՝ «հագեցածության սահմանը»։ Ճիշտ է, ճշմարտությունները հաճախակի գործածելուց չեն մաշվում, սակայն, միևնույն փաստերի, արտահայտությունների, դատողությունների հաճախակի օգտագործման, լսարանին իրական կարողություններից վեր ինֆորմացիա հաղորդելու, ինչպես նաև ինֆորմացիան սխալ կողմնորոշելու դեպքում, հոգեբանական հայտնի օրենքի համաձայն, բթանում է կամ խիստ նվազում մարդու էմոցիոնալ ընկալունակությունը։ Հետևապես, ինֆորմացիայի հաղորդման քանակի, չափի և ճիշտ դիմորոշման հարցերն անմիջական կապի մեջ են գաղափարական աշխատանքի ներգործման արդյունավետության հետ։

Հայտնի է, որ խոսքը, զրույցը, գաղափարը լսարանի կողմից առավել արդյունավետ է ընկալվում, եթե այն զերծ է ավելորդ մանրամասնություններից, շարադրվում է մատչելի և հասկանալի, կրագետ լեզվով, եթե հաղորդվող նյութը էմոցիոնալ առումով հագեցած է, իսկ եզրակացությունները տրամաբանորեն հետևողական ու հիմնավորված։ Պատկերավոր և կենդանի շարադրանքի օգուտը քիչ կլինի, եթե այն հագեցած չլինի փաստերով, ապացուցելի դատողություններով, պոլեմիկ բնույթ չունենա, մտքեր չարթնացնի և չդրդի խորհել, շարադրածի նկատմամբ սեփական վերաբերմունք մշակել։ Լսարանը բավարարելու համար ոչ պակաս նշանակություն ունի դժվար պրոբլեմները ճշմարտացի, համոզիչ մեկնաբանելու ունակությունն ու, որ շատ կարևոր է՝ իրադարձության լուսաբանման գործնականությունը։ Հետևապես, լսարանի նախասիրություններն ու հակումները գիտենալու առումով ունկնդրին ճանաչելը գաղափարական աշխատանքի արդյունավետության բարձրացման ևս մի պայման է։

Սոցիալական պրոցեսների ուսումնասիրման, հասարակական և գաղափարական աշխատանքների ղեկավարման գործում կուսակցության գործունեության համակողմանի վերլուծման համար ավելի լայնորեն են օգտագործվում սոցիոլոգիական հետազոտությունները, կատարելագործվում ներկուսակցական ինֆորմացիայի համակարգը, վերլուծվում սոցիալական զանազան պրոբլեմների վերաբերյալ անհրաժեշտ ինֆորմացիան, հասարակական կարծիքի և տրամադրությունների դրսևորումները։ Համոզելը կուսակցական պրոպագանդայի նպատակն է, ապացույցը՝ կռվանը։ Պրոպագանդիստը, լսարանին համոզելու համար, պետք է զինված լինի կոնկրետ սոցիոլոգիական հետազոտությունների տվյալներով, հիմնավորված փաստերով։ Նման դեպքում պրոպա-



գանդիստի՝ ունկնդիրների քաղաքական կրթության կազմակերպչի ու գլխավոր դեմքի խոսքը հավաստի է, տպավորիչ։

ՍՄԿԿ XXIV համագումարը մեծ նշանակություն տվեց մեր հասարակության կառավարման գործում գիտական մոտեցմանը։ Չէ՞ որ հասարակական երևույթների գիտական կառավարումը, առաջին հերթին, ենթադրում է կոնկրետ իրադրության վերլուծություն, իրավիճակի զգաստ գնահատում։ «Որտեղ բացակայում են ճշգրիտ գիտելիքները,— նկատել է Մաքսիմ Գորկին,— այնտեղ գործում են ենթադրությունները, իսկ տասը ենթադրություններից ինը սխալ է»։

Երկրի առանձին քաղկոմ-շրջկոմներում, քոլտնտեսություններում, արտադրական ձեռնարկություններում կուսակցական կոմիտեներին կից ստեղծվել են սոցիոլոգիական, տեխնոլոգիական խմբեր, որոնք լուծում են տեխնիկա-տնտեսական, սոցիալական լուրջ խնդիրներ, ուսումնասիրում հասարակության կառավարման գործում գաղափարախոսության տեղի ու դերի հարցերը։ Սոցիոլոգիական խմբերը, կուսակցական կազմակերպության գլխավորությամբ, զբաղվում են հիմնարկ-ձեռնարկության ղեկավարման, զարգացման սոցիալական պլանների կազմման, աշխատանքային ոճի գնահատման, ինֆորմացիայի ձևերի և արտադրական ցուցանիշների հետազոտման, աշխատողների ընտրության և այլ հարցերով։ Սոցիոլոգիական հետազոտությունները հնարավորություն են ընձեռում ի մի բերելու ժամանակակից սոցիալական երևույթները, կանխատեսելու դրանց զարգացման տենդենցները։ Նման ուսումնասիրություններն անհրաժեշտ պայմաններ են արտադրության գիտական կառավարման ու կազմակերպման գործում։ Սոցիոլոգիական կոմպլեքս հետազոտությունների շնորհիվ հասարակության կառավարման գործում մշակվում են կոնկրետ հանձնարարականներ ու գիտականորեն հիմնավորված ծրագրեր։

Սոցիոլոգիական հետազոտությունները ինֆորմացիայի նոր և հավաստի աղբյուրներ են, հասարակական կարծիքի ուսումնասիրման միջոց։ Ինֆորմացիայի մշակած արդյունքներն անհրաժեշտ են կուսակցական, սովետական, կոմերիտական և արհմիութենական օրգաններին ինչպես առօրյա աշխատանքում, այնպես և հեռանկարային ծրագրեր մշակելիս։

Քաղաքական ուսուցման գործում դեռևս լրիվ արդյունավետությամբ չեն օգտագործվում գիտա-տեխնիկական և ցուցադրական միջոցները՝ դիապոզիտիվներ, դիաֆիլմեր, կինոնկարներ, ձայնագրություններ։ Իսկ օգտագործման դեպքում որոշված չեն դրանց արդյունավետության մոտավոր չափանիշները։ Այժմ, գեղարվեստի երևույթների սոցիոլոգիական քննման շնորհիվ, հնարավոր է դառնում որոշել կոնկրետ ստեղծագործությունների արժեքն ու հասարակության տարբեր խմբերի վրա դրանց ազդեցության բնույթը։

Վերջին տարիներին քաղուսուցման ցանցում տեղի ունեցան մեծ բարեփոխություններ ինչպես գործի կազմակերպման, այնպես և աշխատանքի սկզբունքների մեջ։ Ստեղծվել է սկզբնական քաղդպրոցների և մարքսիզմ-լենինիզմի դպրոցների ցանց, ուր կուսակցության անդամ-թեկնածուները, ինչպես նաև անկուսակցականներն ուսումնասիրում են ՍՄԿԿ պատմությունը, փիլիսոփայությունը և քաղաքատնտեսությունը։ Բարելավվում է կուսակցական լուսավորության ցանցի կոմպլեկտավորումը, կատարելագործվում կուսակցական պրոպագանդայի մեթոդիկայի ինչպես կազմակերպական հիմքերը, այնպես և ծրագրերն ու դասագրքերը, կազմակերպչորեն ամրապնդվում ուսուցման դրվածքը։ Օրըստօրե հարստանում է կուսակցական ուսուցման գաղափա-

րական-տեսական բազան, ստեղծվում են քաղաքական լուսավորության կաբինետներ, գրադարաններ, կոնսուլտացիոն կետեր, սիստեմատիկ աշխատանք է տարվում պրոպագանդիստական կադրերի որակավորումը բարձրացնելու համար, մշակվում են գիտելիքների յուրացման մեթոդական նոր ձևեր, բարձրանում է կուսակցական կազմակերպությունների՝ քաղաքական լուսավորության ղեկավարման մակարդակը։

XXIV համագումարին տված ՍՄԿԿ Կենտկոմի հաշվետու զեկուցման մեջ նշված է, որ կուսակցությունն ունի կոմունիստների տեսական ուսուցումը կազմակերպելու հարուստ փորձ։ Խնամքով պահպանելով արդեն կուտակված փորձի լավագույնը, նա մշտապես կատարելագործում է կուսակցական լուսավորությունը։ Կենտրոնական կոմիտեն մշակել և այժմ իրագործում է կուսակցական կրթության նոր, ավելի կուռ՝ եռաստիճան սիստեմ, որը հաշվի է առնում կադրերի տեսական պատրաստության տարբեր մակարդակը և նպատակ ունի կոմունիստների ողջ բանակը ներգրավել աշխատավորների շրջանում տարվող ագիտացիոն-պրոպագանդիստական ակտիվ աշխատանքի ոլորտը։

Կոմունիստների, կոմերիտականների և անկուսակցականների մարքս-լենինյան կրթությունը մեր կուսակցության առանձնակի հոգատարության առարկան է։ Այժմ կուսակցությունը քաղաքական, լուսավորական իր աշխատանքում աշխատավորների գիտակցության վրա ներազդելու նպատակով օգտագործելով մասսայական կոմունիկացիայի ժամանակակից հզոր միջոցները, հարստացրել է իր գաղափարական ներգործման հնարներն առավել անմիջական միջոցներով։ Կոմունիստների մարքս-լենինյան կրթությունը,— համագումարի ամբիոնից հայտարարեց Լ. Ի. Բրեժնևը,— մեծ գործ է, և ոչ միայն իր մասշտաբներով, այլ նախ՝ իր գաղափարական-քաղաքական նշանակությամբ։ Մեր խնդիրն է՝ այսուհետև ևս բարելավել այդ աշխատանքի դրվածքը, բարձրացնել նրա արդյունավետությունը, քաղաքական ուսուցումն ավելի սերտորեն շաղկապել կոմունիստական շինարարության կոնկրետ խնդիրների հետ, հասնել այն բանին, որ այն ավելի ուժեղ ներգործի կուսակցության բոլոր անդամների գիտակցականության և ակտիվության աճի վրա։ Համագումարը դրեց նաև պրոպագանդիստական կադրերին նոր պահանջներ ներկայացնելու հարցը, ուշադրությունը հրավիրելով նրանց ընտրության և ուսուցման խնդիրներին։ Միաժամանակ համագումարը պահանջեց վճռականորեն հաղթահարել կուսակցական կրթության գործում եղած ֆորմալիզմն ու երբեմն նկատվող պարզունակությունը։ Կուսակցությունը պահանջում է «հասարակական գիտությունների ավելի ու ավելի վճռական շրջադարձ դեպի այն պրոբլեմների մշակումը, որոնք հրատապ են ներկայի ու ապագայի համար»։

Քաղաքական ուսուցման բնագավառում մեծ է սոցիոլոգիական և սոցիալ-հոգեբանական հետազոտությունների դերը։ Այստեղ անհրաժեշտ է բազմակողմանիորեն քննել կուսակցական-քաղաքական լուսավորության ցանցում ուսումնասիրվող նյութերի բովանդակության յուրացման որակական առանձնահատկությունները, լսարանի վրա ներգործման ուղիները։ Նման հետազոտություններն անհրաժեշտ են կուսակցության գաղափարական-քաղաքական գծի մշակման, կյանքի պրոցեսների տեսական ճիշտ վերլուծության և օբյեկտիվ գնահատման, կուսակցական-քաղաքական աշխատանքի արդյունավետության գիտական չափանիշների ճշգրիտ որոշման համար։

---

Ա. Վ. ԳԵՎՈՐԳՅԱՆ

ՀԿԿ Կամոյի շրջկոմի առաջին քարտուղար

# ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՇԽԱՏԱՆՔԸ ՍԵԶՈՆԱՅԻՆ ԳՈՐԾ ՉԷ

Ժամանակակից պայմաններում և, առանձնապես, ՍՄԿԿ XXIV համագումարից հետո, երբ կուսակցությունը ձեռնամուխ է եղել լուծելու տնտեսական, քաղաքական ու կուլտուրական շինարարության ծանրակշիռ ու բարդ խնդիրներ, երբ օրավուր ուժեղանում և ծավալուն մասշտաբներ է ընդունում գաղափարական պայքարը սոցիալիստական և կապիտալիստական սիստեմների միջև, մեծ կարևորություն է տրվում աշխատավորների կոմունիստական դաստիարակությանը։ Գաղափարական աշխատանքի բոլոր օղակների ու միջոցների հիմնական խնդիրն է՝ զարգացնել աշխատավորներին համակած ստեղծագործական ոգին ու նախաձեռնությունը, ընդլայնել նրանց շրջանում համագումարի նյութերի պրոպագանդման ոլորտը, յուրաքանչյուր մարդու պարզ ու հասկանալի դարձնել նրա անելիքներն առաջիկա հինգ տարիների ընթացքում, ցույց տալ դրանց լուծման ուղիները։ Վ. Ի. Լենինի հստակ բնորոշմամբ՝ «Հարկավոր է մարսել այս քաղաքական հեղաշրջումը, բնակչության մասսաներին մատչելի դարձնել այն, հասնել այն բանին, որ այս քաղաքական հեղաշրջումը չմնա միայն դեկլարացիա» (Լենինը պրոպագանդայի և ագիտացիայի մասին, Հայպետհրատ, Երևան, 1958 թ., էջ 605)։

ՍՄԿԿ XXIV համագումարը, ընդգծելով կուսակցության պրոպագանդիստական և ագիտ-մասսայական աշխատանքի հարաճուն նշանակությունը, խնդիր դրեց ավելի ակտիվ ու արդյունավետ դարձնել կոմունիստական իդեալների, մեր շինարարության կոնկրետ խնդիրների պրոպագանդումը։ «Մոտակա ժամանակաշրջանում,— ասաց Լ. Ի. Բրեժնևը ՍՄԿԿ XXIV համագումարում,— կուսակցության պրոպագանդիստական և ագիտացիոն-մասսայական աշխատանքի կենտրոնական տեղերից մեկը պետք է գրավի մեր համագումարի որոշումների իմաստի և նշանակության խոր պարզաբանումը աշխատավորությանը։ Ինչպես հարկն է կարողանալ աշխատավորության հոծ զանգվածներին լիակատար չափով հաղորդել մեր գաղափարական համոզվածության ամբողջ ուժը, ինչպես հարկն է, իսկապես ստեղծագործաբար մոտենալ սովետական մարդու կոմունիստական դաստիարակության գործին» (ՍՄԿԿ Կենտկոմի հաշվետու զեկուցումը ՍՄԿԿ XXIV համագումարին, էջ 142)։

Մեր գործունեության ընթացքում առանձնահատուկ ուշադրություն ենք

նվիրում կուսակցական, սովետական, արհմիութենական և կոմերիտական կազմակերպությունների նախաձեռնությունների խրախուսմանն ու զարգացմանը։ Ներքին օղակից սկզբնավորված նախաձեռնությունը հաստատուն երաշխիք է տվյալ նպատակի իրականացման համար։ Քաղաքական աշխատանքի նորանոր ձևերի կիրառման նախաձեռնություններով շրջանում աչքի են ընկնում կաբելի, էլեկտրատեխնիկական, սարքաշինական գործարանների, տրիկոտաժի, կարի, կոշիկի ֆաբրիկաների, Կամոյի, Հացառատի, Բատիկյանի, Սարուխանի սովխոզների, Նորադուզի, Մուխանի կոլտնտեսությունների և մի քանի այլ կուսկազմակերպություններ։

Կաբելի գործարանը (դիրեկտոր՝ Թ. Խաչատրյան, կուսկազմակերպության քարտուղար՝ Կ. Խանդանյան) շրջանի երիտասարդ ձեռնարկություններից է։ Ձեռնարկության հիմնադրման առաջին իսկ տարուց այստեղ պատշաճ ուշադրություն է նվիրվում աշխատավորների էսթետիկական ու ֆիզիկական դաստիարակությանը, նրանց կոմունիստական աշխարհայացքի ձևավորմանը։ Քանի որ կոլեկտիվի անդամների ճնշող մեծամասնությունը երիտասարդներ են (միջնակարգ և բարձրագույն կրթությամբ տղաներ ու աղջիկներ), կազմակերպվել են սպորտային մի քանի խմբակներ, որոնք գրեթե ամեն տարի մասնակցում են շրջանային ու հանրապետական առաջնության մրցումներին։ Էստրադային անսամբլն իր երգացանկով շահել է շրջանի աշխատավորության համակրանքը։

Գործարանի սկզբնական կուսկազմակերպությունը քաղաքական աշխատանքի լավագույն փորձ ունեցող բարձրագույն կրթությամբ հինգ ընկերների հաստատել է քաղինֆորմատորներ, որոնցից ամեն մեկն ունի իր կոնկրետ խնդիրը։ Քաղինֆորմատորներ Ռ. Խաչատրյանի, Ռ. Հակոբյանի, Հ. Գրիգորյանի և մյուս ընկերների զրույցներն անցնում են հետաքրքրական ու բովանդակալից։

Վ. Ի. Լենինը քաղլուսվարների համառուսաստանյան երկրորդ համագումարում (1921 թ.), խոսելով մասսաների շրջանում տարվող քաղաքական-գաղափարական աշխատանքի կարևորության մասին, ընդգծել է. «...Հարկավոր է, որ ժողովուրդն իրոք յուրացնի մեր պրոպագանդան, մեր ձեռնարկումները, մեր բրոշյուրները, և սրա արդյունքը լինի ժողովրդական տնտեսության բարելավումը (Լենինը պրոպագանդայի և ագիտացիայի մասին, էջ 612)։ Կաբելի գործարանում ևս քաղաքական աշխատանքը միշտ ծառայում է արտադրության բարձրացմանը, տնտեսական խնդիրների լուծմանը։ Դրա խելացի կազմակերպումը տվել և տալիս է իր դրական արդյունքը։

Ձեռնարկության կոլեկտիվը միշտ կատարում ու գերակատարում է արտադրական ծրագիրը, պայքարում բարձրորակ արտադրանքի համար։ Այստեղ առաջավոր բանվորներն ու ինժեներատեխնիկական աշխատողները հանդես են գալիս ռացիոնալիզատորական ու նորարարական առաջարկություններով։ Միայն 1970 թ. ներդրվել է 35 առաջարկություն, որոնց տարեկան պայմանական օգուտը կազմում է 47 հազար ռուբլի։ Տարեցտարի ստվարանում է նորարարների ու ռացիոնալիզատորների ջոկատը։ Նրանց հայտնագործած նորույթները պրոպագանդվում են 18 ագիտատորների միջոցով, մասսայականացվում տեխնիկական խորհրդի ընդհանուր ժողովներում, հրապարակվում հասարակական հիմունքներով գործող քաղլուսկաբինետում։

Իհարկե, թվարկածով չի սահմանափակվում կոլեկտիվում տարվող քաղաքական աշխատանքի ոլորտը։ Գործարանի կուսկազմակերպությունը կիրառում է նաև այլ ձևեր ու մեթոդներ. երիտասարդների բանակ մեկնելն ու բանակից վերադառնալը նշում է հանդիսավորությամբ, կազմակերպում երկարամյա և անբասիր աշխատող բանվորների մեծարման երեկոներ։ Այդ միջոցառումներն ունեն քաղաքական խոր բովանդակություն, սերմանում են մարդկանց մոտ հայրենիքի ու կոլեկտիվի հանդեպ պարտքի խոր գիտակցություն, հանդիսանում աշխատավորների կոմունիստական դաստիարակության իսկական դպրոց։ Ագիտատորներն ու քաղինֆորմատորներն ակտիվորեն մասնակցում են միջարտադրամասային սոցիալիստական մրցության կազմակերպմանը, մասսայականացնում դրա արդյունքները, պարզաբանում առաջիկա անելիքները։

Արտադրության բարձրացմանը և կոլեկտիվի ինտերնացիոնալ դաստիարակությանը մեծ չափով նպաստում են եղբայրական հանրապետությունների ձեռնարկությունների հետ սկսած սոցիալիստական մրցությունն ու փոխայցելությունները։ Գործարանի կոլեկտիվին անցյալ տարի հյուր եղան Տալինի կաբելագործների պատվիրակները։ Այս տարի Կամոյի կաբելագործների ներկայացուցիչները կայցելեն մրցակիցներին։ Կամոյի կաբելի գործարանում աշխատող մյուս ազգերի ներկայացուցիչների համար դա նշանակում է իսկական բարեկամություն, իրոք, մեծ ընտանիք, մեծ տուն։

Քաղաքական աշխատանքի անբաժանելի մասն է կոլեկտիվի կրթական մակարդակի բարձրացումը։ Վերջին տարիներս այս ասպարեզում զգալի գործ է կատարվել շրջանի արտադրական ձեռնարկություններում։ Կուսակցական, սովետական և կոմերիտական աշխատողների համար այդ հարցն առաջնակարգ նշանակություն ունի։ Չէ՛ որ կոմունիստական դաստիարակությունը նախ պահանջում է կրթական անհրաժեշտ պատրաստականություն։ ՍՄԿԿ XXIV համագումարը խնդիր դրեց նոր հնգամյակում ապահովել լիակատար անցումը երիտասարդության ընդհանուր միջնակարգ կրթությանը։ Շրջանի կուսակցական և կոմերիտական կազմակերպությունները պարբերաբար անդրադառնում են այս հարցերին և միջոցառումներ մշակում՝ բանվոր և կոլտնտեսական երիտասարդներին բաներիտ, գյուղերիտ և հեռակա միջնակարգ դպրոցներն ընդգրկելու համար։ Անցած ուսումնական տարում 768 երիտասարդներ սովորում էին այդ դպրոցներում։ Ապրիլի 30-ին ՀԼԿԵՄ շրջկոմը կազմակերպեց երիտասարդության հավաք՝ «Կենսագործենք ՍՄԿԿ համագումարի որոշումները» նշանաբանով։ Շրջանի երիտասարդությանն ուղղված կոչի մեջ, մի շարք հարցերի հետ մեկտեղ, հավաքի մասնակիցներն ընդգծեցին աշխատող երիտասարդության կրթական մակարդակի բարձրացման անհրաժեշտությունը։

Քաղաքական-մասսայական աշխատանքը սեզոնային չէ։ Այն կազմակերպելու համար անհրաժեշտ է ծավալել տևական և ծրագրված գործունեություն։ Դրա շնորհիվ միայն հնարավոր է ունենալ բավարար արդյունք, որն արտահայտվում է աշխատավորության ընդհանուր զարգացմամբ, նրա բարոյական կերպարով, աշխատանքի ստեղծագործական թափով։ ՀԿԿ շրջկոմը, իր քաղաքական գործունեությունն ավելի արդյունավետ դարձնելու համար, կիրառում է ագիտացիոն-մասսայական աշխատանքի առավել հետաքրքրական ձևեր ու մեթոդներ։ Ինտելիգենցիայի համար, օրինակ, պարբերաբար կազմակերպվում են հավաքներ, հանդիպումներ անվանի մարդկանց կամ

շրջանի ղեկավարության հետ, արվեստի ու գրականության հարցերին նվիրված երեկոներ։ Նման միջոցառումներ են կազմակերպվել Կամոյում, Հացառատում, Սարուխանում և այլ գյուղերում։ ՀԼԿԵՄ շրջկոմը Կամոյում անցկացրել է շրջանի երիտասարդ ուսանողների հավաք-հանդիպում՝ կլոր սեղանի շուրջը։ Բնակչության շրջանում քաղաքական սիստեմատիկ աշխատանք են տանում և՛ կուսշրջկոմը, և՛ կուսակցական, կոմերիտական ու արհմիութենական կազմակերպությունները։ Օրինակ, Կամոյի սովխոզի (դիրեկտոր՝ Հ. Ջաքոյան, կուսկազմակերպության քարտուղար՝ Ռ. Հովեյան) աշխատողների համար ձմռան ամիսներին կազմակերպվել են քաղաքական թեմաներով մի քանի տասնյակ դասախոսություններ, զրույցներ, զեկուցումներ, բանավոր ամսագրեր, երեկոներ։ Գարնանն ու ամռանը քաղաքական-մասսայական աշխատանքը տեղափոխվեց դաշտ, յայլաղ։ Այդ գործն այժմ էլ շարունակվում է։ Սովխոզի կուսկազմակերպությունը նախատեսել է դաշտերում և յայլաղներում աշխատող մարդկանց համար կազմակերպել մրցակիցների հանդիպումներ, էքսկուրսիաներ, ագիտբրիգադների ելույթներ և կուլտուր-մասսայական այլ միջոցառումներ, որոնք բովանդակալից ու հետաքրքրական կդարձնեն աշխատավորների առօրյան, նրանց հաղորդակից կդարձնեն մեր հայրենիքի բազմաբեղուն կյանքի նորույթներին։

ՀԿԿ շրջկոմի դասախոսական խմբի, «Գիտելիք» ընկերության շրջանային վարչության 135 անդամները պլանավորված աշխատանք են տանում բնակչության շրջանում, ընդլայնում նրանց մտահորիզոնը, հարստացնում գիտելիքները։ Այս խնդիրներն իրագործվում են ոչ միայն նրանց միջոցով։ Շրջանի ավելի քան 500 ագիտատորներ, քաղինֆորմատորներ ու պրոպագանդիստներ կոմունիստների, ողջ աշխատավորների շրջանում պրոպագանդում, մասսայականացնում են մեր կուսակցության ու կառավարության որոշումները, տեսական ընդհանրացումներ կատարում՝ ելնելով տվյալ կոլեկտիվի առջև դրված խնդիրներից։ Կուսշրջկոմի բյուրոն, բնակչության շրջանում տարվող քաղաքական-մասսայական աշխատանքը բարելավելու նպատակով, պարբերաբար լսում է ագիտկոլեկտիվների ղեկավարների, քաղինֆորմատորների ու պրոպագանդիստների հաշվետվությունը, մշակում համապատասխան միջոցառումներ, հետևում դրանց իրականացմանը։

Հունվար ամսին բյուրոյի նիստում քննարկեցինք «Սարուխանի ինտելիգենցիայի մասնակցությունը գյուղի հասարակական-քաղաքական կյանքին» հարցը։ Քննարկմանը հրավիրվել էին Սարուխանի սկզբնական կուսկազմակերպությունների քարտուղարները, նրանց առաջին տեղակալները, մանկավարժական կոլեկտիվների ներկայացուցիչներ։ Հարցի մանրակրկիտ ուսումնասիրությունն ու գործարար քննարկումը հույժ անհրաժեշտ էին։ Հարցի քննարկումն օգնեց կուսակցական, սովետական, արհմիութենական և կոմերիտական կազմակերպություններին, կուլտուր-լուսավորական հիմնարկություններին՝ լայնորեն օգտագործելու ինտելիգենցիայի ուժերը և ավելի հետաքրքրական ու բովանդակալից դարձնելու քաղաքական-մասսայական աշխատանքը։

Քաղաքական կարևոր նշանակություն ունեն աճող սերնդի և, առանձնապես, երիտասարդության աշխատանքային դաստիարակությունը, նրանց ակտիվության ու նախաձեռնության զարգացումը։ Այդ նպատակով շրջանի կուսակցական և կոմերիտական կազմակերպությունները կիրառում են համոզ-



ման ու խրախուսման մեթոդներ, բացատրական լայն գործունեություն ծավալում այն կոլեկտիվներում, որտեղ առանձին անբարեխիղճ և հանրօգուտ աշխատանքից խուսափող անձինք խաթարում են կոլեկտիվի ռիթմիկ կյանքը։ Էլեկտրատեխնիկական գործարանի, Կարմիր գյուղի և Նորադուզի կոլտնտեսությունների, Բատիկյանի և Արծվաքարի սովխոզների կուսկազմակերպությունները ժողովներում քննարկել են երիտասարդության աշխատանքային դաստիարակությանը վերաբերող հարցեր, կազմակերպել այդ թեմաներով զեկուցումներ, զրույցներ, հարց ու պատասխանի երեկոներ, հանդիպումներ արտադրության առաջավորների հետ և այլն։ Նրանք զգալի հաջողություններ են ձեռք բերել մարդկանց հանրօգուտ աշխատանքում ընդգրկելու ասպարեզում։ Այդ նպատակն էր հետապնդում նաև «Շրջանում երիտասարդության կոմունիստական դաստիարակության ասպարեզում տարվող աշխատանքների մասին» հարցի քննարկումը կուսշրջկոմի բյուրոյում։

Շրջանի տնտեսական ու քաղաքական կյանքին մեծ թափ հաղորդեց ՍՄԿԿ XXIV համագումարը, որի նյութերի ուսումնասիրմանը նվիրվեցին քաղուսցանցի վերջին երեք պարապմունքները, որտեղ կոմունիստներն առաջադրված յուրաքանչյուր խնդիր կապում էին իրենց կազմակերպության առջև ծառացած խնդիրների հետ, անում գործին օգնող կոնկրետ առաջարկություններ։

Որ քաղաքական աշխատանքը սեզոնային գործ չէ, անառարկելի է։ Դա մեծ մասամբ կախված է տվյալ կուսկազմակերպության ղեկավարի (կամ ղեկավարների) նախաձեռնելու կարողությունից։ Պետք է զգալ այն նորը, առաջադիմականը, որը դեռ չի ձևավորվել, բայց շուտով լինելու է՝ դա վերաբերի մարդկանց կենցաղին, սովորույթներին թե աշխատանքային նոր հարաբերությունների, հայրենասիրության և ինտերնացիոնալիզմի դրսևորման տարբեր ձևերին... Պետք է զգալ նորը, շունչ ու բովանդակություն տալ դրան, դարձնել ընդհանուրի սեփականությունը։ Այս սկզբունքով են ղեկավարվում կուսշրջկոմն ու սկզբնական կուսկազմակերպությունները՝ քաղաքական-մասսայական որևէ աշխատանքի ձեռնարկելիս և, ընդհանրապես, իրենց գործունեության ընթացքում։ Նրանք քաղաքական-գաղափարական աշխատանքի բոլոր լծակներն ուղղում են այդ նպատակին։

Քաղաքական աշխատանքում իրենց որոշակի տեղն ունեն շրջանային «Լենինյան դրոշով» թերթը և ռադիոհաղորդումների խմբագրությունը, որոնք զգալի ջանքեր են գործադրում աշխատողների ուժերի մոբիլիզացման, նրանց շրջանում մարքս-լենինյան գաղափարախոսության պրոպագանդման, կուսակցության ու կառավարության որոշումների մասսայականացման, կոմունիստական կենցաղավարության բնորոշ գծերի արմատավորման, ինչպես նաև մեր հասարակարգին խորթ երևույթների ու բարքերի նկատմամբ ատելություն բորբոքելու համար։ Թերթի էջերում և ռադիոյով հաճախակի հրապարակվում են ռեպորտաժներ, ակնարկներ, հոդվածներ՝ կոլեկտիվներում կատարվող հայրենանվեր գործերի, առաջավոր փորձի մասին, տրվում են արտադրության առաջավորների ելույթներ։

Քաղաքական-մասսայական աշխատանքն ինքնանպատակ չէ։ Դրա խելացի և արդյունավետ կազմակերպումը մեծապես խթանում է արտադրության առաջընթացը, մարդկանց մղում արտադրական խիզախումների, նպաստում հանրային բարիքների առատության ստեղծմանը։ Քաղինֆորմատորներն ու ագիտատորներն առաջինն են հաղորդակից դարձնում մասսաներին մեր երկ-

րում ծնունդ առած նոր և լավ նախաձեռնություններին, կուսակցության ու կառավարության նոր կանխագծումներին, մեր ժողովրդի մեծագործություններին։ Մեր շրջանի ձեռնարկությունների կոլեկտիվները ջերմորեն արձագանքեցին Մոսկվայի առաջավոր ձեռնարկությունների հայրենասիրական նախաձեռնությանը, վերանայեցին սոցիալիստական պարտավորությունները և ստանձնեցին նոր, լրացուցիչ պարտավորություններ՝ ՍՄԿԿ XXIV համագումարի որոշումները կենսագործելու և իններորդ հնգամյակը ժամկետից շուտ կատարելու համար։ Եվ ահա առաջին գոհացուցիչ արդյունքները. շրջանի արդյունաբերական ձեռնարկություններն ընթացիկ տարվա առաջին կիսամյակի համախառն արտադրանքի պլանը կատարեցին 103, իրացմանը՝ 102 տոկոսով։ Աշխատանքի արտադրողականության աճն անցյալ տարվա նույն ժամանակամիջոցի համեմատությամբ կազմեց 16 տոկոս։ Այս հաջողությունների մեջ զգալի ներդրում ունեն նաև ագիտատորներն ու քաղինֆորմատորները։

Պետք է, սակայն, ընդունել, որ մասսաների շրջանում տարվող քաղաքական-գաղափարական աշխատանքում կան նաև դժվարություններ ու թերություններ։ Անցկացվող միջոցառումներում դեռևս նկատվում է միօրինակություն, առանձին դասախոսություններ իրենց գաղափարական-քաղաքական ցածր մակարդակով չեն բավարարում ունկնդիրներին։ Արտադրական որոշ կազմակերպություններում անբավարար է ցուցադրական ագիտացիան։ Դեռևս անհրաժեշտ չափով ուշադրություն չի նվիրվում կոմունիստականի կոչմանն արժանանալու համար ծավալված շարժմանը։ Դեպքից դեպք են կազմակերպվում հանդիպումներ բոլշևիկյան հին գվարդիայի ներկայացուցիչների, անվանի մարդկանց, գիտնականների հետ։

Հարկ եմ համարում խոսել նաև երկու հարցի շուրջ։

Առաջինը հեռուստատեսության մասին է։ Կարելի է ասել, որ այժմ ագիտացիոն-մասսայական աշխատանքի ոչ մի միջոց չունի այն ուժն ու հնարավորությունը, որ ընձեռված է հեռուստատեսությանը։ Մեր աշխատավորության կենցաղի մեջ հաստատուն տեղ ունի այն։ Բայց պետք է նշել, որ Սևանի ավազանի բնակչությունը չի կարողանում օգտվել ութերորդ ալիքից, իսկ հանրապետական հեռուստատեսությունը, ավարտելով իր երեկոյան ծրագիրը, տրանսլյացիայի չի ենթարկում գոնե կարևոր հաղորդումները։

Երկրորդը վերաբերում է տեղական ռադիոյին։ Գրեթե 10 տարի է, որ ստեղծված են շրջանային ռադիոհանգույցներ։ Սակայն մինչև օրս ո՛չ հանրապետական ռադիոհաղորդումների և հեռուստատեսության պետական կոմիտեն, ո՛չ էլ կապի մինիստրությունը պատշաճ ուշադրություն չեն նվիրում այդ օղակների ամրապնդմանը։ Շաբաթական տրվում է երեք հաղորդում 15 րոպե տևողությամբ։ Ճիշտ է, թղթակցական ակտիվն օգնում է շրջանային ռադիոհաղորդումների կազմակերպչին, բայց գոնե մի գրական աշխատող պետք է լինի՝ նյութերի ապահովման ու մշակման համար։

Շրջանի կուսկազմակերպության տնտեսական ու քաղաքական աշխատանքի նպատակը մեկն է՝ անթերի կենսագործել ՍՄԿԿ XXIV համագումարի որոշումները։ Գյուղատնտեսության և արդյունաբերության բնագավառի աշխատողները, որպես մի ընտանիք, միշտ համախմբված, օգնել և օգնում են միմյանց՝ կուսակցության և կառավարության բոլոր առաջադրանքները մինչև վերջ կենսագործելու համար։

Վ. Ա. ՄԵՀՐԱԲՅԱՆ

ՀԿԿ Կենտկոմի արդյունաբերության և
տրանսպորտի բաժնի վարիչի տեղակալ

## ԼԻԽԱՉՈՎՑԻՆԵՐԻ ՕԳՏԱԿԱՐ ՓՈՐՁԸ

Հայրենական ավտոմեքենաշինության առաջնեկի աշխատողների կուտակած փորձը մեծ հետաքրքրություն է ներկայացնում ամբողջ երկրի մեքենաշինարարների համար։ Ի. Ա. Լիխաչովի անվան գործարանի պատմությունը մայրաքաղաքի բանվոր դասակարգի մեծ ջոկատի կյանքի էջերն են, մեր ողջ հայրենիքի պատմության էջերը։ Նա առաջինն սկսեց թողարկել սովետական ավտոմեքենաներ, նրա օգնությամբ աճեց և ամրապնդվեց երկրի ավտոարդյունաբերությունը։ «ԶԻԼ» մակնիշի նոր ավտոմեքենաների շարասյուններն ամեն օր գործարանից ուղարկվում են երկրի բոլոր ծայրամասերը։

ԶԻԼ գործարանում և նրա մասնաճյուղերում աշխատում են տասնյակ հազարավոր մարդիկ։ Ձեռնարկությունը նախատեսել էր 1969 թ. թողարկել առավել շատ բեռնատար ավտոմեքենա, ինչպես և՝ տնային սառնարան։ Գործարանի տարեկան բեռնաշրջանառությունը (ստացում և առաքում) հավասար է 3,5 մլն տոննայի։ Ամեն օր այստեղ տարբեր բեռներ են բերում 300 երկաթուղային վագոն։ Ներգործարանային և ներարտադրամասային փոխադրումներով զբաղված են մոտ 1000 ավտոմեքենա, բեռնիչ և էլեկտրասայլակ։ Գործարանում գործող կոնվեյերների երկարությունը հասնում է 60 կմ-ի։

Ձեռնարկության կոլեկտիվն իր առջև խնդիր է դրել՝ կենտրոնացնել բոլոր ուժերն ու եռանդն աշխատանքի արտադրողականության հետագա բարձրացման և տեխնիկական առաջադիմության տեմպերն արագացնելու համար, որոնք և կապահովեն արտադրության արդյունավետության բարձրացումը։ Այդ խնդրի լուծման գործում կենտրոնական տեղերից մեկը գրավում է արտադրության կոմպլեքսային մեքենայացումը։ Ավտոմոբիլաշինության մեջ զանգվածային արտադրությունը ենթադրում է հիմնական և օժանդակ պրոցեսների մեքենայացման բարձր աստիճան։

Այդ ձեռնարկությունը ութ տարի է, ինչ հիմնավորապես վերակառուցվում է՝ իրականացնելով արտադրական պրոցեսների մեքենայացման և ավտոմատացման լայն աշխատանքներ։ Վերակառուցման հիմնական նպատակն է՝

թողարկել ԶԻԼ—130, ԶԻԼ—131 ավտոմեքենաների առավել կատարելագործված տեսակները, առանց արտադրության ընդհատման մեծացնել ավտոմեքենաների արտադրության ծավալը, տեխնիկապես վերազինել գործարանը գիտության և տեխնիկայի նվաճումների լայն ներդրման հիման վրա։

Սովետական Միությունում առաջին անգամ այս գործարանում կիրառվել է V-աձև շարժիչների մեքենայացված հավաքումը։ Միայն այդ տեղամասում ներկայումս գործում է 43 ավտոմատ գիծ՝ գլանի բլոկներ, հանգուցավոր լիսեռի և շարժիչի այլ դետալների մշակման համար։

Գործարանում մշտապես հոգ է տարվում ձեռքի աշխատանքի մեքենայացման մասին։ Եթե 1967 թ. մեքենայացված աշխատանքով զբաղված արտադրական հիմնական բանվորների թիվը կազմում էր 78,3 տոկոս, ապա 1970 թ. այն հասավ 85,5 տոկոսի։ Արտադրության մեջ ներդրվել են հարյուրավոր միջոցառումներ, որոնց նպատակն է բանվորների աշխատանքային պայմանների բարելավումը և արտադրողականության բարձրացումը։ Դրանք հնարավորություն ընձեռեցին կրճատելու ԶԻԼ—130 ավտոմեքենայի աշխատատարությունը՝ 375 ժամից հասցնելով 228 ժամի։

Գործարանում աշխատանքի գիտական կազմակերպման (ԱԳԿ) առանձնահատկությունն այն է, որ նրանով զբաղվում է ոչ թե ինչ-որ ստորաբաժանում, բյուրո կամ լաբորատորիա, այլ այն, որ ԱԳԿ-ն համարվում է գործարանային բոլոր բաժինների գործունեության մշտական բաղադրիչ մասը։ Իսկ ԱԳԿ-ի բյուրոն, գտնվելով տեխնոլոգիական բաժնի կազմում, իրականացնում է մեթոդոլոգիական ղեկավարություն և վերահսկողություն աշխատանքի գիտական կազմակերպման պլանի կատարման նկատմամբ։

Կարևոր ուշադրություն է նվիրվում տրանսպորտա-պահեստային պրոցեսների կազմակերպմանը, որովհետև այս տեղամասում կուտակված են աշխատանքային ծախսումների իջեցման մեծ ռեզերվներ։ Վերջին չորս տարում ներգործարանային փոխադրումների մեքենայացման մակարդակն աճել է ավելի քան 80 տոկոսով։ Տրանսպորտային բանվորների միջին արտադրողականությունը բարձրացել է 43,5 տոկոսով, որը հավասար է ավելի քան 2000 մարդու աշխատանքի։ Միջօպերացիոն, միջարտադրամասային և արտաքին տրանսպորտային գործողությունների համար մշակված կոմպլեքսային միջոցառումների ներդրումը հնարավորություն է ընձեռել տրանսպորտա-պահեստային աշխատանքի արտադրողականությունն տարեկան բարձրացնել 10—12 տոկոսով։

Գործարանում մշակվել են մի շարք միջոցառումներ՝ թողարկվող գործիքների որակը բարձրացնելու համար, նախատեսվել են գործիքների հետագա մեքենայացման և վերազինման աշխատանքներ՝ նորագույն բարձրարտադրողական և գերճշգրիտ սարքավորումների բազայի վրա։

Գործարանի ինֆորմացիոն-հաշվողական մասի տեխնիկական հիմնական բազան համարվում է այստեղ ստեղծված հաշվողական կենտրոնը, որն ապահոված է արագ գործող էլեկտրոնային հաշվիչ մեքենաներով։

Ավտոգործարանցիներն ամեն եռամսյակ կատարում են նոր տեխնիկայի ներդրման պլանը։ Գործարանում սահմանված է այնպիսի կարգ, ըստ որի յուրաքանչյուր միջոցառմամբ նախատեսված աշխատանք կատարողները նախապես իմանում են պարգևատրման գումարի չափը։ Այն տրվում է կոլեկտիվին, եթե միջոցառումը իրագործվում է սահմանված ժամկետում և ծավալով։ Միայն 1968 թ. նոր տեխնիկայի ներդրման տնտեսական արդյունա-



վետությունը կազմել է 3,4 մլն ռուբլի։ Հետաքրքրական է նշել, որ առանձին միջոցառումների իրականացման համար գործարանում ստեղծվել և գործում էր 286 կոմպլեքսային բրիգադ։

Գաղտնիք չէ, որ տեխնիկական առաջադիմության հարցերի լուծման համար մեծ նշանակություն ունի կադրերի կազմը։ Ավտոգործարանցիները կարող են դրանով հպարտանալ։ Ավելի քան 18 հազար մարդ գործարանում աշխատում է 15 տարուց ավելի։ Այստեղ բեղմնավոր գործունեություն են ծավալում գիտական աստիճան ունեցող (տեխնիկական գիտությունների թեկնածու կամ դոկտոր) 41 մարդ, 4 պրոֆեսոր, 6 դոցենտ և լենինյան ու պետական մրցանակների տասնյակ դափնեկիր։ Ինժեներատեխնիկական աշխատողներից 8.900-ը կամ մոտ 64 տոկոսը դիպլոմավոր մասնագետներ են։

Գիտատեխնիկական առաջադիմության արագացմանը տոն տվողը կուսակցական կազմակերպությունն է։ Կոմունիստների տասհազարանոց ջոկատը գլխավորում է գիտատեխնիկական առաջադիմության բոլոր նախաձեռնությունները։ Կուսկոմիտեն և սկզբնական կուսկազմակերպությունները պարբերաբար քննարկում են արտադրության, տեխնիկական առաջադիմության, աշխատանքի գիտական կազմակերպման հետ կապված հրատապ հարցեր։ Ակտիվորեն են գործում նաև երիտասարդ ավտոգործարանցիները։ Կոմերիտական կազմակերպության նախաձեռնությամբ, կոմերիտական խմբերի բազայի վրա, ստեղծվել է ստեղծագործող երիտասարդության սեկցիա, որի խնդիրն է ամրապնդել երիտասարդ բանվորների, ինժեներների ու տեխնիկների համագործակցությունը։ Սեկցիայի անդամները լուծում են արտադրության կատարելագործման, տեխնիկական գիտելիքների և պրոֆեսիոնալ մակարդակի բարձրացման հետ կապված հարցերը։ Այդ ամենը նպաստում է երիտասարդության զանգվածային ընդգրկմանը տեխնիկական առաջադիմության համար մղվող պայքարին։

Ավտոգործարանցիները տեխնիկական առաջադիմության կենտրոնական խնդիրը համարում են տեխնիկական վերակառուցման երկրորդ հերթի ավարտումը և գործարանի վերածումը օրինակելի ձեռնարկության՝ իր մեքենայացման աստիճանով և արտադրական պրոցեսների ավտոմատացմամբ։ Նախատեսվում է 1972 թվականից ավտոմեքենաների արտադրությունը զգալի չափով ավելացնել։

Մոսկվայի Լիխաչովի անվան ավտոմոբիլաշինական գործարանի կոլեկտիվի՝ աշխատանքի մեքենայացման փորձը դարձել է Հայաստանի արդյունաբերական ձեռնարկությունների շատ կոլեկտիվների սեփականությունը և հնարավորություն է տվել առավել ինքնաքննադատաբար վերաբերվել աշխատանքի արտադրողականության բարձրացման միջոցառումների իրականացմանը։

Հայաստանի արդյունաբերական ձեռնարկություններն զգալի աշխատանք են կատարել տեխնիկական առաջադիմության հետագա զարգացման, արտադրության մեքենայացման ու ավտոմատացման բնագավառում։ Միայն վերջին չորս տարում հանրապետության ձեռնարկություններում գործարկվել է 526 մեքենայացված և ավտոմատացված օբյեկտ։ Այդ ժամանակամիջոցում հոսքային-մեքենայացված գծերի քանակը 203-ից հասել է 486-ի, կոմպլեքսային-մեքենայացված տեղամասերինը՝ 55-ից 208-ի, ավտոմատացված տեղամասերինը և արտադրամասերինը՝ 19-ից 64-ի։ Ավելացել է ավտոմատ և կիսաավտոմատ սարքավորումների քանակը։

Միաժամանակ հարկ է նշել, որ հանրապետության մի շարք մինիստրություններ ու գերատեսչություններ, արդյունաբերական ձեռնարկություններ անհրաժեշտ ուշադրություն չեն նվիրում այդ կարևոր հարցերին։ Ժողովրդական տնտեսության մեջ գիտահետազոտական աշխատանքի և գիտության ու տեխնիկայի նվաճումների ներդրման պլանը վերջին տարիներս չի կատարվում։ Այսպես, 1970 թ. նախատեսված էր 587 միջոցառում կամ 1969 թ. պլանավորվածից միայն 70-ով ավելի։ Սակայն տեխնիկական առաջադիմության պլանը հանրապետությունում, ամբողջությամբ վերցրած, կատարվեց 81,4 տոկոսով (1969 թ.՝ 79,7 տոկոս)։ 1970 թ. ժողովրդա-տնտեսական պլանով սահմանված էր արդյունաբերական ձեռնարկություններում և ուրիշ կազմակերպություններում իրականացնել առաջավոր տեխնոլոգիայի ներդրման, արտադրական պրոցեսների մեքենայացման ու ավտոմատացման 322 միջոցառում։ Փաստորեն իրականացվեց 255-ը։

Մի շարք ձեռնարկություններում վատ են օգտագործվում մեքենայացման միջոցները, տեխնիկայի հանդեպ նկատվում է ոչ-խնայողաբար և անտնտեսավար վերաբերմունք։ Նոր բարձրարտադրողական մեքենաները և մեխանիզմները երբեմն ամիսներով «յուրացվում» են և չեն գործարկվում։ Այդ ամենը մեծ վնաս է հասցնում ժողովրդական տնտեսությանը, արգելակում աշխատանքի արտադրողականության աճը։ Առանձին ձեռնարկություններում թերագնահատվում է մեքենայացման և ավտոմատացման դերը։ Ամբողջ շարք աշխատատար և դժվարին գործողություններ, հատկապես օժանդակ աշխատանքներում, կատարվում են ձեռքով։

Պրակտիկան համոզիչ կերպով ապացուցում է, որ սարքավորումների առավելագույն օգտագործումը, ֆոնդահատուցման աճը արտադրության արդյունավետության բարձրացման կարևոր ռեզերվներից են։ Ցավոք, այդ ռեզերվները ամեն տեղ չէ, որ արժանանում են ուշադրության։ Այսպես, 1967 թ. հունվարի 1-ի դրությամբ հանրապետությունում կար 57,8 մլն ռուբլու չտեղակայված սարքավորում, 1971 թ. սկզբին՝ 64,8 մլն ռուբլու։ Իհարկե, յուրաքանչյուրը հասկանում է, որ պատրաստի մեքենան հնարավոր չէ հաջորդ օրը գործի գցել։ Բայց դժվար է արդարացնել սառեցված, չփոխհատուցվող գումարների ավելացումը, համեմատաբար կարճ ժամանակամիջոցում դրանք 64 մլն ռուբլու հասցնելը։

Վերջին ժամանակներս մինիստրությունների ու գերատեսչությունների, արդյունաբերական ձեռնարկությունների ղեկավարներն ու կուսկազմակերպություններն իրականացրին ավելորդ սարքավորումների տեղաբաշխման ու իրացման, չտեղակայված սարքավորումների մոնտաժման արագացման, ինչպես նաև մոնտաժված սարքավորումների գործարկման մի շարք միջոցառումներ։ Չտեղակայված սարքավորումների մնացորդը 1970 թ., նախորդ տարվա համեմատությամբ, կրճատվեց 8,5 տոկոսով, այդ թվում մոնտաժվող սարքավորումները՝ 31 տոկոսով։ Ձեռնարկության համար ավելորդ սարքավորումները պակասեցին 7,1, արտասահմանյան չտեղակայված սարքավորումների մնացորդինը՝ 32,6 տոկոսով։

Արդյունաբերության բանվորների միայն կեսն է զբաղված մեքենայացված աշխատանքի ոլորտում։ Դեռևս մեծ է օժանդակ գործողություններ կատարող բանվորների տեսակարար կշիռը։ Նրանք կազմում են արդյունաբերության աշխատողների ավելի քան 50 տոկոսը։ Արտադրական պրոցեսների, մեքենայացումը (հատկապես կոմպլեքսային) մեծ մասամբ կախված է վերամբարձ տրանսպորտային և բարձման-բեռնաթափման աշխատանքների մեքենայացման հարցերի լուծումից։ Անցած տարի բարձման-բեռնաթափման աշխատանքների միայն 66,5 տոկոսն էր կատարվում մեքենաներով։



Հանրապետության ձեռնարկություններում դեռևս անհրաժեշտ ուշադրություն չի նվիրվում սարքավորումների մոդեռնացմանը, որի հետևանքով նոր սարքավորումների քանակը և դրա տնտեսական արդյունավետությունը վերջին տարիներին նվազում են։

Արդյունաբերության մեջ մեքենայացման և ավտոմատացման աստիճանի բարձրացման վրա բացասաբար է անդրադառնում արդյունաբերության մի շարք ճյուղերում անհրաժեշտ մասնագիտացման բացակայությունը։ Այդ տեսակետից բնորոշ է ձուլվածքի արդյունաբերությունը, որտեղ աշխատանքի արտադրողականությունը, առաջին հերթին, որոշվում է մեքենայացման աստիճանով։ Հայտնի է, որ աշխատանքի առավել արտադրողականության հասնում են հոսքային-զանգվածային արտադրության բարձրմեքենայացված արտադրամասերում։ Ձուլման արտադրության անբավարար կենտրոնացումը, առանց այն էլ սակավ քանակությամբ ձուլարանների առկայությունը տարբեր գործարաններում գրեթե անհնար են դարձնում հզոր, բարձրարտադրողական սարքավորումների արդյունավետ օգտագործումը և առաջավոր տեխնոլոգիայի ներդրումը։

Արտադրության մեջ նոր տեխնիկայի ներդրման տեմպերի արագացումն զգալի չափով նպաստում է աշխատանքի արտադրողականության բարձրացմանը։ Անցած հնգամյակում աշխատանքի արտադրողականության բարձրացման տեմպն աճել է 2 անգամ։ Աշխատանքի արտադրողականությունը 1970 թ., 1965 թ. համեմատությամբ բարձրացել է 30,5 տոկոսով, նախորդ հնգամյակի 15,5 տոկոսի փոխարեն։

Հանրապետության ժողովրդական տնտեսության մեջ տարեցտարի ավելանում է բարձրագույն և միջնակարգ-մասնագիտական կրթությամբ մասնագետների թիվը, որոնք ունակ են լուծելու տեխնիկական առաջադիմության հարցերը։ 1970 թ. դիպլոմավոր մասնագետների թիվը, 1966 թ. համեմատությամբ, ավելացել է 31,8 տոկոսով։ Հանրապետությունում նկատելիորեն աճել է ժողովրդական տնտեսության մեջ զբաղված ինժեներների, տեխնիկների և տնտեսագետների թիվը։ Միայն վերջին երկու տարում ինժեներների թիվն ավելացել է 16,4 տոկոսով, տեխնիկներինը՝ 17, տնտեսագետներինը՝ 10,4 տոկոսով։ Բարձր որակավորում ունեցող մասնագետների աճ է նկատվում հատկապես արդյունաբերության այնպիսի ճյուղերում, ինչպես՝ էլեկտրոնային, ռադիոտեխնիկական, էլեկտրատեխնիկական, մեքենաշինության ու մետաղամշակության, քիմիական ու նավթաքիմիական և այլն։

Իններորդ հնգամյակում ՍՄԿԿ XXIV համագումարի առաջադրած խնդիրները պահանջում են հատուկ ուշադրություն նվիրել աշխատանքի արտադրողականության բարձրացման հարցերին։ Կուսակցությունը աշխատավորներին նպատակամղում է արտադրության արդյունավետության բարձրացման լրացուցիչ ռեզերվների որոնմանը։ Էկոնոմիկայի և կուլտուրայի հետագա զարգացումը, ժողովրդի կենսամակարդակի աճը կապված են, առաջին հերթին, աշխատանքի արտադրողականության բարձրացման հետ։

Ա. Ա. ՍԱՐԳՍՅԱՆ

# ՂԵԿԱՎԱՐ ԿԱԴՐԵՐԻ ՊԱՏՐԱՍՏՈՒՄՆ ՈՒ ՏԵՂԱԲԱՇԽՈՒՄԸ

(1945—1955 թթ.)

Հայրենական մեծ պատերազմից հետո Հայաստանի կուսակցական ու սովետական ղեկավար մարմինների առջև ծառացան նոր, հրատապ խնդիրներ։ Դրանցից մեկը կադրերի պատրաստումն էր, առանց որի հնարավոր չէր լուծել հանրապետության ժողովրդական տնտեսության զարգացման մեծ ու լուրջ պրոբլեմները։

Առաջնորդվելով ՀամԿ(բ)Կ Կենտկոմի ցուցումներով ու դիրեկտիվներով, ՀԿ(բ)Կ Կենտկոմը հանրապետության տնտեսական, քաղաքական և կուլտուրական շինարարության համար պատրաստեց կուսակցական ու սովետական կադրերի մի ամբողջ բանակ, որը սխրանքներ էր գործում։

Հաջողությամբ էր շարունակվում կուսակցության՝ ղեկավար կադրերի ուսուցման նախընթաց տարիների կուրսը։ Կուսակցական կադրեր պատրաստվեցին և վերապատրաստվեցին հանրապետական կարճատև դասընթացներում, ինչպես նաև ՀամԿ(բ)Կ Կենտկոմին և ՀԿ(բ)Կ Կենտկոմին կից կուսակցական դպրոցներում։ 1940—1946 թթ. հանրապետությունում պատրաստվեցին 644 կուսակցական աշխատողներ[1]։

Տարեցտարի բարձրանում էր կուսակցական ղեկավար աշխատողների կուլտուրական և քաղաքական պատրաստականությունը։ Այսպես, եթե 1940 թ. հանրապետության կուսակցության շրջկոմների և քաղկոմների առաջին քարտուղարների 39 տոկոսն ուներ բարձրագույն կրթություն, ապա 1947 թ. սկզբին այն հասավ 62-ի։ 1940 թ. քաղկոմ-շրջկոմների առաջին քարտուղարներից քաղաքական կրթություն ուներ 18, իսկ 1947 թ.՝ 50 տոկոսը։ Համապատասխանաբար փոխվեց նաև միջնակարգ կրթություն ունեցողներինը. 45 տոկոսից իջավ 35-ի։ Բարելավվեց նաև ՀԿ(բ)Կ Կենտկոմի պատասխանատու աշխատողների կազմը։ 1940 թ. Կենտկոմի պատասխանատու աշխատողներից բարձրագույն կրթություն ուներ 35, 1947-ին՝ 70 տոկոսը, իսկ բարձրագույն քաղաքական կրթություն՝ համապատասխանաբար 10 և 27 տոկոսը[2]։ Հաջողություններն ակնառու էին նաև սովետական ապարատի պատասխանատու աշխատողների պատրաստման և վերապատրաստման բնագավառում։ Վերոհիշյալ փաստերը ցույց են տալիս, որ գնալով ավելի էր բարելավվում հանրապետության ղեկավար կադրերի որակական կազմը, բարձրանում նրանց տեսական-քաղաքական մակարդակը, կազմակերպական և գործարար հմտությունը։ Մարքս-լենինյան տեսական ժառանգության ուսումնասիրումն ու յուրացումը ղեկավար կադրերի կողմից ամենահուսալի երաշխիքն են պրակտիկ խնդիրների հաջող և ճիշտ լուծման համար։

[1] Տե՛ս ՄԼԻ հայկական ֆիլիալի արխիվ, ֆ. 1, ց. 36, գ. 5, թ. 7։

[2] Տե՛ս նույն տեղը։



Վերը ասվածից, սակայն, չի կարելի եզրակացնել, թե կադրերի պատրաստման, ընտրության ու տեղաբաշխման ասպարեզում ամեն ինչ կարգին էր։ Փաստերը ցույց են տալիս, որ հանրապետության կուսակցական որոշ կազմակերպություններ ու պատասխանատու աշխատողներ շարունակում էին գործել հին մեթոդներով ու ձևերով։ Նրանք մոռանում էին, որ նոր իրադրության պայմաններում հրամայաբար պահանջվում էր բարձրացնել կուսակցական-գաղափարական ու դաստիարակչական աշխատանքի մակարդակը։ Լուրջ թերություններ կային կադրերի ընտրության ու տեղաբաշխման, նրանց տեսական և գաղափարական մակարդակի բարձրացման գործում։ Ուսումնական պլանների ծանրաբեռնվածության հետևանքով կուսակցական դպրոցներում ու դասընթացներում սովորողները ժամանակ չէին ունենում ինչպես հարկն է ինքնուրույն ուսումնասիրելու մարքսիստական-լենինյան տեսությունը։ Ունկնդիրներն ունեին կրթական և պրակտիկ փորձի տարբեր մակարդակ և այդ ամենի հետևանքով դպրոցներն ու դասընթացներն ավարտած կադրերի զգալի մասը չուներ բավարար պատրաստություն՝ կուսակցական և սովետական կազմակերպություններում ղեկավար աշխատանք վարելու համար։ Անբավարար էր կազմակերպված ղեկավար կադրերի վերապատրաստման գործը, իսկ նրանք դադարել էին իրենց գաղափարական-տեսական մակարդակի բարձրացման վրա սիստեմատիկ աշխատելուց։ Կադրերի պատրաստման, ընտրության և տեղաբաշխման մարզում գոյություն ունեցող այդ թերությունների վերացումը հույժ անհրաժեշտ էր։

Մյուս կողմից՝ հետպատերազմյան ժամանակաշրջանում տնտեսական, քաղաքական և կուլտուրական շինարարության խոշոր խնդիրների լուծման համար հարկավոր էին կազմակերպչական հմտություն և տեսական պատրաստականություն ունեցող կուսակցական և սովետական ղեկավար աշխատողներ։ Ելնելով այդ խնդրի կարևորությունից՝ ՀամԿ(բ)Կ Կենտկոմն ուսումնասիրեց Հայաստանի կուսկազմակերպություններում ղեկավար կուսակցական կադրերի ընտրության, առաջքաշման և օգտագործման վիճակը։ Ուսումնասիրությունները ցույց տվին, որ այդ բնագավառում գոյություն ունեն լուրջ սխալներ ու թերություններ։ ՀամԿ(բ)Կ Կենտկոմը, 1947 թ. օգոստոսի 27-ին, լսելով ՀԿ(բ)Կ Կենտկոմի հաշվետվությունը «Հայաստանի կուսակցական կազմակերպություններում կուսակցական ղեկավար կադրերի ընտրության, առաջքաշման և օգտագործման վիճակի մասին», գործնական որոշում ընդունեց[1]։

ՀամԿ(բ)Կ Կենտկոմը մատնանշեց, որ Հայաստանի կոմկուսի Կենտկոմն անբավարար էր հաշվի առել այն փոփոխությունները, որոնք տեղի էին ունեցել հանրապետության տնտեսության, կուլտուրայի և գիտության ասպարեզներում։ Անհամեմատ աճել էր մտավորականության տեսական-քաղաքական մակարդակը։ Նրանց զգալի մասը կրթություն էր ստացել Մոսկվայում, Լենինգրադում, աշխատել Միության մայրաքաղաքում և այլ քաղաքներում։ Նրանց վերադարձը Հայաստան նմանապես զգալի չափով նպաստեց հանրապետության մտավորականության քաղաքական մակարդակի բարձրացմանը։ Այս ամենը հրամայաբար պահանջում էր ՀԿ(բ)Կ Կենտկոմից և կուսկազմակերպություններից՝ հաշվի առնել այդ փոփոխությունները և համապատասխանորեն կոմպլեկտավորել կուսակցական և սովետական ղեկավար մարմինները։

Կենտկոմի մի քանի բաժիններ, կուսակցության Լենինականի քաղկոմը, Կիրովականի, ինչպես նաև Դիլիջանի, Ղարաբաղլարի և այլ շրջկոմներ գլխավորում էին թույլ, պատշաճ փորձ ու տեսական պատրաստականություն չունեցող աշխատողներ[2]։ Ահա թե ինչու ՀամԿ(բ)Կ Կենտկոմի որոշման մեջ նշվեց, որ ՀԿ(բ)Կ Կենտկոմը միջոցներ չի ձեռնարկում կուսակցական ապարատը պատրաստված և քաղաքականապես գրագետ կադրերով համալրելու հա-

[1] Տե՛ս նույն տեղը։

[2] Տե՛ս նույն տեղը, գ. 8, թ. 11։

մար, քիչ է ղեկավար աշխատանքի առաջ քաշում ունակ, առաջավոր, կրթված և մարքսիստորեն պատրաստված մտավորականություններ[1]։

Կուսակցական և սովետական ղեկավար աշխատողների տեսական-քաղաքական մակարդակի բարձրացմանը նպաստում է նաև ռուսերենի իմացությունը։ Մինչդեռ, հանրապետության ղեկավար կադրերի զգալի մասը վատ էր տիրապետում ռուսաց լեզվին։ Ահա թե ինչու ՀամԿ(բ)Կ Կենտկոմն իր որոշման մեջ մատնանշեց, որ ՀԿ(բ)Կ Կենտկոմն անբավարար է կատարում ՀամԿ(բ)Կ Կենտկոմի ցուցումն այդ առթիվ[2]։

ՀամԿ(բ)Կ Կենտկոմը հանձնարարեց Հայաստանի Կ(բ)Կ Կենտկոմին մշակել ու կիրառել կուսակցական և սովետական մարմինների կադրերի հետ տարվող աշխատանքն արմատապես բարելավելու, բացահայտված սխալներն ու թերությունները վերացնելու համապատասխան միջոցառումներ։

1947 թ. սեպտեմբերի 16-ին Հայաստանի Կ(բ)Կ Կենտկոմի պլենումը քննարկեց ՀամԿ(բ)Կ Կենտկոմի 1947 թ. օգոստոսի 27-ի որոշումը և հավանություն տվեց դրան։ Պլենումը բացահայտեց Հայաստանի կոմկուսակցության Կենտկոմի և քաղկոմ-շրջկոմների գործունեության լուրջ սխալներն ու վրիպումները և դատապարտեց ղեկավար, մասնավորապես տնտեսական աշխատողների մոտ դրսևորված մանրբուրժուական երևույթները։ Սեպտեմբերյան պլենումը գործնական որոշում ընդունեց՝ ՀամԿ(բ)Կ Կենտկոմի ցուցումները հետևողականորեն կենսագործելու համար։ Կուսակցության Կենտկոմի որոշումը և նրա իրագործման համար Հայաստանի Կ(բ)Կ Կենտկոմի մշակած միջոցառումները հանգամանորեն քննարկվեցին հանրապետության կուսակցական քաղկոմների և շրջկոմների պլենումներում, ակտիվի և սկզբնական կուսկազմակերպությունների ժողովներում։ Հարցի նման մասսայական քննարկումը հնարավորություն ընձեռեց բացահայտելու և վերացնելու հանրապետության կուսակցական և սովետական մարմիններում տեղ գտած թերություններն ու սխալները։ ՀամԿ(բ)Կ Կենտկոմի որոշումը մարտական ծրագիր դարձավ Հայաստանի կուսակցական կազմակերպությունների համար, բարձրացավ նրանց դերը տնտեսական ու կուլտուրական շինարարության ղեկավարման և մասսաների քաղաքական դաստիարակության գործում։

Հայաստանի Կ(բ)Կ Կենտկոմը, առաջին հերթին, շրջկոմ-քաղկոմները և Կենտկոմի բաժիններն ապահովեց քաղաքականապես պատրաստված և աշխատանքի անհրաժեշտ փորձ ունեցող կադրերով։ 1947 թ. օգոստոս-սեպտեմբեր ամիսներին հանրապետությունում տեղի ունեցած կուսակցական կոնֆերանսներում նորացվեց և ամրապնդվեց Լենինականի քաղկոմի, Դիլիջանի, Կիրովականի, Ղարաբաղլարի, Աշտարակի, Արտաշատի և այլ շրջկոմների ղեկավարությունը։ Հանրապետության 44 քաղկոմ-շրջկոմներից 22-ում ընտրվեցին քաղաքականապես պատրաստված առաջին քարտուղարներ[3]։ ՀամԿ(բ)Կ Կենտկոմի որոշումը կենսագործելու նպատակով ՀԿ(բ)Կ Կենտկոմի բյուրոն կուսակցական 12 ղեկավար աշխատողների գործուղեց ՀամԿ(բ)Կ Կենտկոմին կից բարձրագույն կուսակցական դպրոց և հասարակական գիտությունների ակադեմիա։ Այդ ուսումնական հաստատությունները հետագայում էլ կուսակցական և սովետական ղեկավար կադրեր էին պատրաստում հանրապետության համար։ 1948—1952 թթ. ՀամԿ(բ)Կ Կենտկոմին կից բարձրագույն կուսակցական դպրոցը և հասարակական գիտությունների ակադեմիան ավարտեցին հանրապետության 76 ղեկավար աշխատողներ։ Պատասխանատու շատ կադրեր սովորում էին ՀամԿ(բ)Կ Կենտկոմին կից բարձ-

[1] Տե՛ս նույն տեղը, գ. 5, թ. 10։

[2] Տե՛ս նույն տեղը, թ. 15։

[3] Տե՛ս ՄԼԻ հայկական ֆիլիալի արխիվ, ֆ. 1, ց. 36, գ. 5, թ. 16։



րագույն կուսակցական դպրոցի հեռակա բաժնում։ 1949—1951 թթ. նրանց թիվը հասավ 144 մարդու[1]։

Վերոհիշյալ փաստերը վկայությունն են այն հոգատարության, որ ցուցաբերում էր ՀամԿ(բ)Կ Կենտրոնական կոմիտեն մեր հանրապետության կուսակցական և սովետական ղեկավար կադրերի պատրաստման, նրանց տեսական ու քաղաքական մակարդակի անշեղ բարձրացման, նրանց կողմից տնտեսական և կուլտուրական շինարարության զարգացման օրինաչափությունների ճանաչման, կուսակցական ղեկավարման ձևերի ու մեթոդների կատարելագործման, աշխատավորական մասսաներին կոմունիստական ոգով դաստիարակելու նկատմամբ։

Հայաստանի կուսակցական կադրերի պատրաստման համար ստեղծվեցին նաև այլ հնարավորություններ։ Նրանք սովորում էին ՀԿ(բ)Կ Կենտկոմին կից երկամյա և Ադրբեջանի Կ(բ)Կ Կենտկոմին կից հանրապետական կուսակցական դպրոցներում։ 1947 թ. իրենց տեսական մակարդակը բարձրացնելու նպատակով 100 կուսակցական, սովետական ղեկավար աշխատողներ գործուղվեցին այդ ուսումնական հաստատությունները։ Հատկանշական է, որ 1948—1952 թթ. միայն Հայաստանի Կ(բ)Կ Կենտկոմին կից երկամյա կուսակցական դպրոցն ավարտեցին մոտ 663 կուսակցական, սովետական և կոմերիտական աշխատողներ[2]։ Այդ ուսումնական հաստատությունները դարձան մեր հանրապետության կուսակցական, սովետական և կոմերիտական ղեկավար կադրերի պատրաստման, նրանց տեսական-քաղաքական պատրաստականության բարձրացման հիանալի դարբնոց։ Այստեղ կենտրոնացված էին Հայաստանի տեսականորեն զինված և մանկավարժական փորձ ունեցող պրոֆեսոր-դասախոսական կադրեր։ 1947 թ. ՀԿ(բ)Կ Կենտկոմին կից բացվեցին նաև իննամսյա դասընթացներ, որտեղ սովորում էին շրջանային 75 ղեկավար աշխատողներ[3], 150 մարդ ևս սովորում էր արդյունաբերական ձեռնարկությունների և կոլտնտեսությունների խոշոր սկզբնական կուսկազմակերպությունների քարտուղարների՝ տեսական-քաղաքական պատրաստականության բարձրացման նպատակով Երևանում կազմակերպված միամյա դասընթացներում[4]։

ՀԿ(բ)Կ Կենտկոմի սեպտեմբերյան պլենումը որոշեց 1947 թվականից ըսկըսած մինչև գարնանային աշխատանքները, Կենտկոմում պարբերաբար հրավիրել սեմինար պարապմունք քաղկոմ-շրջկոմների առաջին քարտուղարների համար։ Երևանում և Լենինականում կազմակերպվեցին մարքսիզմ-լենինիզմի երեկոյան համալսարաններ, որտեղ սովորում էին հանրապետության կուսակցական-սովետական ակտիվի և մտավորականության ներկայացուցիչներ (մոտ 2600 մարդ)[5]։ 1952 թ. վերջին նրանց թիվը հասավ 2000-ի[6]։

ՀամԿ(բ)Կ Կենտկոմի որոշման համապատասխան ՀԿ(բ)Կ Կենտկոմի պլենումը պարտավորեցրեց կուսակցության շրջկոմներին, քաղկոմներին և ՀԿ(բ)Կ Կենտկոմի բյուրոյին՝ կազմակերպել կուսակցության ակտիվի և, առաջին հերթին, ղեկավար աշխատողների կողմից ռուսաց լեզուն ուսումնասիրելու գործը։ Որոշվեց կուսակցության քաղկոմներին և շրջկոմներին կից կազմակերպել ռուսաց լեզվի ուսումնասիրման դպրոցներ և խմբակներ[7]։ Հետագայում նման խմբակներ ստեղծվեցին նաև մի քանի սկզբնական կուս-

[1] Փաստերը վերցված են Հայաստանի Կ(բ)Կ XIV, XV, XVI համագումարներում ՀԿ(բ)Կ Կենտրոնական կոմիտեի հաշվետու զեկուցումներից (տե՛ս համապատասխան էջերը՝ 103, 95, 82)։

[2] Տե՛ս նույն տեղը։

[3] Տե՛ս ՄԼԻ հայկական ֆիլիալի արխիվ, ֆ. 1, ց. 36, գ. 5, թ. 16։

[4] Տե՛ս նույն տեղը, գ. 8, թ. 13։

[5] Տե՛ս հաշվետու զեկուցում Հայաստանի Կ(բ)Կ XIV համագումարում ՀԿ(բ)Կ Կենտրոնական կոմիտեի աշխատանքի մասին, Երևան, 1948 թ. էջ 104։

[6] Տե՛ս հաշվետու զեկուցում ՀԿ(բ)Կ XVI համագումարում ՀԿ(բ)Կ Կենտկոմի աշխատանքի մասին, Երևան, 1952 թ., էջ 75։

[7] Տե՛ս ՄԼԻ հայկական ֆիլիալի արխիվ, ֆ. 1, ց. 36, գ. 8, թ. 14։

կազմակերպություններում։ 1948 թ. վերջին հանրապետությունում արդեն գործում էին ռուսաց լեզվի ուսումնասիրման 389 դպրոց ու խմբակ, որտեղ ընդգրկված էր կուսակցական, սովետական, կոմերիտական և տնտեսական ակտիվի 4.080 ներկայացուցիչ։ Այդ ամենը մեծապես նպաստեց ղեկավար կադրերի կողմից ռուսաց լեզվի տիրապետմանը։

Հանրապետությունում կուսակցական և սովետական ղեկավար կադրերի ընտրության, առաջքաշման և օգտագործման բնագավառում գոյություն ունեցող լուրջ թերությունները վերացնելու նպատակով՝ Հայաստանի կոմկուսակցության Կենտկոմի և նրա բյուրոյի մշակած միջոցառումները տվեցին դրական արդյունք։ Դրանց իրականացմամբ զգալի չափով բարելավվեց հանրապետության կուսակցական, սովետական և կոմերիտական ղեկավար կադրերի գաղափարական-քաղաքական դաստիարակության գործը, ղեկավար աշխատանքի առաջ քաշվեցին կրթված ու տեսականորեն պատրաստված, կոմունիստական շինարարության պրակտիկ փորձ ունեցող շատ կոմունիստներ։ Նորացվեց կուսակցության քաղկոմների ու շրջկոմների քարտուղարների, ագիտպրոպբաժինների, ինչպես նաև կուսակցական ապարատի կազմը։ 1951 թ. մարտի 1-ի տվյալներով, հանրապետության կուսակցական ապարատի պատասխանատու աշխատողների 83 տոկոսն ուներ բարձրագույն և թերի բարձրագույն կրթություն[1]։ Կուսակցական կադրերի կազմի նման բարելավումն զգալիորեն նպաստեց հանրապետության կուսկազմակերպությունների կազմակերպական-քաղաքական գործունեության աշխուժացմանը։

Սակայն, հարկ է նկատել, որ հիմնովին չէին վերացվել կադրերի պատրաստման, նրանց ընտրության, տեղաբաշխման ու դաստիարակության գործում տեղ գտած թերությունները։ Կոմունիստական շինարարությունը կուսկազմակերպություններից հրամայաբար պահանջում էր իրենց ուշադրության կենտրոնում պահել կադրերի պատրաստման ու ընտրության խնդիրը։

Կադրերի պատրաստման, առաջքաշման գործում Վ. Ի. Լենինը բարձր էր գնահատում ժողովրդի ծոցից դուրս եկած իսկական կազմակերպիչներին, «...զգաստ խելք և գործնական ըմբռնողություն ունեցող մարդկանց, այնպիսի մարդկանց, որոնք սոցիալիզմին նվիրված լինելը միացնում են սովետական կազմակերպության շրջանակներում մեծ թվով մարդկանց ամրակուռ և համերաշխ, համատեղ աշխատանքն առանց աղմուկի (և հակառակ իրարանցման ու աղմուկի) կարգավորելու հետ» (Երկեր, հատ. 27, էջ 314)։ Վ. Ի. Լենինը խորհուրդ էր տալիս կուսակցությանը. «Միայն այդպիսի մարդկանց, տասնապատիկ փորձելուց հետո, պետք է նրանց՝ ամենահասարակ խնդիրներից դեպի դժվարագույնները շարժելով, առաջ քաշել ժողովրդական աշխատանքի ղեկավարների, կառավարման ղեկավարների պատասխանատու պոստերը» (Նույն տեղը, էջ 314—315)։

Ղեկավար կադրերի պատրաստման և առաջքաշման հետպատերազմյան առաջին տասը տարիների պատմության ուսումնասիրությունը ցույց է տալիս, որ մեր հանրապետության որոշ կուսկազմակերպություններում դեռևս խախտվում էին լենինյան վերոհիշյալ դրույթներն ու ցուցումները։ Փաստերը ցույց են տալիս, որ որոշ դեպքերում աշխատողների նշանակման գործում առկա էր սուբյեկտիվ վերաբերմունքը։

1946 թ. հուլիսի 9-ին ՀԿ(բ)Կ Կենտկոմի բյուրոն քննարկեց կուսակցական, սովետական և կոլտնտեսային ղեկավար կադրերի ընտրության ու տեղաբաշխման հարցը կուսակցության Կրասնոսելսկի շրջանում[2]։ Կենտկոմի բյուրոն լուրջ թերություններ բացահայտեց Կրասնոսելսկի շրջկոմի գործունեության մեջ։ Շրջկոմը չէր բարելավել կոլտնտեսային ղեկավար կադրերի

1 Տե՛ս ՄԼԻ հայկական ֆիլիալի արխիվ, ֆ. 1, ց. 84, գ. 23, թ. 256։

2 Տե՛ս ՄԼԻ հայկական ֆիլիալի արխիվ, ֆ. 1, ց. 35, գ. 31, թթ. 85—87։



կազմը, նրանց առաջքաշման ժամանակ միշտ չէ, որ հաշվի էր առել քաղաքական և գործնական հատկանիշները[1]։

ՀԿ(բ)Կ Կենտկոմի բյուրոն 1947 թ. հուլիսի 6-ին քննարկեց կուսակցության Արտաշատի շրջկոմի առաջին քարտուղար Հ. Մարտիրոսյանի հարցը, որը կոպիտ կերպով խախտել էր գյուղատնտեսական արտելի կանոնադրությունը և նրան հեռացրեց աշխատանքից։

1949 թ. հունիսին ՀԿ(բ)Կ Կենտկոմի բյուրոն քննարկեց Ազիզբեկովի շրջանում կադրերի ընտրության, տեղաբաշխման և դաստիարակության հարցը։ Պարզվեց, որ ՀԿ(բ)Կ Ազիզբեկովի շրջկոմը կուսակցական, սովետական և կոլտնտեսային ղեկավար աշխատողների ընտրության ու տեղաբաշխման ժամանակ հանգամանորեն չի ուսումնասիրում նրանց գործարար ու քաղաքական հատկանիշները, որի հետևանքով ոմանք չեն կատարում իրենց պարտականությունները, ոմանք էլ թույլ են տալիս կուսակցական և պետական կարգապահության լուրջ խախտումներ։

ՀԿ(բ)Կ Կենտկոմի բյուրոն անդրադարձավ այս հարցին և ընդունեց համապատասխան որոշում։

ՀԿ(բ)Կ Կենտկոմի VII պլենումը, որը տեղի ունեցավ 1950 թ. հոկտեմբերի 30-ին, քննարկելով «Կուսակցական կազմակերպությունների կուսակցական-քաղաքական աշխատանքների ուժեղացման միջոցառումների մասին» հարցը, նշեց, որ կուսակցության որոշ շրջկոմներ (Ապարանի, Վեդու, Բասարգեչարի, Ալավերդու, Թալինի և այլն) թուլացրել են իրենց ուշադրությունը կուսակցական-քաղաքական գործունեության նկատմամբ, պրակտիկ աշխատանքում անտեսել են կադրերի ընտրության և դաստիարակության, կատարման վերահսկողության, քննադատության և ինքնաքննադատության զարգացման, կուսակցական ակտիվի լենինյան դաստիարակության, մասսաների շրջանում քաղաքական աշխատանքի ծավալման հարցերը[2]։ Պլենումն ընդգծեց, որ կուսակցության շատ շրջկոմներ իրենց պրակտիկ աշխատանքում դեռևս կուսակցական-քաղաքական գործունեությունը ճիշտ չեն զուգակցել տնտեսականի հետ, չեն հրաժարվել մանր տնտեսական և պրակտիկ խնդիրներում տնտեսական մարմիններին փոխարինելու սովորությունից, իրենք են լուծում տնտեսական և վարչական մանր գործերը։ Նրանք անտեսել են արդյունաբերության և գյուղատնտեսության զարգացման հեռանկարային հարցերը և միջոցներ չեն ձեռնարկել դրանց լուծման համար։

ՀԿ(բ)Կ Կենտկոմի պլենումը քննադատեց Մեղրու, Սպիտակի, Բասարգեչարի, Ախտայի շրջկոմներին, անտառային արդյունաբերության, առևտրի և այլ մինիստրություններին՝ կադրերի ընտրության, դաստիարակության և տեղաբաշխման նկատմամբ անթույլատրելի վերաբերմունք ցուցաբերելու համար։ Նրանք կադրերի ընտրության ժամանակ հաճախ հաշվի չէին առնում մարդկանց գործնական և քաղաքական ունակությունները, անտեսում էին կուսակցական, սովետական և տնտեսական ղեկավար կադրերի պլանաչափ պատրաստման և աճի կարևորությունը[3]։

ՀԿ(բ)Կ Կենտկոմի պլենումը հանրապետության կուսկազմակերպությունների առջև խնդիր դրեց՝ մշտապես ուշադրության կենտրոնում պահել կադրերի ընտրության, տեղաբաշխման ու դաստիարակության հարցերը[4]։

Հայաստանի Կ(բ)Կ XVI համագումարում (1952 թ.) խոսվեց նաև ղեկավար կադրերի պատրաստման ու վերապատրաստման, նրանց տեղաբաշխման ու դաստիարակության մասին։ Նշվեցին այդ ասպարեզում ձեռք բերված նվաճումները, բացահայտվեցին բազմաթիվ թերություններ։

1 Տե՛ս նույն տեղը, թ. 85։

2 Տե՛ս ՄԼԻ հայկական ֆիլիալի արխիվ, ֆ. 1, ց. 7, գ. 19, թ. 25։

3 Տե՛ս նույն տեղը։

4 Տե՛ս նույն տեղը, թ. 28։

ՀԿ(բ)Կ Կենտկոմի և նրա բյուրոյի թույլ վերահսկողության պատճառով հանրապետության մի շարք կուսկազմակերպություններ, շրջանցելով ՀամԿ(բ)Կ Կենտկոմի ցուցումը, ղեկավար պոստում առաջ էին քաշում նախկին աշխատանքում տապալված մարդկանց: Այսպես, Մեղրու, Ղուկասյանի, Արթիկի և Բասարգեչարի կուսշրջկոմները խախտում էին կադրերի ընտրության ու տեղաբաշխման լենինյան սկզբունքները:

Կադրերի ընտրության ու տեղաբաշխման գործում լուրջ սխալներ էր թույլ տվել հատկապես Լենինականի կուսակցական կազմակերպությունը: Քաղկոմի պլենումը 1952 թ. հունվարի 31-ին քննարկեց առաջին քարտուղար Կ. Բարսեղյանի և քաղսովետի գործադիր կոմիտեի նախագահ Ս. Վարդանյանի հարցը և նրանց ազատեց աշխատանքից[1]:

Հայաստանի Կ(բ)Կ Կենտկոմը և նրա բյուրոն, ելնելով կուսակցական ու պետական կարգապահության խախտումների դեմ պայքարն ուժեղացնելու անհրաժեշտության մասին կուսակցության ցուցումներից, պատասխանատվության ենթարկեց մի շարք ղեկավար աշխատողների:

Պրակտիկան ցույց է տվել, որ աշխատողի գործնական որակը անհատելիս կարևոր է հաշվի առնել ո՛չ միայն նրա գիտելիքներն ու կազմակերպական ունակությունը, այլև նախաձեռնություն ցուցաբերելու, հարցերը ինքնուրույն լուծելու ունակությունը: Ղեկավարի համար կարևոր են նաև պահանջկոտությունն իր և ենթակաների նկատմամբ:

Կյանքը համոզիչ ցույց է տվել, որ կադրերը ձևավորվում են ո՛չ միայն դպրոցում, այլ նախ՝ կյանքի խառնարանում, պայքարի բովում: Կրթությունը— դա միայն այն անհրաժեշտ պայմանն է, որպեսզի աշխատողը կառողանա դառնալ լիարժեք: Վ. Ի. Լենինն ասում էր, «...հասունությունը վկայագրվում է ո՛չ թե գրանցումով կամ վկայաթղթով, այլ նա հաստատվում է փորձով, պրակտիկայով» (Երկեր, հատ. 30, էջ 585):

Կադրերի հետ տարվող աշխատանքը մեր եռսակցության առջև ծառացած կարևորագույն հարցերից է: Ահա թե ինչու ՀԿ(բ)Կ Կենտկոմը պարբերաբար անդրադառնում է այդ հարցերին, դրանց լուծումը համարում որպես կենսական անհրաժեշտություն:

---

1 ՏԿ՛ս ՄԼԻ հայկական ֆիլիալի արխիվ, ֆ. 46, ց. 11, գ. 262, թ. 5:

---

# ԷԿՈՆՈՄԻԿԱՅԻ ՀԱՐՑԵՐ

## ՄԵՐ ՔԱՂԱՔՆԵՐԻ ԶԱՐԳԱՑՄԱՆ ՊՐՈԲԼԵՄՆԵՐԸ

(Հայկական ՍՍՀ քաղաքների ուսումնասիրության փորձից)

ՍՍՀՄ ժողովրդական տնտեսության զարգացման 1971—1975 թվականների պլանը լենինյան ազգային քաղաքականության հետևողական իրագործման կարևորագույն փուլ է: Այստեղ շեշտված է առանձին ազգային հանրապետությունների և շրջանների սոցիալ-տնտեսական զարգացման մակարդակի առավելագույն մոտեցումը: Խնդիր է դրված բարձրացնել միութենական հանրապետությունների պետական մարմինների և տեղական սովետների դերը արտադրաուժերի տեղաբաշխման հարցերը լուծելիս:

ՍՄԿԿ XXIV համագումարի՝ նոր հնգամյակի դիրեկտիվներում ասված է. «Անշեղորեն իրականացնել խոշոր քաղաքների աճը զսպելու կուրս, որպես կանոն, դադարեցնել արդյունաբերական նոր ձեռնարկությունների տեղաբաշխումն այդ քաղաքներում, բացի բնակչության ու քաղաքային տնտեսության սպասարկման հետ կապված օբյեկտներից:

Փոքր քաղաքներում և բանավաններում տեղաբաշխել խոշոր քաղաքներում գտնվող գործարանների ու ֆաբրիկաների ոչ մեծ մասնագիտացված ձեռնարկություններ ու մասնաճյուղեր: Արդյունաբերական կենտրոններում արտադրությունները տեղաբաշխելիս հաշվի առնել տղամարդկանց ու կանանց աշխատանքի ռացիոնալ օգտագործումը»:

ՍՄԿԿ XXIV համագումարի որոշումները մեր երկրի հետագա զարգացման և վերելքի ուղենիշներն են: Այդ որոշումների իրականացման հիմքը 1971—1975 թթ. արտադրաուժերի զարգացման և տեղաբաշխման գլխավոր սխեման է, որի պրոբլեմների լուծումներով են զբաղված մոտ 500 պլանավորող, գիտահետազոտական նախագծային հաստատություններ, մինիստրություններ և գերատեսչություններ:

Գլխավոր սխեմայի մշակման աշխատանքները խմբավորվում են երկու, միմյանց հետ սերտ կապված և մեկ միասնություն կազմող օղակներում:

1. Պրոբլեմներ և դրանց գիտական մշակումներ, որոնք վերաբերում են երկրի արտադրաուժերի զարգացման և տեղաբաշխման ընդհանուր համամիութենական գլխավոր սխեմային: Դրա հիմնական բաժանմունքները և տեխնիկա-տնտեսական ցուցանիշները դիֆերենցված են միայն ընդհանուր ձևով՝ ըստ խոշոր տնտեսական շրջանների և միութենական հանրապետու-

թյունների։ Այդ մշակումները կատարում են միութենական պլանային կազմակերպությունները, որպես կանոն, հիմք ընդունելով հանրապետությունների մշակած գլխավոր սխեմաները։

2. Պրոբլեմներ և դրանց մշակումներ, որոնք վերաբերում են հանրապետական արտադրաուժերի զարգացման և տեղաբաշխման գլխավոր սխեմային։ Այդ պրոբլեմների լուծումները պետք է ապահովեն առանձին հանրապետությունների համաչափ արտադրության աճը և արդյունավետությունը, ելնելով տեղական պայմաններից և միութենական գլխավոր սխեմայի առաջադրանքներից։ Այս խմբին պատկանող պրոբլեմների հետազոտումը խիստ կարևոր է արտադրաուժերի զարգացման և տեղաբաշխման վրա ազդող գործոնների քանակական բնութագրերը որոշելիս, ըստ հանրապետության ինտեգրալ տերիտորիալ ստորաբաժանումների (քաղաքներ, վարչական, տնտեսական շրջաններ)։ Երկրի ժողովրդական տնտեսության մեջ առաջնակարգ դեր են խաղում քաղաքային ավանները, դրանց համակարգությունները։ Դրանք այն հիմնական տերիտորիալ ստորաբաժանումներն են, որտեղ տեղաբաշխվում են նոր արտադրություններ և կատարելագործվում արդյունաբերության ու ժողովրդական տնտեսության այլ ճյուղերի կառուցվածքը։

Արդյունաբերության տեղաբաշխման հիմնական սկզբունքներն են՝ հասարակական աշխատանքի տնտեսումը, արտադրության ճյուղերի և ծառայությունների ոլորտի համամասնությունների ճիշտ զուգակցումը, քաղաքների և շրջանների կոմպլեքսային զարգացումը, դրանց տնտեսական մասնագիտացումը, քաղաքների և գյուղերի սոցիալ-տնտեսական զարգացման մակարդակի տարբերությունների վերացումը։

Սովետական Միությունում արտադրաուժերի զարգացման և տեղաբաշխման գլխավոր սխեմաների գիտական մշակումների հիման վրա լուծում են մի շարք կարևոր պրոբլեմներ։ Ի՞նչ պրոբլեմներ են ուսումնասիրվել և ինչպե՞ս են դրանք լուծվել Հայկական ՍՍՀ ներհանրապետական սխեման մշակելիս։ Նախ՝ հետազոտվել են այն գործոնները, որոնք բնութագրում են քաղաքների զարգացման հնարավորությունը։ Հայտնաբերված են դրանց քանակական ցուցանիշները՝ կախված տեղական պայմաններից և արդյունաբերության ճյուղերի կամ նրա առանձին արտադրանքների տեխնոլոգիական պրոցեսների առանձնահատկություններից։ Դրանց նշանակությունը մեծ է։ Այսպես, վերլուծելով 1 միավոր արտադրանքի ծախսերի կառուցվածքը, կարելի է հայտնաբերել, թե այդ ծախսերում ո՞րն ունի ամենամեծ տեսակարար կշիռը։

Այդպիսի հետազոտությունները, բացի տեսական նշանակությունից, ունեն նաև գործնական, կիրառական բնույթ։ Տեղաբաշխման կարևոր «կողմնորոշիչներից» են՝ բնակչության թիվը, նրանց տարիքը և սեռը, աշխատանքային ռեսուրսները, արտադրանքի աշխատատարությունը, նյութերի, էներգիայի, ջրի պահանջը, տրանսպորտի ծախսերի մեծությունը և արդյունաբերության աշխատանքի ու զարգացման վիճակի մի շարք ցուցանիշներ ըստ առանձին քաղաքների և շրջանների (համախառն արտադրանքի ծավալը, հիմնական ֆոնդերի հատույցը, ֆոնդազինվածությունը և այլն)։ Պետք է նշել, որ քաղաքային վիճակագրությունն այդ հարցերին չի պատասխանում և համապատասխան տեղեկություններ ստանալու համար անհրաժեշտ է տեղերում մեծ ծավալով հետազոտություններ կատարել։ Մեծ քաղաքների զարգացման սահմանափակման և փոքր ու միջին քաղաքների առավել զարգացման սկզբունքները հիմնավորելու նպատակով, Հայկական ՍՍՀ պետպլանի տնտեսագիտության և պլանավորման ինստիտուտում կատարվեցին ուսումնասիրություններ



արդյունաբերության արդյունավետությունն ըստ տարբեր մեծության քաղաքների որոշելու համար։

Ուսումնասիրությունները պարզեցին, որ ընդհանուր առմամբ, Հայկական ՍՍՀ փոքր քաղաքներում համախառն արտադրանքի և ֆոնդահատույցի ցուցանիշներն ավելի ցածր են, իսկ ֆոնդազինվածությունն առավել բարձր է, քան խոշոր քաղաքների դասին պատկանող Երևանում։ Սակայն ըստ առանձին փոքր քաղաքների, այդ ցուցանիշներն ավելի արդյունավետ են, քան Երևանինը (Էջմիածին, Գորիս, Աշտարակ)։

Քաղաքների բնակչության միջին տարեկան թվի, հիմնական ֆոնդահատույցի, ֆոնդազինվածության և ֆունկցիոնալ զարգացման ցուցանիշները *(1966 թ. տվյալներով)*

| Քաղաքներ | բնակչության թիվը (հազ. մարդ) | ֆոնդահատույց (ռուբլին-ով) | բանվորի ֆոնդազինվածությունը (ռուբլին-ով) | ֆունկցիոնալ զարգացման ցուցանիշները |
|---|---|---|---|---|
| Երևան | 648 | 2 | 4,45 | Բազմաֆունկցիոնալ զարգացում |
| Լենինական | 129,6 | 2,74 | 2,12 | Առավել զարգացած մշակող արդյունաբերություն |
| Կիրովական | 78,6 | 1,34 | 6,6 | Համեմատաբար զարգացած մշակող արդյունաբերություն |
| Էջմիածին | 25,5 | 2,20 | 4,45 | Թույլ զարգացած մշակող արդյունաբերություն |
| Ղափան | 25,2 | 0,36 | 11,6 | Առավել զարգացած արդյունահանող արդյունաբերություն |
| Կամո | 14,7 | 4,15 | 1,14 | Միջին զարգացած մշակող արդյունաբերություն |
| Դիլիջան | 14,6 | 1,82 | 2,68 | Միջին զարգացած մշակող արդյունաբերություն |
| Քաջարան | 14,3 | 0,79 | 13,90 | Առավել զարգացած արդյունահանող արդյունաբերություն |
| Գորիս | 12,3 | 2,6 | 1,62 | Զարգանում է մշակող արդյունաբերությունը |
| Աշտարակ | 9,1 | 2,1 | 3,14 | » » |

Աղյուսակի տվյալները ցույց են տալիս արդյունաբերության արդյունավետության ցուցանիշների աչքի ընկնող տարբերությունները։ Այսպես, այն

քաղաքներում, ուր զարգացած է արդյունահանող արդյունաբերությունը, ֆոնդահատույցն ավելի պակաս է, իսկ ֆոնդազինվածությունն առավել բարձր է (օրինակ՝ Ղափան, Քաջարան), քան այն քաղաքներինը, որտեղ զարգացած է մշակող արդյունաբերությունը (Լենինական, Կամո և այլ քաղաքներ)։ Արդյունաբերության արդյունավետության բարձրացման ընդհանուր պայմաններ են՝ համախառն արտադրանքի աճը, արտադրողականության և ֆոնդահատույցի բարձրացումը, միաժամանակ ֆոնդազինվածության պակասումը։

Հետազոտման նյութերի վերլուծումը ցույց տվեց, որ արդյունավետության ցուցանիշների վրա վճռական ազդեցություն են գործում քաղաքում տեղաբաշխված արտադրատեսակները, դրանց կոմպլեքսի կառուցվածքը, մասնագիտացման և, առհասարակ, ֆունկցիոնալ զարգացման մակարդակը։

Փոքր քաղաքների տնտեսական ցուցանիշների վրա ներգործող այս ազդակները պայմանավորված են նրանով, որ տարբեր ճյուղային տիպային նախագծերում հիմք են ընդունված մեկը մյուսից խոշոր չափով տարբերվող նորմատիվներ։ Այսպես, տեքստիլ կոմբինատի 1 մլն ռուբլի համախառն արտադրանքի համար պահանջվում են 177 աշխատող, 1,34 մլն ռուբլի հիմնական ֆոնդեր, ունենալով 0,6 մլն ռուբլի ֆոնդահատույց։ Քիմիական ձեռնարկությունները պահանջում են համապատասխանորեն՝ 78—130, 1,54—1,62, 0,58—0,6 մլն ռուբլի։ Պարզ է, որ այս պայմաններում քաղաքի արդյունաբերության տնտեսական ցուցանիշների վրա մեծ ազդեցություն կգործի նրա ճյուղային կառուցվածքը։ Այսպես, Լենինականում, ուր առավել զարգացած է տեքստիլ արդյունաբերությունը, 1 մլն համախառն արտադրանքի համար կպահանջվեն ավելի շատ աշխատողներ, համեմատաբար քիչ հիմնական ֆոնդեր և կունենա ավելի մեծ ֆոնդահատույց, քան Կիրովականը՝ զարգացած քիմիական արդյունաբերությամբ։

Մի շարք արտադրություններ մեր կողմից խմբավորվել են ըստ զուգբաղվածության ցուցանիշի։ Այդ ձեռնարկությունների տարբեր զուգակցմամբ հնարավոր է փոքր քաղաքների համար կազմակերպել արդյունաբերական տարբեր ձեռնարկությունների ռացիոնալ կոմպլեքս, որը կապահովի տնտեսական բարձր արդյունավետությունը։ Արդյունաբերության բարձրացման մյուս էական միջոցը տեխնոլոգիական պրոցեսների մասնատումն է առավել «բազմահարկ» ճյուղային արտադրանքների համար (քիմիական, թեթև, մեքենաշինության արդյունաբերություն)։ Այսպիսի մասնատումը հնարավորություն կստեղծի խոշոր արդյունաբերական ձեռնարկությունը տեղաբաշխել ոչ թե մի փոքր քաղաքում, որի աշխատանքային ռեսուրսները չեն կարող բավարարել այդպիսի ձեռնարկության պահանջը, այլ մի քանի քաղաքներում՝ ըստ տեխնոլոգիական «հարկերի»։ Բացի այս, գործող նախագծերը պետք է վերանայել ըստ առարկայական և դետալային մասնագիտացման խորացման, այն հաշվով, որ հնարավորություն լինի փոքր քաղաքներում տեղաբաշխել այդպիսի արտադրամասեր կամ խոշոր գործարանների մասնաճյուղեր, որոնք քիչ աշխատավորներ են պահանջում։ Այդպիսի մասնաճյուղերն իրենց գլխավոր ձեռնարկությունների հետ ունենալով ռացիոնալ արտադրական կապեր, որպես կանոն, ունեն բարձր արդյունավետության ցուցանիշներ։ Պատահական չէ, որ վերջերս մի շարք կապիտալիստական երկրներում այդպիսի ձեռնարկությունների թիվը գնալով ավելանում է։ Օրինակ, մեքենաշինական ձեռնարկությունների տեսակարար կշիռը, ուր զբաղված են



մոտ 100 աշխատող, ԱՄՆ-ում կազմում է 22, ԳՖՀ-ում՝ 18, Ճապոնիայում՝ 55 տոկոս, մետաղամշակման մեջ, համապատասխանորեն՝ 33, 35 և 80 տոկոս։ Կարի արդյունաբերության մեջ այդպիսի ձեռնարկությունների տեսակարար կշիռը կազմում է ՍՍՀՄ-ում՝ 5,7, ԱՄՆ-ում՝ 50, ԳՖՀ-ում՝ 42 և Ճապոնիայում՝ 84 տոկոս։

ԱՄՆ-ում պլաստմասսաների վերամշակման ձեռնարկություններում միջին թվով աշխատում են 28 մարդ, ԳՖՀ-ում՝ 79, Ճապոնիայում՝ 30, Ֆրանսիայում՝ 14 մարդ. մինչդեռ, մեզ մոտ գործող նախագծերով՝ 1000-ից ավելի։

Արդյունաբերության տեղաբաշխման մյուս պրոբլեմը, որը պայմանավորված է նույնպես նախագծմամբ, կոոպերացումն ու օբյեկտների կոմպլեքս շինարարությունն է։

ՀՍՍՀ մի շարք արդյունաբերական օբյեկտների (Չարենցավան, Արագած, Արզնի, Արաղդայան) խմբավորման նպատակով ձեռնարկված հատակագծումները (առանձին նախագծված արդյունաբերական կառույցների փոխարեն) ցույց տվեցին խմբավորված և կոմպլեքս հատակագծումների առավելությունները։ Դրա շնորհիվ կրճատվում են ինչպես շինարարական աշխատանքների արժեքները, այնպես էլ շահագործման ծախսերը։ Տարեկան պայմանական արդյունավետությունը Չարենցավանի հանգույցում կազմում է 1.579 հազար ռուբլի, Արզնիում՝ 127, Արագածում՝ 165 հազար ռուբլի և այլն։ Շինարարության համար պահանջվող հողամասերը կրճատվում են մոտ 25 տոկոսով, որը սակավահող երկրների համար կարևոր գործոն է։ Կառուցվածքների ծավալը կրճատվում է 10, արդյունաբերության շահագործման ծախսերը՝ 3—5 %-ով։

Այս դրական նախագծման փորձից կարելի է եզրակացնել, որ անկախ քաղաքի մեծությունից, այնտեղ, որտեղ հնարավոր է, պետք է անցնել կոմպլեքսային նախագծումների և, ըստ ընդհանուր գլխավոր հատակագծի, կազմակերպել արդյունաբերական հանգույցներ։ Նույնը վերաբերում է նաև ոչ արդյունաբերական շենքերի կոոպերացմանը և կոմպլեքսային նախագծմանը։

Տեղաբաշխման կարևոր պրոբլեմներից մեկը դրա համասարաչափությունն է ըստ տեղական պայմանների, որի ցուցանիշներից մեկը տվյալ քաղաքի կամ շրջանի արդյունաբերական և դեմոգրաֆիկ պոտենցիալների հարաբերությունն է։ Մեր կատարած հաշվարկները ցույց են տալիս, որ այդ հարաբերությունն Արարատյան տնտեսական շրջանում կազմում է 1,29, Շիրակում՝ 0,74, Լոռիում՝ 1,03, Սևանում և Սյունիքում՝ 0,47։ Համասարաչափ տեղաբաշխման ցուցանիշը պետք է ձգտի 1,0-ի։ Ըստ դրա անհրաժեշտ է արդյունաբերությունն առավելապես կենտրոնացնել Սյունիքի, Սևանի և Շիրակի տնտեսական շրջաններում, սահմանափակելով տեղաբաշխումը Արարատյան շրջանում, որն ընդգրկում է նաև Երևանը։

Տարբեր մեծության քաղաքներում տեղաբաշխման արդյունավետ հաշվարկները լիարժեք չեն լինի, եթե հաշվի չառնվի նաև քաղաքաշինական այն ծախսումները, որ կապված են արդյունաբերության տեղաբաշխման հետ։ Այս հարցի ուսումնասիրումը, ըստ ՀՍՍՀ քաղաքների, ցույց տվեց, որ այդ ծախսումները պայմանավորված են քաղաքի մեծությամբ։ Դրանք մենք հաշվարկել ենք մեկ բնակչի համար, ըստ տարբեր մեծության (30, 90, 180 և 1000 հազար բնակչությամբ) քաղաքների և կառուցվող տարբեր (2, 5, 9 հարկանի) շենքերի։ Այսպես, մեծ քաղաքներում 1 բնակչի համար պահանջվում է 10—11, իսկ խոշորներում՝ 30—31 տոկոս ավելի ծախսումներ, քան փոքր

քաղաքներում։ Հաշվի են առնված նաև այն ծախսումները, որոնք կապված են բնակիչների տեղափոխումների և կոմունալ-կենցաղային սպասարկման հետ։ Այլ ծախսումները մեծ քաղաքների համար 58 տոկոս է, իսկ խոշոր քաղաքներինը 110 տոկոսով ավելի են, քան փոքրերինը։ Արդյունաբերության զարգացման և տեղաբաշխման հիմնական խնդիրներից մեկն այն անհետաձգելի պրոբլեմների հայտաբերումն է, որոնք առանձնահատուկ բնույթ են կրում տվյալ քաղաքի կամ շրջանի հետագա զարգացման համար։ Այսպես, Երևան քաղաքի այդպիսի պրոբլեմներից են տրանսպորտի բարելավումը, անխափան ջրամատակարարման ապահովումը, սպասարկման ոլորտի բարելավումը, քաղաքի բնակչությանը գյուղատնտեսական մթերքներով տարվա բոլոր ամիսներին լիովին ապահովումը (մերձքաղաքային գյուղատնտեսական գոտիների ստեղծումը), օդավազանի մաքրումը և այլն. Աբովյան քաղաքինը՝ մեքենաշինության աշխատատար ճյուղերի և սննդարդյունաբերության զարգացումը և այլն։

Այդպիսի առանձնահատուկ, ինչպես նաև ընդհանուր պրոբլեմներ մշակված են ՀՍՍՀ քաղաքների և տնտեսական շրջանների համար։ Դրանց մշակման հիմք են ծառայել տեղական պայմանները, բնական և աշխատանքային ռեսուրսները, տրանսպորտը և կապը, շինարարական բազան, արդյունաբերության զարգացման աստիճանը և տենդենցները։ Հաշվի է առնված 28 գործոն, որոնք այս կամ այն չափով ազդում են արդյունաբերության զարգացման և տեղաբաշխման պրոբլեմի վրա։ Այսպիսի հետազոտությունները թույլ տվեցին կազմելու Հայաստանի շրջանների և քաղաքների հետագա զարգացման կանխորոշման սխեմաները, ապահովելով տնտեսապես թույլ շրջանների և քաղաքների զարգացման առավել տեմպեր, այն հաշվով, որ ամբողջ Հայաստանի ներդաշնակ և համեմատական զարգացումը լինի գիտականորեն հիմնավորված, ինչպես նաև դրա համար նախատեսված լինեն բոլոր անհրաժեշտ միջոցառումները։ Այդ սխեմաների համապատասխան Հայաստանի քաղաքային ավանների թիվը 51-ից կհասնի 70-ի (1980 թ.) դրանք կզարգանան 6 հիմնական ուղիներով։

1. Փոքր և միջին քաղաքներ՝ որպես արդյունաբերական հանգույցներ։ Այդ քաղաքներն ունեն բարենպաստ պայմաններ. հանածոներ, ջրային և աշխատանքային ռեսուրսներ, տրանսպորտի լավ միջոցներ և այլն։ Դրանք են Հրազդանը, Չարենցավանը, Զոդ-Վարդենիսը, Գորիսը, Արթիկը և այլն։ Այդպիսի նոր քաղաքներ կկազմակերպվեն Սյունիքի և Արարատյան տնտեսական շրջաններում՝ հարուստ հանածոների շահագործման բազայի վրա. 2. Փոքր և միջին մեծության՝ Աբովյան, Էջմիածին, Մասիս, Փարաքար, Արարատ և այլն, կզարգանան որպես արդյունաբերական կենտրոնների ինդուստրիալ արբանյակներ. 3. Մի շարք փոքր քաղաքներ կձևակերպվեն և կզարգանան որպես ագրարային արդյունաբերական կենտրոններ, որտեղ հիմնականում կվերամշակվեն գյուղատնտեսական մթերքները։ Օրինակ, Հոկտեմբերյանը, Արտաշատը, Աշտարակը, Ապարանը, Թալինը, Եղեգնաձորը. 4. Սևանի տնտեսական շրջանում մի շարք այլ (Կամո, Վարդենիս, Սևան, Բերդ) քաղաքներ կզարգանան որպես «փնջային» համակարգություն, որտեղ կտեղաբաշխվեն արդյունաբերական տերիտորիալ կոմպլեքսներ. 5. Ամասիա, Ղուկասյան, Կրասնոսելսկ և մի շարք այլ մեծ ավաններ, ունենալով զարգացման բարենպաստ հեռանկարներ, կձևավորվեն, որպես շրջկենտրոն-քաղաքներ. 6.



Արզնին, Դիլիջանը, Ծաղկաձորը, Ջերմուկը և Հանքավանը լավագույն հեռանկարներ ունեն դառնալու առողջապահական կենտրոններ և տուրիստական քաղաքներ։

Այս ուղիներով կազմակերպվող և աճող քաղաքները կզարգանան կոմպլեքսային ձևով։ Մշակված տեղաբաշխման սխեմաները նախատեսում են նաև այդ քաղաքների, շրջանների և առանձին գյուղերի արտաքին և ներքին տրանսպորտի, բնակարանային և կոմունալ շինարարության, առևտրի և հասարակական սննդի, կուլտուր-կենցաղային, առողջապահական, լուսավորության և շատ այլ նպատակներով ծավալվող կառուցումների, ինչպես նաև բարեկարգման աշխատանքների մի հոյակապ ծրագիր։ Արդեն 1980 թ. բնակչության ամեն մի շնչին (թե՛ քաղաքի և թե՛ գյուղի) կհասնի ավելի շատ բարեկարգված բնակելի տարածություն՝ բոլոր հարմարություններով և այլն։ Կանաչապատման տարածությունները կավելանան, չհաշված մերձքաղաքային գոտիները։

Այս բոլորի շնորհիվ մյուս սոցիալիստական հանրապետությունների համերաշխ ընտանիքում Սովետական Հայաստանը կդառնա ավելի ծաղկուն և ինդուստրիալ երկիր։

Գ. Ա. ԽՈՐԱՍԱՆՅԱՆ
Տեխնիկական գիտությունների թեկնածու, դոցենտ



# ՉԱՐԵՆՑԱՎԱՆԻ ԼԻԶԻՆԻ ԳՈՐԾԱՐԱՆԸ

*Վիճակագրությունը ցույց է տվել, որ անցած 500 տարում մեր հողագնդի բնակչությունն ավելացել է մոտ 7 անգամ։ Ենթադրվում է, որ 100—200 տարի հետո այդ թիվը հասնելու է մի քանի տասնյակ միլիարդի, և մարդկանց սննդի ապահովման գործը դառնում է լուրջ պրոբլեմ։ Այդ հարցի լուծումը մեծապես պայմանավորված է գյուղատնտեսության, մասնավորապես՝ անասնապահության հետագա զարգացմամբ։ Հայտնի է, որ սննդի հսկայական պաշարներ կան օվկիանոսային ջրերում։ Կան նաև սննդի այլ աղբյուրներ։*

*Վերջին տասնամյակներում զգալի ուշադրություն է նվիրվում այն մթերքների արտադրությանը, որոնց հիմքում ընկած են քիմիական և միկրոկենսաբանական սինթեզները։ Առայժմ վաղ է ավարտուն խոսք ասել այդ հարցերի մասին, բայց վերջին տարիներում կատարված գիտական ուսումնասիրությունները հնարավորություն են ընձեռում ստեղծելու արդյունաբերական այնպիսի ձեռնարկություններ, ինչպիսիք են՝ սպիտակուցային նյութերի, խմորասնկի, ամինաթթուների, ֆերմենտների, տարբեր վիտամինների, բակտերիալ պրեպարատների...*

*Ընթացիկ հնգամյակում Սովետական Միությունում արագ տեմպերով զարգանալու է միկրոկենսաբանական արդյունաբերությունը, ըստ որում, կերախմորիչների թողարկումն ավելանալու է 3,5—3,7 անգամ։ Այդ մասին ՍՍՀՄ ժողովրդական տնտեսության զարգացման իններորդ հնգամյա պլանի վերաբերյալ ՍՄԿԿ XXIV համագումարի դիրեկտիվներում ասված է. Զարգացնել սպիտակուցա-վիտամինային կոնցենտրատների արդյունաբերական արտադրությունը, զգալիորեն ընդլայնել ամինաթթուների, բույսերի պաշտպանության միկրոկենսաբանական միջոցների, բժշկական նշանակություն չունեցող հակաբիոտիկների և կերավիտամինների արտադրությունը։ Մեծացնել սննդի և թեթև արդյունաբերության, գյուղատնտեսության և այլ ճյուղերի տեխնոլոգիական պրոցեսների ինտենսիվացման և արտադրանքի որակի բարելավման համար ֆերմենտային պրեպարատների արտադրությունը, ընդլայնել դրանց տեսակները։ Միկրոկենսաբանական արդյունաբերությունը զինել միավորային մեծ հզորության ագրեգատներ ունեցող բարձր արտադրողական տեխնոլոգիական գծերով։*

*Միկրոկենսաբանական արդյունաբերության դերը, որպես նորագույն առաջատար արտադրության ճյուղի, մեծ է մեր երկրում։ Այն հնարավորություն է ընձեռելու արդյունաբերության առանձին ճյուղերի մնացորդների բազայի վրա մշակելու և արտադրելու կենսականորեն անհրաժեշտ նյութեր՝ սպի-*



*տակուցներ, ամինաթթուներ և այլն, որոնք մեծ նշանակություն ունեն ինչպես մարդու առողջության բարելավման, այնպես էլ անասնապահության և թռչնաբուծության հետագա զարգացման համար։*

*Այդ ամինաթթուների շարքին է պատկանում նաև լիզինը, որը սպիտակ բյուրեղային, առանց հոտի, դառնաղի համով, ջրում հեշտությամբ լուծվող մի նյութ է։*

*Հայրենական և արտասահմանյան որոշ գիտնականների հետազոտությունները ցույց են տվել, որ լիզինը կենդանի օրգանիզմների համար յուրահատուկ, խիստ օգտակար և անհրաժեշտ նյութ է, որն ավելացվում է սննդամթերքների և կերի բաղադրության մեջ։ Դրա շնորհիվ կերը կոմբինացվում է, նպաստում անասունների աճին։*

*Բազմաթիվ ուսումնասիրություններ պարզել են, որ բյուրեղային լիզինն օգտակար է դեռահասների սննդի մեջ։ Այդ խառնուրդով հացը, թխվածքեղենը, պահածոներն ապահովում են օրգանիզմի նորմալ աճը։ Հյուսվածքները, մանավանդ մկանները, նման սնունդ ընդունելիս լավ զարգանում են, որի շնորհիվ երիտասարդները ֆիզիկապես ավելի ուժեղ և առողջ են լինում։ Այդ դեպքում բարձր է նաև օրգանիզմի դիմադրողականությունը հիվանդությունների նկատմամբ։*

*Հայտնի է, որ ճապոնացիները սովորականից ավելի կարճահասակ են։ Երիտասարդ ծնողները մինչև երեխա ունենալը, իսկ հետագայում նրանցից ծնվածները, երբ սննդի հետ միասին սիստեմատիկաբար օգտագործում են լիզին, հասակով աճում են, մոտենում, երբեմն էլ անցնում միջին հասակ ունեցող եվրոպացիներից։*

*Բժշկական գիտությունն ապացուցել է, որ լիզինով հագեցված կերակրով սնվելիս երեխաների մտավոր զարգացումն ընթանում է նորմալ, տկարամտության ու այլ հիվանդությունների դեպքերը խիստ նվազում են։*

*Լիզինը մեծ չափով օգտագործվում է անասնապահության զարգացման բնագավառում։ Միջին քաշով մեկ խոզի օրաբաժնում 6—10 գրամ լիզին ավելացնելիս մսատվությունը բարձրանում է 15—20 տոկոսով, իսկ կերի ծախսը կրճատվում է 10—12 տոկոսով։ Հաշվումները ցույց են տալիս, որ երբ ամեն տարի 2000 տոննա լիզին արտադրվի և կիրառվի խտացրած կերի արտադրության մեջ, առանց լրացուցիչ կապիտալ ներդրումների, թռչնաբուծությունից և անասնապահությունից կստացվի 20 հազար տոննա լրացուցիչ միս, զգալի չափով խնայելով կերը։*

*Արժե հիշատակել, որ միկրոկենսաբանական արդյունաբերության զարգացման համար 1971—1975 թվականներին, անցյալ հնգամյակի համեմատությամբ, նախատեսված է կատարել 4 անգամ ավելի կապիտալ ներդրումներ։ Կապիտալ ներդրումներն աճելու են նաև լիզինի արտադրության բնագավառում։ Նախատեսված է 1975 թվականին Սովետական Միությունում արտադրել մոտ 5000 տոննա լիզին։*

*Լիզինի արտադրության համար գոյություն ունի երկու եղանակ՝ քիմիական և միկրոկենսաբանական։ Տեխնիկա-տնտեսական հաշվարկները ցույց են տալիս, որ քիմիական եղանակը ձեռնտու է շատ մեծ արտադրողականությամբ ձեռնարկություն ստեղծելու դեպքում, իսկ փոքր և միջին արտադրողականության գործարաններում՝ միկրոկենսաբանականը (միջին արտադրողականու-*

թյունը հաշվվում է տարեկան մոտ հինգ հազար տոննա)։

Միկրոկենսաբանական եղանակն օժտված է լրիվ կենսաբանական ակտիվությամբ։ Լիզինը սինթեզվում է հատուկ միկրոօրգանիզմների կենսագործունեությամբ՝ շաքարի և ազոտի միացություններից։ Որպես շաքարի աղբյուր օգտագործվում են շաքարի արդյունաբերության թափոնները՝ կերամաթը, որի մեջ շաքարի պարունակությունը մոտ 50 տոկոս է։ Կերամաթը, բացի շաքարից, պարունակում է նաև այլ նյութեր, որոնք անհրաժեշտ են միկրոօրգանիզմների կենսունակությունն ապահովելու համար։ Որպես ազոտական միացությունների աղբյուր օգտագործվում են եգիպտացորենի մզվածքը և ազոտի անօրգանական աղերը, ինչպիսիք են՝ ամոնիակի քլորիդը և սուլֆատը։ Միկրոօրգանիզմները կուլտուրալ հեղուկում սինթեզում են լիզին, որը կազմում է այդ հեղուկի 1,5—2,5 տոկոսը։

Գոյություն ունի միկրոկենսաբանական եղանակով ստացված լիզինի արտադրության երկու եղանակ. առաջինը, երբ կուլտուրալ հեղուկը թանձրացվում է և դրա մեջ պարունակվող նյութերը չորացվում են։ Ստացվում է կոնցենտրատ, որի մեջ լիզինի պարունակությունը կազմում է մոտ 10 տոկոս։ Այն պիտանի է միայն անասնապահության համար։ Երկրորդը, երբ ստացված կուլտուրալ հեղուկից լիզինն անջատվում է մնացած խառնուրդներից և արտադրվում է մաքուր, բյուրեղային նյութի ձևով։ Ահա այսպիսի լիզին արտադրող փորձա-արդյունաբերական ձեռնարկություն է կառուցվում Ջարենցավանում, որը շահագործման է հանձնվելու 1972 թ.։ Նրա նախագծային արժեքն է մոտ 20 մլն ռուբլի, որից արդյունաբերության շինարարությանը 16 մլն, մնացածը բնակարանային և կուլտուր-կենցաղային օբյեկտներ են։ Գործարանը տարեկան թողարկելու է 1300 տոննա բյուրեղային լիզին, որը դրամական արտահայտությամբ կազմելու է մոտ 8 մլն ռուբլի։ Այս ձեռնարկությունում աշխատելու են մոտ 1000 մարդ։ Գործարանը հագեցվելու է նորագույն տեխնիկայով։ Արտադրապրոցեսների մեքենայացմամբ, հատկապես ավտոմատացմամբ այն բացառիկ տեղ է ունենալու։

Ջարենցավանի գործարանը լինելու է ո՛չ միայն լոկ արտադրական ձեռնարկություն, այլև փորձնական, որտեղ պետք է արտադրական մասշտաբներով յուրացվի լիզինի արտադրության տեխնոլոգիան և հիմք ծառայի հետագայում ավելի մեծ հզորության գործարաններ կառուցելու։ Այդ նպատակով այստեղ արդեն շահագործման է հանձնվել յուրահատուկ փորձնական արտադրամաս, որտեղ ճշտվելու է լիզինի ստացման արդյունաբերական տեխնոլոգիան։ Բացի այդ, այն հնարավորություն է ընձեռում փորձարկելու շատ այլ միկրոկենսաբանական պրոցեսներ՝ կարճ ժամկետում կատարելու գիտահետազոտական հիմնարկություններում մշակված պրոցեսների ստուգում և դրանցից հեռանկարայինների ներդրման համար տալու անհրաժեշտ տեխնիկական տվյալներ։ Փորձնական արտադրամասը հանդիսանալու է որակյալ ինժեներա-տեխնիկական և բանվորական կադրերի պատրաստման բազա։

Լիզինի արտադրության ձեռնարկությունը Սովետական Միության և մեր հանրապետության միկրոկենսաբանական արդյունաբերության առաջնեկներից մեկն է, որը մեծ դեր է խաղալու արդյունաբերության այդ նորագույն ճյուղի զարգացման գործում և մեծապես նպաստելու է սննդարդյունաբերության և անասնապահության զարգացմանը։ Գործարանի տեխնոլոգիան մշակվել է արդյունաբերական միկրոօրգանիզմների գենետիկայի համամիու-



թենական գիտահետազոտական ինստիտուտի կողմից՝ կենսաբանական գիտությունների դոկտոր, պրոֆեսոր Ս. Ի. Ալիխանյանի ղեկավարությամբ։

Ձեռնարկության տերիտորիայում կազմակերպվել է վերը նշված ինստիտուտի ֆիլիալը, որը կոչված է զբաղվելու լիզինի արդյունաբերական արտադրության յուրացմամբ, մշակելու մաքուր բյուրեղային լիզին ստանալու եղանակները և առաջին անգամ մեր երկրում զարգացնելու նոր ամինաթթուների ստացման հիմքերը։ Միաժամանակ ֆիլիալն իր լաբորատորիաներով զբաղվելու է մոլեկուլյար գենետիկայի տեսական հարցերով։ Այն ունի 75 գիտական աշխատող։ Հնգամյակի ընթացքում ֆիլիալի համար կառուցվելու են առանձին մասնաշենքեր, որտեղ լինելու են 300-ից ավելի աշխատողներ։

Գործարանի շինարարությունն սկսվել է 1966 թվականից։

Այն կատարում են ՀՍՍՀ արդյունաբերական շինարարության մինիստրության «Աբովյանշին» տրեստի Ջարենցավանի № 6 շինարարական վարչությունը և 10-ից ավելի ենթակապալառու մոնտաժային մասնագիտացված կազմակերպություններ։ Անցած տարիներին արդյունաբերական շինարարության համար իրացվել է մոտ 9, իսկ այս տարի կիրացվի մոտ 3 միլիոն ռուբլի։ Արտադրական շենքերի կառուցումները գրեթե ավարտվել են։ Այժմ կատարվում են սարքավորումների, մեխանիզմների տեղակայման ու մոնտաժման աշխատանքները։ Արդեն տեղակայվել են 16 ժամանակակից ֆերմենտյորներ՝ յուրաքանչյուրը 50 խմ տարողությամբ։ Հումքի պաշարի համար կառուցվում են մետաղյա խոշոր ամբարներ, որոնց շնորհիվ գործարանը կաշխատի անխափան։

Պետք է ասել, որ թե՛ շինարարները, թե՛ մոնտաժողները մեծ ջանքեր են գործադրում հաջողությամբ ավարտելու ձեռնարկության շինարարությունը։ Սակայն ձգձգվում է Ախտաջրատարի կառուցումը, որը կարող է արգելակել գործարանը ժամանակին գործարկելուն։

Կարևոր է Ջարենցավանի լիզինի գործարանը բանվորական կադրերով և մասնագետներով ապահովելու հարցը։ Դրա լուծմամբ են մտահոգված թե՛ գործարանի, թե՛ հանրապետության մի շարք ուսումնական հաստատություններ։ Ինժեներա-տեխնիկական աշխատողներ և տեխնոլոգներ պատրաստում են Երևանի պոլիտեխնիկական ինստիտուտը, պետական համալսարանը և Սովետական Միության բարձրագույն ուսումնական այլ հաստատությունները։ Իսկ բանվորական կադրերը՝ Ջարենցավանի պրոֆտեխնիկական ուսումնարանը։

Ջարենցավանի լիզինի գործարանը մեր հանրապետության իններորդ հնգամյակի կարևոր նորակառույցներից է։ ՀԿԿ Կենտկոմն ու ՀՍՍՀ Մինիստրների սովետը մեծ ուշադրություն են նվիրում, որպեսզի այն ժամանակին գործարկվի։

Վ. Բ. ՍՏԵՓԱՆՅԱՆ
Ջարենցավանի լիզինի գործարանի դիրեկտոր

## ՄԻՋԱԶԳԱՅԻՆ ԿՅԱՆՔ

Ն. Վ. ԳԱՍՊԱՐՅԱՆ

# ՀԱՆՈՒՆ ԽԱՂԱՂՈՒԹՅԱՆ, ԸՆԴԴԵՄ ԻՄՊԵՐԻԱԼԻԶՄԻ

ՍՈՎԵՏԱԿԱՆ Միության կոմունիստական կուսակցության XXIV համագումարը մեծ ուշադրություն նվիրեց միջազգային հարցերին։ Համագումարը տվեց միջազգային արդի իրադրության մարքսիստական-լենինյան խոր վերլուծությունը, հավաստեց սովետական պետության լենինյան արտաքին քաղաքականության անխախտելիությունը։ Կուսակցության համագումարը միջազգային ասպարեզում սահմանեց ՍՄԿԿ և սովետական կառավարության արտաքին-քաղաքական կուրսի հիմնական ուղղությունները։

ՍՄԿԿ Կենտկոմի հաշվետու զեկուցման մեջ Լ. Ի. Բրեժնևն առաջադրեց խաղաղության և միջազգային համագործակցության, ժողովուրդների ազատության և անկախության համար պայքարի հստակ և ծավալուն ծրագիր։ Կուսակցության արտաքին քաղաքական կուրսը համաշխարհային մամուլը և միջազգային հասարակայնությունը կնքեցին որպես խաղաղության ծրագիր։

*

* *

ԽԱՂԱՂՈՒԹՅԱՆ ծրագիրն ամենից առաջ նախատեսում է վերացնել ռազմական օջախները Հարավ-Արևելյան Ասիայում և Մերձավոր Արևելքում։ Արդի իմպերիալիզմը վերջին տարիներին ապարդյուն փորձեր է կատարել կասեցնելու համաշխարհային հեղափոխական ուժերի հարաճուն վերընթացը, խանգարել սոցիալիզմի ամրապնդմանը։ Անհանգստացած սոցիալիզմի համաշխարհային սիստեմի հաջողություններից, ժողովուրդների ազգային-ազատագրական շարժման թափից, աշխարհի տարբեր շրջաններում իր ունեցած տնտեսական, քաղաքական և ռազմա-ստրատեգիական կարևոր դիրքերի կորստից, իմպերիալիզմը, գլխավորապես ամերիկյան իմպերիալիզմը, որը հանդես է գալիս որպես կապիտալիստական աշխարհի ամենաագրեսիվ և ռեակցիոն ուժ,— թեւակոխել է ագրեսիայի և պատերազմների ուղին։

Զարգացող երկրների նկատմամբ վարելով նեոգաղութատիրության քաղաքականություն, ամերիկյան իմպերիալիզմը միաժամանակ ձեռնամուխ է եղել այդ երկրների դեմ ուղղված ագրեսիայի, պատերազմների և ավանտյուրաների։

Յոթ տարի է, ինչ ամերիկյան իմպերիալիստները Հարավ-Արևելյան Ասիայում զավթողական պատերազմ են մղում Վիետնամի, Լաոսի և Կամբոջայի ժողովուրդների դեմ։ Կովի մեջ նետելով իրենց ավելի քան կեսմիլիոնանոց բանակը, օգտագործելով հսկայական քանակությամբ զենքի ու տեխնիկայի նորագույն տեսակներ, սայգոնյան և մյուս մարիոնետների բանակը, ամերիկյան ագրեսորները Հնդկաչինի ժողովուրդների դեմ մղում են տևական, արյունահեղ պատերազմ։ Բավական է ասել, որ հնդկաչինյան պատերազմի վրա ԱՄՆ-ն արդեն ծախսել են 127 միլիարդ դոլար։ Ամերիկյան իմպերիալիզմի հնդկաչինյան ավանտյուրան իր սուր ծայրով ուղղված է հեղափոխության և պրոգրեսի ուժերի, ազգային-ազատագրական շարժման, սոցիալիզմի դեմ։ Սանձազերծելով պատերազմը Հնդկաչինում, ամերիկյան իմպերիալիստները ձգտում էին ճնշել Վիետնամի Դեմոկրատական հանրապետությանը, Լաոսի և Կամբոջայի ժողովուրդների ազգային-ազատագրական պայքարը։

Սովետական Միությունը և սոցիալիստական մյուս երկրները վճռականորեն դատապարտեցին ԱՄՆ-ի ագրեսիվ քաղաքականությունը Հնդկաչինում և, կատարելով իրենց ինտերնացիոնալ պարտքը, օգնության հասան Հնդկաչինի ժողովուրդներին։ Ռազմական ու տնտեսական հարաճուն օգնությունը, որ ՍՍՀՄ-ն ու սոցիալիզմի մյուս երկրները ցույց են տվել և ցույց են տալիս Վիետնամի ժողովրդին՝ ազատության և անկախության համար մղած նրա հերոսական պայքարում, նրան հնարավորությունը ընձեռեցին հուժկու հարվածներ հասցնելու ամերիկյան իմպերիալիստներին։ Իմպերիալիստական ագրեսորները բարոյական, քաղաքական և ռազմական պարտություն կրեցին Վիետնամում։ Ամերիկյան ագրեսորներին, որոնք պատերազմը տարածեցին Լաոսի և Կամբոջայի վրա, չօգնեցին՝ չեն օգնի ոչ «Նիքսոնի դոկտրինան», ոչ էլ պատերազմի «վիետնամացման» քաղաքականությունը Հնդկաչինում։ Վիետնամի պրոբլեմը ռազմական միջոցներով լուծելու ԱՄՆ-ի ձգտումը դատապարտված է ձախողման։ Հնդկաչինի պատերազմը, ասաց Լ. Ի. Բրեժնևը ՍՄԿԿ XXIV համագումարում, ամերիկյան ժողովրդին բերում է ո՛չ թե հաղթանակի դափնիներ, այլ տասնյակ հազարավոր թաղման պսակներ։

Հնդկաչինի պրոբլեմի լուծման ուղին Վիետնամի, Լաոսի և Կամբոջայի ժողովուրդների դեմ իմպերիալիստական ագրեսիայի դադարեցումն է, որպեսզի այդ ժողովուրդներն իրենք տնօրինեն իրենց ճակատագիրը։ Հենց այդ բանը պարզ ու որոշակի ասվեց ՍՄԿԿ XXIV համագումարի կողմից ընդունված «Ազատություն և խաղաղություն Հնդկաչինի ժողովուրդներին» դիմումում։ Համագումարը կրկին անգամ հաստատեց Սովետական Միության վճռականությունն ու պատրաստակամությունը՝ կատարել արդարացի պայքարում Հնդկաչինի ժողովուրդներին օգնություն և աջակցություն ցույց տալու իր ինտերնացիոնալ պարտքը։ Սովետական Միությունը հաստատ պաշտպանում է Վիետնամի դեմոկրատական կառավարության և Հարավային Վիետնամի Հանրապետության ժամանակավոր հեղափոխական կառավարության առաջարկությունները, որոնք ճանապարհ են հարթում Վիետնամի պրոբլեմի լուծման համար։

* * *

ՍՈՎԵՏԱԿԱՆ Միությունն սկզբունքորեն հակաիմպերիալիստական դիրք է գրավում նաև Մերձավոր Արևելյան ճգնաժամի հարցերում։

Ավելի քան չորս տարի առաջ, իսրայելյան ագրեսիայի և ամերիկյան իմպերիալիզմի ոտնձգությունների հետևանքով, Մերձավոր Արևելքում առաջացավ պատերազմի մի այլ օջախ։ Այստեղ ամերիկյան իմպերիալիզմը իսրայելյան էքստրեմիստների ձեռքերով փորձեց կասեցնել արաբական ժողովուրդների ազատագրական շարժումը, պարտության մատնել այն, արաբական երկրներում վերացնել պրոգրեսիվ կարգերը և Մերձավոր Արևելքում նորից վերականգնել իմպերիալիստական պետությունների խախտված դիրքերը։ Այդ ծանր օրերին արաբներին օգնության հասավ նրանց հավատարիմ բարեկամը՝ Սովետական Միությունը։ Վճռականորեն դատապարտելով իսրայելական ագրեսորներին և նրանց ամերիկյան հովանավորներին, կատարելով իր ինտերնացիոնալ պարտքը՝ Սովետական Միությունը, մյուս եղբայրական սոցիալիստական պետությունների հետ միասին, վճռականորեն դեմ դուրս եկավ ագրեսորներին Մերձավոր Արևելքում։ Սովետական Միության և սոցիալիզմի մյուս երկրների հաստատ ու վճռական դիրքի շնորհիվ հաջողվեց մարել պատերազմի հրդեհը Մերձավոր Արևելքում, պահել ու պաշտպանել արաբական պրոգրեսիվ կարգերը՝ վերականգնելով նրանց ռազմական պոտենցիալը։ Սովետական Միությունը հաստատ հանդես է գալիս ի պաշտպանություն արաբ ժողովուրդների, պաշտպանում է նրանց արդարացի պայքարն իրենց ազատության և անկախության համար։ Սովետական Միությունն աշխատում է վերացնել պատերազմի օջախը Մերձավոր Արևելքում, քաղաքականապես կարգավորել ստեղծված ճգնաժամը։ Սակայն, իմպերիալիստական ագրեսորների մեղքով, մինչև այժմ չի լուծված այդ վտանգավոր կոնֆլիկտը։ ՍՄԿԿ XXIV համագումարը լուրջ ուշադրություն նվիրեց Մերձավոր Արևելքի ճգնաժամին, համերաշխության ձեռք մեկնեց արաբական ժողովուրդներին, որոնք քաջարի պայքար են մղում իսրայելյան ագրեսիայի հետևանքները վերացնելու համար։ Համագումարն ընդունեց «Հանուն արդարացի և կայուն խաղաղության Մերձավոր Արևելքում» հայտարարությունը։ Այդ փաստաթղթում ընդգծվում է, որ Սովետական Միությունն այսուհետև ևս հետևողականորեն կպաշտպանի արաբական ժողովուրդների արդար գործը, որոնց նպատակն է՝ վերականգնել իրենց ոտնահարված իրավունքները, ապահովել քաղաքական արդարացի կարգավորում Մերձավոր Արևելքում, պաշտպանել Պաղեստինի արաբ բնակչության օրինական իրավունքները։

Արաբների նկատմամբ Սովետական Միության այդ հետևողական քաղաքականության նոր հաստատում հանդիսացավ Սովետական Միության և Արաբական Միացյալ Հանրապետության միջև 1971 թվականի մայիսի 27-ին կնքված բարեկամության և համագործակցության պայմանագիրը։ Պայմանագիրն ամրապնդում է երկու երկրների արդեն ձեռք բերած բազմակողմանի և բեղմնավոր բարեկամական համագործակցության արդյունքները։ Պայմանագիրն այդպիսի համագործակցության նոր հնարավորություններ է ստեղծում տնտեսական, քաղաքական և ռազմական բոլոր բնագավառներում, կարևոր երաշխիք է Արաբական Միացյալ Հանրապետության ամրապնդման համար։



Վերջին ժամանակներս իմպերիալիստներն ամեն ինչ անում էին ՍՍՀՄ-ի և ԱՄՀ-ի միջև սեպ խրելու, սովետական և արաբական ժողովուրդների բարեկամությունը թուլացնելու համար։ Իմպերիալիստները հույսը դրել էին Սովետական Միության և ԱՄՀ-ի հարաբերությունների վատթարացման վրա։ Ահա թե ինչու կնքված պայմանագիրը խորտակիչ հարված հանդիսացավ իմպերիալիստների այդ ոտնձգություններին։ Տարակույս չկա, որ ագրեսորներն այդտեղ էլ պարտություն կկրեն, և խաղաղությունը կհաղթանակի Մերձավոր Արևելքում։

Սովետական Միության կոմունիստական կուսակցությունը և սովետական կառավարությունը, ելնելով միջազգային իրադրությունը նորմալացնելու անհրաժեշտությունից, խաղաղության իրենց ծրագրում կոնկրետ ուղիներ են նշում՝ վերացնելու ագրեսիայի օջախները Հնդկաչինում և Մերձավոր Արևելքում։

ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ XXIV համագումարի առաջադրած խաղաղության ծրագրում բացառիկ ուշադրություն է նվիրված Եվրոպայում անվտանգության ապահովման և համաեվրոպական խորհրդակցություն գումարելու հարցերին։ ՍՄԿԿ Կենտկոմի հաշվետու զեկուցման առթիվ համագումարի ընդունած բանաձևում ասված է, որ ընդհանուր խաղաղության ամրապնդման և լարվածության թուլացման հանգուցային պրոբլեմներից են եվրոպական անվտանգության ապահովումը՝ երկրորդ համաշխարհային պատերազմի հետևանքով գոյացած տերիտորիալ և քաղաքական իրողությունների ճանաչումը։

Այդ պայմաններում Սովետական Միությունն ամենից առաջ ջանում է արմատական շրջադարձի հասնել եվրոպական մայրցամաքում լարվածությունը թուլացնելու և խաղաղություն հաստատելու գործում, գումարել համաեվրոպական խորհրդակցություն՝ անվտանգության և համագործակցության հարցերի շուրջը։ Ընդ որում, ՍՍՀՄ-ը ելնում է այն բանի ըմբռնումից, որ կարևոր պրոբլեմներից մեկը, որի լուծումից շատ բանով կախված է մարդկության ճակատագիրը, Եվրոպայում անվտանգության կայուն և հուսալի սիստեմի ստեղծումն է։

Մարդկությունը չի կարող հանդուրժել այն, որ Եվրոպայում իրար դեմ կանգնած են ՆԱՏՕ-ի ագրեսիվ բլոկի զինված ուժերը և Վարշավայի պաշտպանական դաշինքի զինված ուժերը։ Եվրոպայում է հիմնված ամերիկյան միջուկային զենքի զինանոցը, որտեղ կան 7—9 հազար ատոմային և ջրածնային ռումբ։ Այդտեղ է գտնվում ԱՄՆ-ի 300 հազարանոց ցամաքային բանակը։ ՆԱՏՕ-ի ռազմական պատրաստությունները վերջին տարիներս աճում են արագ տեմպով։ Միայն 1970 թվականին ՆԱՏՕ-ի երկրները պատերազմի նախապատրաստության գործում ներդրել են 103 միլիարդ դոլար։ Բացի դրանից, ՆԱՏՕ-ի գծով ԱՄՆ-ի եվրոպական դաշնակիցները պարտավորվել են առաջիկա հինգ տարում լրացուցիչ մոտ մեկ միլիարդ դոլար հատկացնել ռազմական նախապատրաստություններին։ ՆԱՏՕ-ի ագրեսիվ բլոկի հիմնական ուժերը դասավորված են Արևմտյան Եվրոպայում։ Ատլանտյան պայմանագրի ռազմական կազմակերպության սպառազինության համար 20 տարիների ընթացքում ԱՄՆ-ը և նրա դաշնակիցները ներդրել են մոտ մեկ և կես

տրիլիոն դոլար։ Եվրոպայում այնքան մեծ քանակությամբ հրազեն է կենտրոնացված, որ այդտեղ վառված ամեն մի կայծ սպառնում է բռնկել ողջ մայրցամաքը և մարդկությանը ներքաշել նախորդ երկու համաշխարհային պատերազմներից շատ ավելի ավերիչ աղետի մեջ։

Ահա թե ինչու Եվրոպայի ժողովուրդների և ողջ մարդկության կենսական շահերը հրամայաբար պահանջում են ամեն բան անել, որ մայրցամաքում պատերազմի նոր հրդեհ չբռնկի, որ Եվրոպան վերածվի կայուն խաղաղության գոտու։ Իսկ դրան կարելի է հասնել, եթե արմատական շրջադարձ կատարվի միջազգային լարվածությունը թուլացնելու օգտին։

Եվրոպական պրոբլեմների հաջող լուծման համար այժմ բարենպաստ միջազգային իրադրություն է ստեղծվել։ Սովետական Միության և սոցիալիստական մյուս երկրների ակտիվ արտաքին քաղաքականությունը վերջին տարիներս նպաստել է քաղաքական կլիմայի առողջացմանը եվրոպական մայրցամաքում։ Միջազգային լարվածությունը Եվրոպայում փոքր-ինչ թուլացել է։ Եվրոպայում ակնհայտ է դարձել լարվածությունը թուլացնելու և տարբեր սոցիալական սիստեմների պատկանող պետությունների միջև համագործակցությունը կարգավորելու տենդենցը։ Լավ հարաբերություններ են հաստատվել Ֆրանսիայի հետ։ Սովետական և ֆրանսիական ժողովուրդների բարեկամությունը հենվում է պատմական ավանդույթների վրա։ ՍՍՀՄ-ը և Ֆրանսիան ընդհանուր շահերի լայն բնագավառ ունեն։ ՍՍՀՄ-ի և Ֆրանսիայի քաղաքական համագործակցությունը ներկայումս ամուր հիմքերի վրա է դրված։ Սովետա-ֆրանսիական համագործակցությունը կարևոր նշանակություն ունի Եվրոպայում միջազգային անվտանգությունն ամրապնդելու գործում։

Եվրոպայում իրադրությունը կայունացնելու էական գործոն հանդիսացավ պայմանագրերի կնքումը ՍՍՀՄ-ի և Գերմանական Ֆեդերատիվ Հանրապետության, Լեհական Ժողովրդական Հանրապետության և Գերմանական Ֆեդերատիվ Հանրապետության միջև, որոնց հիմքում դրված է Եվրոպայում ներկայումս գոյություն ունեցող սահմանների անխախտության ընդունումը, իրավահավասար և փոխադարձաբար շահավետ հարաբերությունների զարգացման պատրաստակամությունը։ Այդ փաստը ամբողջ ուժով ընդգծվեց ՍՄԿԿ XXIV համագումարում։ Սովետական Միությունը, սոցիալիստական մյուս երկրներն առաջարկում են համաեվրոպական խորհրդակցություն գումարել Եվրոպայի անվտանգության հարցերի վերաբերյալ։ Այս նախաձեռնությունը լայն արձագանք գտավ Եվրոպայի ժողովուրդների կողմից։ Եվրոպայի մի շարք երկրներում կազմված են կոմիտեներ, ասոցիացիաներ և նախաձեռնող խմբեր, որոնք ձգտում են նպաստելու լարվածության թուլացմանը Եվրոպայում։ Սովետական Միությունում հասարակական կազմակերպություններն ստեղծել են Եվրոպայի անվտանգության համար պայքարող Սովետական կոմիտե։ Համաեվրոպական խորհրդակցության գումարմանը դրականորեն են անդրադարձել նաև Եվրոպայի գրեթե բոլոր երկրների կառավարական շրջաններում։ Այդպիսի խորհրդակցության գումարմանը դեմ են միայն ԱՄՆ-ը և Արևմտյան Եվրոպայի ռեակցիոն շրջանները, բայց նրանք էլ վերջին ժամանակներս, մի շարք հանգամանքների ճնշման և Սովետական Միության ակտիվ քաղաքականության ազդեցության տակ, հարկադրված են խոսել սոցիալիզմի երկրների հետ բանակցություններ վարելու իրենց պատրաստակամության մասին, ընդունել միջազգային լարվածությունը թուլացնելու առաջարկը։



Սովետական Միությունը և մյուս սոցիալիստական երկրները Եվրոպայում կոլեկտիվ անվտանգություն ստեղծելու՝ խաղաղությանն ապավինելու համար առաջարկում են չեղյալ հայտարարել Վարշավայի պայմանագիրը և հյուսիս-ատլանտյան դաշինքը, և որպես առաջին քայլ՝ վերացնել դրանց ռազմական կազմակերպությունները։ Սովետական Միությունը վերջերս առաջարկեց քննարկել Եվրոպայում գտնվող զինված ուժերը և սպառազինությունները կրճատելու հարցերը։

ՍՍՀՄ-ն միաժամանակ գտնում է, որ համաեվրոպական խորհրդակցության գումարումը ճանապարհ կհարթի ամբողջ մայրցամաքի մասշտաբով տնտեսական ու գիտա-տեխնիկական լայն համագործակցության, միջցամաքային փոխադրումներ կազմակերպելու, էլեկտրահաղորդման հզոր գծերի շինարարության, եվրոպական միասնական էներգետիկ սիստեմ ստեղծելու համար։

Եվրոպայում խաղաղությունն ու անվտանգությունն ապահովելու հարցերի վերաբերյալ Սովետական Միության և մյուս սոցիալիստական երկրների առաջարկությունը, ինչպես նաև Արևմտյան Բեռլինի հարցի շուրջ համաձայնության գալու գործում Սովետական Միության ջանքերը կոնստրուկտիվ հիմք ստեղծեցին եվրոպական արդեն վաղուց հասունացած և ցավոտ պրոբլեմների դրական լուծման համար։

ԱՐԴԻԱԿԱՆՈՒԹՅԱՆ ամենահրատապ միջազգային պրոբլեմը երկրի վրա խաղաղությունը պահպանելու և ամրապնդելու պրոբլեմն է։ Ինչպես հայտնի է, հետպատերազմյան ժամանակաշրջանում աշխարհում տեղի ունեցավ գիտատեխնիկական հեղափոխություն, որի շնորհիվ կատարվեցին գիտատեխնիկական խոշոր հայտնագործություններ։ Այդ հեղափոխությունը նոր դարագլուխ բացեց նաև ռազմական տեխնիկայի զարգացման ասպարեզում։ Երևան են եկել պատերազմ մղելու նոր, հզոր միջոցներ, հրթիռային և միջուկային զենքը։

Իմպերիալիզմը, որը պատերազմների գլխավոր և միակ պատճառն է, հարյուրավոր միլիարդ դոլարներ է ծախսում հրթիռային և ջերմա-միջուկային զենքի արտադրության համար։ Միայն ԱՄՆ-ը հրթիռային-միջուկային զենք ստեղծելու համար արդեն ծախսել է ավելի քան 550 միլիարդ դոլար։ ԱՄՆ-ում և կապիտալիզմի մյուս երկրներում մեծ մասշտաբներով արտադրվում ու կուտակվում են մարդկանց մասսայական ոչնչացման բիոլոգիական-քիմիական և այլ տեսակի զենքեր։ Աշխարհի պետությունները ռազմական նախապատրաստության համար տարեկան ծախսում են ավելի քան 200 միլիարդ դոլար։ Գիտնականների հաշվարկումներով ներկայումս ռազմական զինանոցներում կուտակված է հսկայական քանակությամբ ջերմա-միջուկային զենք, որի գործադրումը պատերազմի դեպքում կսպանի հարյուրավոր միլիոն մարդկանց, ավերակ ու մոխիր կդարձնի համաշխարհային քաղաքակրթության ու կուլտուրայի գանձերը։

Իմպերիալիզմը հույսը դրել է պատերազմի վրա։ Եթե կռիվը բռնկի, այն անխուսափելիորեն կվերածվի հրթիռային-միջուկային պատերազմի, որն անհամար աղետներ կբերի մարդկությանը։ Այդ պատճառով էլ պատերազմի և խաղաղության պրոբլեմները, որոնք շոշափում են հարյուրավոր միլիոն մարդկանց կենսական շահերը, միշտ էլ գտնվել և գտնվում են ՍՄԿԿ և Սովետա-

*կան կառավարության ուշադրության կենտրոնում։ Խոսքը վերաբերում է մարդկությանը նոր համաշխարհային պատերազմից փրկելուն։*

*Սոցիալիզմի համաշխարհային սիստեմի գոյության շնորհիվ այժմ միջազգային բարենպաստ պայմաններ են ստեղծվել համաշխարհային նոր պատերազմի սպառնալիքը կանխելու և ամբողջ աշխարհում տևական ու կայուն խաղաղություն ապահովելու համար։ Սովետական Միությունը և սոցիալիզմի մյուս երկրները ներկայումս տնտեսական և ռազմական հզոր պոտենցիալ ունեն և ամբողջությամբ վերցրած ռազմական կարողության տեսակետից չեն զիջում իմպերիալիզմին։ Իմպերիալիզմն անկարող եղավ ռազմատեխնիկական գերազանցության հասնելու սոցիալիստական երկրների նկատմամբ, բայց շարունակում է մնալ պատերազմի սպառնալիքի պոտենցիալ աղբյուր։*

*Մարդկությունը նոր պատերազմի սպառնալիքից, ռազմական նպատակներով վիթխարի անմիտ ծախսերից փրկելու և աշխարհի ժողովուրդների համար տևական ու կայուն խաղաղություն ապահովելու նպատակով խաղաղության ծրագրում արվում են մի ամբողջ շարք առաջարկություններ, որոնց ընդունումն ու կենսագործումը վճռականորեն կառողջացներ միջազգային իրադրությունը և կկանխեր նոր, համաշխարհային պատերազմը։ Սովետական Միությունն առաջարկում է կնքել պայմանագիր, որն արգելք դներ միջուկային, բակտերիոլոգիական, քիմիական զենքի վրա և ոչնչացներ եղած պաշարները, ամենուրեք և բոլորի կողմից դադարեցվեին միջուկային զենքի փորձարկումները, զգալիորեն կրճատվեին ռազմական ծախսերը, վերացվեին արտասահմանյան ռազմական բազաները, լուծարվեին ռազմական բլոկները։ ՍՍՀՄ-ն առաջարկում է գումարել զինաթափման համաշխարհային կոնֆերանս, ինչպես նաև միջուկային հինգ պետությունների՝ ՍՍՀՄ-ի, ԱՄՆ-ի, Անգլիայի, Ֆրանսիայի, Չինաստանի կոնֆերանս՝ միջուկային զինաթափման վերաբերյալ։ Սովետական Միությունն, այնուհետև առաջարկում է բոլոր բնագավառներում խորացնել և ընդլայնել փոխադարձաբար շահավետ համագործակցությունն այն պետությունների հետ, որոնք ձգտում են այդ բանին։*

*Խաղաղության պահպանման իսկական ակտ է այս տարվա օգոստոսին Դելիում ստորագրված սովետա-հնդկական պայմանագիրը։ Վերջինս ոչ-ոքի դեմ չի ուղղված և ՄԱԿ-ի կանոնադրությանը համապատասխան կոչված է դառնալու պետությունների միջև բարեկամության և բարիդրացիական հարաբերությունների զարգացման գործոն։*

*Այսպիսով, Սովետական Միությունն առաջարկում է խաղաղության կուրս, միջուկային բոլոր պրոբլեմների խաղաղ կարգավորում, բոլոր երկրների հետ համագործակցության ընդլայնում։ Խաղաղության և անվտանգության տվյալ ծրագիրը համապատասխանում է բոլոր ժողովուրդների արմատական շահերին։ Այդ ծրագիրը խոր ըմբռնում և պաշտպանություն գտավ բոլոր մայր ցամաքների պրոգրեսիվ հասարակայնության կողմից, դրական արձագանք գտավ կապիտալիստական մի շարք պետությունների կառավարող շրջաններում։ Սակայն Արևմուտքում կան ուժեր, որոնք արգելքներ են ստեղծում միջազգային լարվածությանը թուլացնելու ճանապարհին։*

*Հաղթահարելով միջազգային ասպարեզում որոշ դժվարություններ, Սովետական Միությունը շարունակում է իր ձեռքում ամուր պահել քաղաքական ու դիվանագիտական նախաձեռնությունը, անդուլ պայքար մղում խաղաղության պահպանման գործում։*

---

# ՄԵՐ ՀՐԱՊԱՐԱԿՈՒՄՆԵՐԸ

## ՍՏ. ՇԱՀՈՒՄՅԱՆԻ ՆՈՐԱՀԱՅՏ ՀՈԴՎԱԾԸ

«Լենինյան ուղիով» հանդեսի 1970 թվականի հուլիսյան համարում լույս տեսան Ստ. Շահումյանի «Новое обозрение» թերթում 1901 թվականի սեպտեմբեր-նոյեմբեր ամիսներին հրատարակված «Խոհեր: Ճանապարհին», «Որոշ բան կյանքից և կյանքի մասին» հոդվածները: Այդ առթիվ գրած մեր մեկնաբանության մեջ ասված էր. թերթի համարը տպագրության թույլ տալու պահին գրաքննիչը «Новое обозрение»-ի 1901 թվականի հուլիսի 13-ի համարից հանել է Ս. Սեմյոնովի [Ստ. Շահումյանի] «Տնտեսական ուրվագծեր և նոթեր» հոդվածը, այն որակելով «Վտանգավոր և տենդենցիոզ»: Վրացական ՍՍՀ Պետական կենտրոնական արխիվում (ֆ. 430, ց. 1, գ. 1689, թ. 100) պահվում է այդ հոդվածը, որն ստորև առաջին անգամ հրապարակվում է հայերեն:

Ստ. Շահումյանն իր հոդվածում, որը գրել է 70 տարի առաջ, քաղվածքներ է բերում Կ. Մարքսի «Կապիտալ»-ից և Վ. Ի. Լենինի «Կապիտալիզմի զարգացումը Ռուսաստանում» աշխատությունից, լենինյան բարձրակետից լուսաբանում կապիտալիզմի զարգացման պրոցեսը, ընդգծելով բանվոր դասակարգի առաջատար դերը հասարակության զարգացման գործում:

Հոդվածը որոշակի հետաքրքրություն է ներկայացնում կապիտալիզմի գենեզիսի պրոբլեմներով զբաղվող պատմաբանների և տնտեսագետների համար, հարստացնում Ստ. Շահումյանի գրական ժառանգությունը:

Պրոֆեսոր Խ. Հ. ԲԱՐՍԵՂՅԱՆ

## ՏՆՏԵՍԱԿԱՆ ՈՒՐՎԱԳԾԵՐ ԵՎ ՆՈԹԵՐ

1

— Կա՛նգ առ, արև: Եվ արևը կանգ առավ:

— Կա՛նգ առ, կապիտալիզմ: Եվ «կապիտալիզմը» երբեմն նույնպես կանգ է առնում:

Արևի հետ հետաքրքիր դիպվածը տեղի է ունեցել շատ վաղուց, և այդ ժամանակից ի վեր արևը, ինչպես հայտնի է, անդուլ կերպով շարունակում է իր օգտակար գործը: Կապիտալիզմը նույնպես. նրա կանգառները, թեկուզև տևական, ամենևին էլ ոչինչ չեն ասում նրա հետագա զարգացման հնարավորության դեմ, և ժամանակակից «Հեսու Նավեները» բոլորովին իզուր են ուրախանում, մատնացույց անելով ճգնաժամները՝ որպես կապիտալիզմի անկայունության ապացույց:

Բայց բանը դրանում չէ, բանն այն չէ, թե հիմք կա՞ արդյոք խոսելու մեր կապիտալիզմի «անկենդանության» մասին, այլ այն, թե իմաստ ունի ուրախանալու այն հանգամանքի առթիվ, որ այդ կապիտալիզմը թույլ է զարգանում, և իմաստ ունի, արդյոք ցանկալու, որ նրա զարգացումը կանգ առնի: Անձամբ մենք այդ հարցին բացասաբար կպատասխանեինք: Մենք կարծում ենք, որ «մենք տառապում ենք ոչ միայն կապիտալիստական արտադրության զարգացումից, այլև նրա անբավարար զարգացումից» հայտնի աֆորիզմը միանգամայն արդարացի է և մեր տնտեսական կյանքի լավագույն բնութագրումն է: Բոլորովին էլ հարկ չկա անպայման «արևմտական» լինել այս բանն ընդունելու համար, որ մեր ամբողջ հասարակական կյանքը անհամեմատ շատ է ետ մնացել արևմտաեվրոպական կյանքից և որ դրա միակ պատճառը մեր երկրի արտադրողական ուժերի ծայրահեղ թույլ զարգացումն է, ոչ այլ ինչ, քան հենց կապիտալիզմի անբավարար զարգացումը:

Շուլցե-Գևեռնիցն ասում է. «Խոշոր արտադրություն»— կամ, արտադրություն և ձեռնարկություն հասկացությունների այն շփոթումից խուսափելու համար, որ թույլ են տալիս Կ. Մարքսն ու մյուս տնտեսագետները և որին հակառակ Վ. Զոմբարտն առաջադրել է ավելի խիստ դասակարգում, այդ արտահայտությունը փոխարինելով կապիտալիստական տնտեսության ավելի հարմար արտահայտությամբ, ինքնին նշանակում է «սոցիալական առաջադիմություն», որը կատարվում է «մեկ միավոր արդյունքի վրա աշխատանքի ծախսումների նվազման, աշխատավարձի բարձրացման և աշխատօրվա նվազման պայմաններում»: Քննադատների մեծ մասը, ինչպես հայտնի է, Շուլցե-Գևեռնիցին վերաբերվում է իբրև կապիտալիզմի բուրժուական ջատագովի: Բայց մեզ թվում է, որ նրա նկատմամբ ամենաանբարյացակամ վերաբերմունքի դեպքում անգամ անհրաժեշտ է ընդունել նրա առաջադրած դրույթի լիակատար արդարացիությունը: Ռուսաստանի վերաբերմամբ Շուլցե-Գևեռնիցը այն ապացուցում է մի ամբողջ շարք փաստերով:

Կապիտալիզմը, անտարակույս, առաջադիմական ուժ է և նրա յուրաքանչյուր քայլն ինքնին նշանակում է մերձենալ տնտեսական ու հասարակական կյանքում այն առաջադիմական սկզբունքների մարմնավորմանը, որոնց հաճախ միանգամայն ապարդյուն ձգտում են կապիտալիզմի գաղափարական հակառակորդները: Կապիտալիզմի զարգացումն ուղեկցվում է ամենից առաջ երկրի արտադրողական ուժերի վերելքով, որը դրսևորվում է ինչպես արտադրության տեխնիկայի վերափոխությամբ ու բարելավմամբ, այնպես էլ «կիրառվող ու սպառվող կապիտալի միջև»* տարբերության աճմամբ, որ մեր արտադրության տեխնիկան կապիտալիզմի աստիճանական զարգացման հետ հետզհետե բարելավվում է և որ այդպիսի բարելավումը ինքնին նշանակում է իրոք առաջադիմության սկիզբ. դրանում ոչ մի կասկած չկա և չի կարող լինել: Խոշոր գործարանային արտադրությունը ինքնին նշանավորում է լիակատար հեղաշրջում մինչ այն գոյություն ունեցող «արտադրողական վիճակներում» և այդ «արտադրողական վիճակների» փոփոխման յուրաքանչյուր քայլը անհրաժեշտաբար ուղեկցվում է նաև «արտադրական հարաբերությունների» բարելավմամբ: Որքան ավելի խոշոր է արտադրությունը, որքան նրա մեջ ավելի են մարմնավորվում կապիտալիստական տնտեսության բա-

* «Капитал» т. I, стр. 509.



կզբունքները, այնքան ավելի լավ է բանվորի դրությունը: Դա անվիճելի դրույթ է և այն ընդունելու համար բոլորովին հարկ չկա կապիտալիզմի բուրժուական ջատագով լինել: Արդյունաբերական բանվորի բարեկեցությունը անհամեմատ ավելի բարձր է ինքնուրույն տնտեսագետ-հողագործից: Վ. Իլյինի արդարացի բնութագրությամբ «մանուֆակտուրայի աշխատողը հողագործ գյուղացու վրա նայում է արդեն վերևից» («Կապիտ. զարգ.», էջ 453, ռուս հրատ.): Անգամ գյուղական բանվորները, որոնք գտնվում են կապիտալիզմի «կործանարար» ազդեցության տակ, ավելի լավ պայմաններում են գտնվում գյուղացիության ստորին և որոշ դեպքերում նույնիսկ միջին տնտեսական խմբերի համեմատությամբ:

Կապիտալիզմի էլ ավելի կարևոր հետևանքն է հանդիսանում այսպես կոչված «արտադրողական սպառման» ուժեղացումը «անձնական սպառման» համեմատությամբ: Հավելյալ արժեքի մեծությունը, ինչպես հայտնի է, ավելի բարձր, կամ ցածր է լինում՝ կախված աշխատող ձեռքերի այն թվից, որ հնարավորություն ունի շահագործելու որոշակի մեծություն ունեցող կապիտալը: Հետևաբար, որքան ավելի մեծ է կապիտալը, այնքան ավելի բարձր է հավելյալ արժեքի մեծությունը, իսկ քանի որ կապիտալիստի անձնականսպառողական ունակությունը սահմանափակ է, ապա «տեղի է ունենում հավելյալ արժեքի կապիտալացում, կուտակում («Կապիտալ» 2, էջ 239, ռուս. հրատ.) և ընդլայնված վերարտադրություն»:

Կապիտալիզմը նաև աշխատող ձեռքերի խմբավորման միջոց է՝ տարանջատ արտադրողներին մեկ խոշոր արտադրության մեջ կենտրոնացնելու միջոցով: Այդ կերպ ստացվող աշխատանքի հանրայնացումը ավելի հազվադեպ արտահայտվում է և նրանով, որ այստեղ արտադրվող արդյունքների սպառողը հանդիսանում է ոչ թե մեկ որոշակի անձ, ինչպես բնատնտեսության մեջ (ինքը՝ արտադրողը), այլ ամբողջ հասարակությունը՝ մարդկային շուկան:

Կապիտալիզմի առաջադիմական դերը առանձնապես ուժգին է դրսևորվում բնակչության զգալի տեղաշարժերի և արդյունաբերական խոշոր կենտրոններում՝ կուլտուրականության աղբյուրներում կենտրոնանալու մեջ: Ինչպես հայտնի է, քաղաքային բնակչության աճը զգալիորեն գերազանցում է գյուղական բնակչության աճին, ընդ որում առավել ուժեղ զարգացած արդյունաբերություն ունեցող քաղաքներում այդ աճը առանձնապես արագ է կատարվում:

Բայց կապիտալիզմի ամենակարևոր, անպայման առաջադիմական նշանակությունը դրսևորվում է այն բանում, որ նա կարգավորում է, այսպես ասած, սոցիալական կյանքը, որի բոլոր տարրերը, նրա ազդեցության տակ իրար հետ մտնում են ավելի որոշակի հարաբերությունների մեջ: Զարգացած կապիտալիզմը գործում է չափազանց համարձակ, անողոքաբար քայքայելով հասարակական այն բոլոր արհեստական միջնորմները, որոնք կարող էին որոշ նշանակություն ունենալ միայն հին տնտեսական կազմակերպության ժամանակ: Նա հասարակությանը տրոհում է առանձին տարրերի և նրանց իրար հետ դնում այնպիսի փոխհարաբերությունների մեջ, որոնք որոշվում են նրանց ուղղակի տնտեսական շահերով ու պահանջմունքներով, դասային խմբավորման փոխարեն նա ասպարեզ է հանում ավելի կենսական, որոշակի խստորոշ տնտեսական խմբավորումը:

Կապիտալիստական տնտեսությունը և հատկապես նրա զարգացման

բարձրագույն ստադիան՝ խոշոր մեքենայական ինդուստրիան, բարձրացնելով հասարակական աշխատանքի արտադրողականությունը, նպաստելով ժողովրդական հարստության բազմապատկմանը, զարգացնող ազդեցություն է գործում նաև հասարակական հոգեբանության վրա, տրոհելով և կոմբինացնելով հասարակությունը, ճշտիվ որոշելով հասարակական զանազան տարրերի կենսական շահերը և նպաստելով դրանց ռեալ պաշտպանությանը...

Մենք, իսկն ասած, բոլորովին նկատի չենք ունեցել ներկա թռուցիկ հոդվածում տալու կապիտալիզմի լրիվ բնութագիրը և նրա նշանակությունը տնտեսական և հասարակական կյանքի համար, նշելով միայն այդ հարցի մի քանի կետերը: Նմանապես մենք չենք ուզում ասել, որ կապիտալիզմը անպայման լուսավոր— առանց սև բծերի մի երևույթ է: Բայց մենք կապիտալիզմի «սկզբունքային» հակառակորդների նման չենք կարծում, որ այն մի բացարձակ չարիք է և այն հարցին, թե ցանկալի է արդյոք նրա զարգացումը, կտրականապես կպատասխանեինք՝ այո:

Եթե մեր սեփական կապիտալները չեն բավականացնում, մենք, մեր կարծիքով, ծայրահեղ դեպքում, պետք է ջանանք ներգրավել օտարերկրյա կապիտալներ և բոլոր ուժերով նպաստել դրանց կամավոր ներհոսին, որովհետև մեզ համար վերջիվերջո կարևոր են ոչ թե իրենք՝ կապիտալները, այլ այն խոր, նորացնող ազդեցությունը, որ նրանք գործում են հասարակական և սոցիալական կյանքում,— կարևորը ոչ թե կապիտալն է՝ որպես արտադրության տնտեսական գործիք, այլ կապիտալիզմը՝ որպես հասարակական առաջադիմական ուժ...

Ս. ՍԵՄՅՈՆՈՎ


## РЕЗЮМЕ

В предисловии, написанном нами по поводу статей Ст. Шаумяна, опубликованных в газете «Новое обозрение» за сентябрь—ноябрь 1901 г., изданных в июльском номере журнала «Ленинян угиов» за 1970 г., было сказано: «В момент разрешения на издание номера от 13 июля 1901 г. цензор снял из «Нового обозрения» статью С. Семенова [Ст. Шаумян] «Экономические наброски и заметки», считая их опасными и тенденциозными». В Государственном архиве Груз. ССР (ф. 430, оп. I, д. 1689, лист 100) хранится эта статья, которая нами впервые публикуется на армянском языке.

Ст. Шаумян в своей статье приводит выписки из «Капитала» К. Маркса и трудов В. И. Ленина «Развитие капитализма в России», с ленинской точки зрения освещая процесс развития капитализма, подчеркивая передовую роль рабочего класса в деле развития общества.

Статья, которую Ст. Шаумян написал 70 лет тому назад под влиянием трудов В. И. Ленина «Экономические этюды и статьи» и «Развитие капитализма в России», представляет несомненный интерес для историков и экономистов, занимающихся проблемами генезиса капитализма, обогащает литературное наследие Ст. Шаумяна.




# ՆՈՐ ՔԱՂԱՔՆԵՐ

## ՀՐԱԶԴԱՆԻ ՀՈՐԻԶՈՆՆԵՐԸ

### ԼՈՒՅՍԻ՛ ՀԱՅՐԵՆԻՔ

Ռուսական փոքրիկ մի ջրաղաց, ու դրանով բանող մի գեներատոր. ահա Ախտայի շրջանի էլեկտրաէներգիայի միակ աղբյուրը մինչև 1949 թվականը: Իսկ այդ տարվանից Սևան ՀէԿ-ը բազում լույսեր վառեց նաև Հրազդանում:

Մեքենան մեզ տանում է Հրազդանի ջերմաէլեկտրակայանը՝ ՋէԿ-ը, որի չորս ագրեգատներից երկուսն ունեն 50, մյուս երկուսը՝ 100 հազարական կվտ. հզորություն: Գործարկվել է այն 1969 թ.: Հույն է հերթափոխային ինժեները՝ Զուռնաջի Վյաչեսլավը. արդեն երկու տարի է, ինչ աշխատում է այստեղ:

— Երբ ավարտեցի Տաշքենդի էներգետիկայի ինստիտուտը, աշխատանքի նշանակվեցի Ուզբեկստանի էներգետիկայի ինստիտուտում,— պատմում է ՋէԿ-ի կուսկազմակերպության քարտուղար Մուրադով Աբրիկը՝ Լեռնային ղարաբաղցի այդ հայ երիտասարդը,—բայց ինձ հետաքրքրում է կենդանի կառույցը. և, իմանալով այս նոր հսկայի մասին, խնդրեցի ուղարկել ինձ այստեղ ու գոհ եմ դրա համար:

ՋէԿ-ի բակում, հսկա խողովակներում կատարվում է ջրի քիմիական մաքրումը. ջուրն առանց նստվածքի պետք է մտնի ագրեգատները, որպեսզի չխափանվեն օրական 5 մլն 600 հազար կվտ-ժամ էլեկտրաէներգիա արտադրող ագրեգատները:

— 1956—70 թթ. Հայաստանում էլեկտրաէներգիայի արտադրությունն ավելի քան կրկնապատկվեց և անցավ 6 մլրդ կվտ-ժամից,— ասել է ՍՍՀՄ էներգետիկայի և էլեկտրիֆիկացիայի մինիստրը:

Հայաստանի էլեկտրաէներգիայի կեսից ավելին Հրազդանն է տալիս: Իսկ ՋէԿ-ը մի մասն է կազմում Հրազդանում կառուցվող էլեկտրաէներգետիկայի հսկայի՝ պետական շրջանային էլեկտրակայանի (ՊՇէԿ-ի), որի նախագիծը կազմել է Ռոստովի նախագծային ինստիտուտը: 1970 թ. հրազդանցիներն ստացան Լենինգրադի «էլեկտրոտյաժմաշ» գործարանի նոր տարվա նվերը՝ 200 հազար կվտ հզորությամբ շոգետուրբինը: Իսկ մեկ տարի անց լեռնահովտում փորձարկվեց ՊՇէԿ-ի առաջին բլոկը, որի կաթսան ունի 640 տ. գոլորշի-ժամ կարողություն: Բայց չէ՞ որ գոլորշին ևս ջուր է և չպետք է կորչի ջրասակավ Հայաստանում: Այս անգամ օգնության հասան հունգարացիները:

ՊՇէԿ-ին չհասած, դեռ շատ հեռվից, արծաթին է տալիս երկաթյա, ալյումինե երեսպատմամբ հովացման 70 մետրանոց աշտարակը՝ վերնամասում կարմիր գոտիով. գոտի, որովհետև աշտարակի բարձրությունը հասնելու է 120 մետրի: Իր մետաղյա ինքնատիպ կառուցվածքով այն առաջինն է աշխարհում: Որտեղ էլ օգտագործվի այս էլեկտրակայանի էներգիան, ամենուրեք երախտագիտությամբ կհիշեն աշտարակը մոնտաժող հունգարներին և նրանց ղեկավար՝ Յանոշ Բողոշին, որ ինտերնացիոնալ այս կառույցում այնպես սրտացավ, բարեխղճորեն են կատարել իրենց գործը:

Հրազդանի ՊՇէԿ-ն ունենալու է 6 ագրեգատ՝ 1 մլն 200 հազար կվտ-ժամ հզորությամբ. ավելի հզոր, քան ատոմայինը: Եվ երբ լրիվ գործարկվի այն, Հայաստանը կունենա բավարար էլեկտրաէներգիա:

Դիսպետչերական խորհրդակցություն է՝ նվիրված ՊՇէԿ-ի փորձարկմանը:

— Զապայն այստեղ է, ամեն ինչ լավ կլինի,— նորածնին սպասող նոր անհանգստու-

տադրամասերի պետեր, վարպետներ, տեխնոլոգներ, գլխավոր ինժեներ Գրիգոր Հովնանյանը... Նոր կոմբինատի ղեկավարությունն է ստանձնում հանրապետության ճանաչված ղեկավար մասնագետը՝ Քաջարանի մոլիբդենի կոմբինատի դիրեկտոր Հմայակ Սահակյանը. լեռների անդավաճան այդ սիրահարը, Մոսկվայի լեռնային ինստիտուտն ավարտելուց հետո, ելել է սարերն հայրենի, կազմակերպել, ղեկավարել հանքերի շահագործումը, արժեքավոր, թանկագին նյութերի ստացումը: Տարեց, երիտասարդական եռանդով, ամենուր հարգված ինժեները Լենինի շքանշանակիր է:

Կառուցող, շինարար ձեռքեր են պետք, ու գալիս են Միության տարբեր մասերից:

— Իսկ հրազդանցին գնում էր՝ կառուցելու, բանելու Կուբանում, Ղազախստանում:

Կուսակցության Հրազդանի շրջկոմի խելացի ու բանիմաց միջոցառումների շնորհիվ լուծվեց բանվորական ուժի հարցը: Հրազդանցիներն ամենուր լծվեցին մեծ կոմբինատի կառուցման հայրենանվեր գործին: Տասը տարի անց շահագործման հանձնվեց ցեմենտի արտադրության առաջին հերթը՝ տարեկան 600 հազար տոննա ցեմենտի արտադրողականությամբ:

— Կոմբինատի կառուցումը վերջից ենք սկսել. ինչպես գիտեք՝ ցեմենտը վերջին արտադրանքն է, որ ստացվելու է նեֆելինային սիենիտների կոմպլեքսային մշակման խառամից: Բայց այժմ ցեմենտ է պետք մեր շրջանին, հանրապետությանը, դրա համար էլ ցեմենտից ենք սկսել,— պատմում է գլխավոր ինժեներ Հովնանյանը,— իսկ հումքն առայժմ ստանում ենք Արարատից:

Հրազդանի կուսշրջկոմի արդյունաբերական բաժնի երիտասարդ վարիչի՝ Ռաֆայել Աբրամովի հետ մեկնում ենք ԼՔԿ: Դեռ հեռվից երևում է վիթխարի աշտարակ-խողովակից ելնող սպիտակ, թանձր փոշին— ցեմենտի փոշին ու տարածվում լեռների, անտառների, ողջ շրջակայքի վրա:

— Փոշին որոշ ժամանակ կուլ կտանք, բայց հետամնացության հետ չենք հաշտվի: Սարքի կգցվեն էլեկտրաֆիլտրերը և այդպես չի լինի:

Ջրառատցի է կոմբինատի կուսկազմակերպության քարտուղարը՝ Մյասնիկ Գասպարյանը. միջահասակ, շիկահեր, խելացի, նուրբ հումորով, մարդամոտ: Կուսակցական, հասարակական աշխատանքի երկարամյա փորձ ունի նա և լավ է հասկանում, թե որքա՞ն պատասխանատու է իր գործը լեռնահովտի այս հսկա կառույցում, ուր տարբեր ազգերի բանվորների թիվը հազարից ավելի է: Ահա թե ինչու և՛ նա, և՛ դիրեկտորը, և՛ արհմիութենական կազմակերպության քարտուղար Մաքսիմ Ներսիսյանը (Աթարբեկյան ՀէԿ-ի լավագույն բուլդոզերավարն էր նա, որի համար և արժանացել է Լենինի շքանշանի) ջանում են այդ կոլեկտիվը ղեկավարել սերտորեն համագործակցած, փոխըմբռնողությամբ:

Աշխատողների մեծ մասը ջահելներ են, կոմերիտականներ, և հոգսերն ու անելիքները շատ են կոմերիտական կազմակերպության կոմունիստ քարտուղար Սերյոժա Սիմոնյանի: Բանակից վերադառնալուց հետո աշխատում է այստեղ, ղեկավարում երիտասարդությանը և սովորում է Հրազդանի արդյունաբերական տեխնոլոգիական տեխնիկումում:

— Շատ դժվարություններ են հաղթահարվել, բայց ամենակարևորը մեզ համար եղել և մնում է մասնագետ կադրերի համալրումը: Բնակարանային հարցի լուծումը մեծ չափով կդյուրացնի այդ գործը,— պատմում է Մյասնիկ Գասպարյանը.— Քառսուն հոգու ուղարկել ենք Նովոռոսիյսկի, Խարկովի, Բալակլեյի, Արարատի, Կիրովաբադի ցեմենտի գործարանները՝ որակավորվելու: Տեղում ևս կազմակերպում ենք անհատական ու խմբակային ուսուցում: Պատրաստվել ենք այնպես անել, որ հինգից մեկը մեզ մոտ ստանա երկրորդ մասնագիտություն:

Լավ է կազմակերպված այստեղ աշխատողների առողջապահության գործը: Բավարարվում է ուղեգրերի մեծ պահանջը, տրվում է հատուկ սնունդ, մատակարարումը ևս ՕՐՍ-ի միջոցով կազմակերպվում է ինչպես հարկն է: Իսկ Աղավնաձորի պրոֆիլակտորիումում մշտապես հանգստանում են կոմբինատի բանվորներն ու ծառայողները:

Ապա Գասպարյանը ծանոթացնում է աշխատանքային հերոսներին: Որքա՜ն շատ են նրանք: Ահա ցեմենտի արտադրամասի կոնկավար, կուսկազմակերպության քարտուղար, «Պատվո նշան» շքանշանակիր Սարիբեկ Խաչատրյանն՝ իր ընտանիքով. լիցքավորող բանվորուհի է նրա կինը՝ քաղաքային սովետի դեպուտատ Անժիկ Առաքելյանը. կոնկավար է որդին՝ արտադրամասի ագիտատոր Էդվարդը. նա միաժամանակ սովորում է Երևանի պետական համալսարանի տնտեսագիտական ֆակուլտետում: Իսկ մյուս որդին՝ Ռոբերտը, ավարտել է Չարենցավանի մեքենաշինական տեխնիկումը և կոմբինատի սարքավորումների բաժնի ավագ ինժեներն է: Աղջիկը՝ Ժաննան, ավարտել է Արարատի ցեմենտի գործարանի ֆիմփորձարկման դասընթացները, այժմ աշխատում է կոմբինատի լաբորատորիայում: Հինգ հոգի միայն մի ընտանիքից...

Հապա մյուսնե՞րը... Պտտվող վառարանների մեքենավար, ՀԿԿ XXV, ՍՄԿԿ XXIV համագումարների պատգամավոր, Հայաստանի կոմկուսի Կենտկոմի անդամ Օրարի Գյուլխասարյանը, մեքենավարներ՝ Գենադի Ռստոյաժանին, Ալեքսանդր Կախոմովը, չորացման արտադրամասի մեքենավարներ՝ Դավիթ Դանիելյանը, Վլադիմիր Վոլկովը և շատ ուրիշներ, որոնց մի մասը շքանշանակիր է, մի մասը քաղաքային սովետներում մասնակցում է իր քաղաքի շենացմանն ու բարգավաճմանը, արդյունաբերական խոշոր կենտրոն դառնալուն:

Վիթխարի չորաղացների, բացաղացների, պտտվող վառարանների, ֆիլտրերի խլացուցիչ աղմուկում նայում ես փոշեծածկ հոնքերի տակ ծվարած սև, լուրթ ու խաժ աչքերին, վառարանների ջերմությունից, համեստությունից շիկնած ջահելներին և ավելի ու ավելի համոզվում, որ ողջ գեղեցիկն այստեղ է, տրոփող կյանքում, աշխատանքի մարդկանց ազնիվ ձգտումներում ու նվիրումներում... Եվ երկարակյաց հսկայի կողքին այդ մարդիկ էլ, թեկուզ մարմնով փոքր, բայց մեծանում են, հսկայանում...

— Կգա մի օր՝ այդ փոշին էլ կօգտագործենք. իսկ հիմա մոխրագույն ենք հագնում, որ մեզ վրա նստած փոշին չերևա,— մտորումներս ընդհատում է Գասպարյանը:

— Իսկ ի՞նչ է արվում այս ահավոր աղմուկից ազատվելու համար:

— Փոշու վերացնելն է կարևորը, աղմուկը ոչինչ, երբ ավարտվի կոմբինատի կառուցումը, այսքան շատ մարդիկ չեն լինի այստեղ. կգործի կառավարման վահանը, և մարդը շատ հեռու կլինի աղմուկից. ամեն ինչ կավտոմատացվի,— պատասխանում է նա և առաջնորդում մեզ կենցաղային օբյեկտը, ուր ճաշարանն է, լողարանները:— Ահա և մեր ակումբը, ուր կազմակերպվում են մասսայական բոլոր միջոցառումները. զանազան պարապմունքներ, կինոսպասարկում, երեկույթներ, հանդիպումներ...

— Մեր Հրազդանը դառնում է արդյունաբերական խոշոր քաղաք. դրա հետ մեկտեղ մարդու բնավորության մեջ երևան են գալիս նորանոր գծեր. կոլտնտեսականը, գյուղացին բանվոր են դառնում, քաղաքացի. չէ՛ որ գործարանը միայն շենքի կառուցումը չէ, կարևորը մարդիկ են, նրանց հարաբերությունները: Իսկ բնավորության նոր գիծը նոր տուն չէ, որ անմիջապես երևա (և ես հիշեցի՝ ինչպես հրազդանցին զարմացավ, դժվարությամբ հաշտվեց կինոյի տոմսը հերթով վերցնելու մտքին)...

Դժվարությունները ևս շատ են. չորսհերթ աշխատանքը, տրանսպորտի հետ կապված շատ հարցեր դժվարացնում են կուլտուր-մասսայական միջոցառումների իրականացումը. դեռևս բոլորն ապահովված չեն բնակարանով... Բայց այդ ամենը տևական լինել չի կարող:

— Ընկեր Խաչատրյանը, ընկեր Բարիկյանը հաճախ լինում են մեզ մոտ, և երբ լսում են մեր պահանջներն ու հուսադրում՝ շուտով, շատ շուտով, պատահում է՝ մերոնք սոսկ երազողների տեղ են դնում նրանց:

— Երազող էլ ենք, ինչո՞ւ չէ: Բայց հիմնականում՝ ռեալիստ. թևավոր ռեալիստներ և ոչ թե ծանր կշռաքարերը ոտքներիս.— ասում է Խաչատրյանը, իսկ շրջկոմի երկրորդ քարտուղարի՝ ինժեներ Գրիգոր Բարիկյանի աչքերում այդ պահին շողում է երազկոտ ժպիտը:

*Երկու վառարան, երկու սիրտ*,— գրում է ցեմենտի գործարանի դիրեկտոր Ժորժ Ավանեսյանը «Հրազդան» թերթում ու նկարագրում այն հերոսական քառահերթ աշխատանքը, որ ծավալվել էր գործարանում II վառարանը շահագործման հանձնելու օրերին: Նովոռոսիյսկի «Հարավմոնտաժի» վարչությունը (պետ՝ Իվան Խաչատրյան) ուղարկեց ցեմենտի գործարանի II վառարանը, որը պատրաստվել էր Լենինգրադի «Գլավպրոմցվետմետի» գործարար օգնությամբ, հեղինակային վերահսկողությամբ:

Եվ իններորդ հնգամյակի I տարում, հունիսի 29-ին, ՍՍՀՄ պետական հանձնաժողովն ընդունեց ու այդ օրվանից գործարկվեց ցեմենտի արտադրության II գիծը, որը կառույցներին կտա օրական 600 հազար տ. ցեմենտ: Այսպիսով ամբողջացավ ցեմենտի արտադրության՝ Անդրկովկասի այս խոշորագույն գործարանը՝ 1 մլն 200 հազար տ. նախագծային հզորությամբ: Ժամում այն տալիս է 50 տ. ցեմենտ, որը խողովակներով մղվում է հսկա աշտարակները, այդտեղից ցիստեռններով հասցվում մեր հանրապետության կառույցների շինարարներին:

Ժամում 50 տոննա. պատկերացնո՞ւմ են շինարար ձեռքերն մեր մեծ Միության. և այսքանը այս վիթխարի կոմբինատի միայն մի գործարանը:

Ոչ մի հաղթանակ մենակ չի դարբնվում: Ամեն մի այսպիսի նորույթ տոն է ո՛չ միայն ԼՔԿ-ի, այլ ողջ Հրազդանի, «Հրազդանշին» տրեստի վեց վարչությունների, հատկապես II շինվարչության համար, որն իրականացնում է այդ կոմբինատի բոլոր կառուցումները: 2500 բանվոր-ծառայող ունեցող «Հրազդանշին» տրեստում ենք, գլխավոր ինժեներ Ռոբերտ Ավետիսյանի աշխատասենյակում: Ավարտել է նա Մոսկվայի ջրային տնտեսության ինստիտուտը և այժմ կառավարչի, կուսկազմակերպության քարտուղարի, շինվարչությունների պետերի, բրիգադավարների հետ մեկտեղ ղեկավարում է շինարարական վեց վարչություն-

ների գործունեությունը:

— Մեր կադրերը պատրաստվում են Երևանի պոլիտեխնիկական ինստիտուտում, արտադրական ուսուցման կոմբինատում, Հրազդանի արդյունաբերական-շինարարական տեխնիկումում. տրեստում ևս գործում է ուսման կետ. բացի դրանից, մեր փորձառու վարպետները սովորեցնում են սկսնակ ջահելներին,— պատմում է կուսկազմակերպության քարտուղար Վահան Սարիբեկյանը:

Պատմում են նրանք շինվարչությունների աշխատանքների, կառույցաբնագավառների, շքանշանակիր, ՍՍՀՄ, ՀՍՍՀ Գերագույն սովետների, քաղաքային սովետի դեպուտատ շինարարների մասին, և ես հիշում եմ ընկեր Խաչատրյանի պատասխանն իմ այն հարցին, թե՝ շա՞տ են ձեզ մոտ աշխատանքային հերոսները.

— Հնգամյակի հերոսներն առանձին անհատներ, նույնիսկ առանձին կոլեկտիվներ չեն: Իսկական հերոսները Հրազդանում շինարարներն են, բոլորը: Տեսե՛ք, ողջ քաղաքը շինհրապարակ է ասես. վերջին երկու տարում 50 մլն ռուբլու շինարարություն է կատարվել— գրեթե այնքան, որքան Լենինականում, Կիրովականում, Ղափանում միասին վերցրած: Ահա թե ինչու շինարարի մասնագիտությունն ամենահարգվածն է մեզ մոտ, ամենաավանդականը:

Հայրերն ասել են որդիներին՝ կառուցի՛ր, որդի՛ս, որ շեն լինի մեր երկիրը:

Եվ կառուցում են «Կարմիր դրոշի» շքանշանակիր Վեհմիր Ղարագյոզյանը, որ ամսական վաստակում է 450—500 ռ., կոմպլեքսային բրիգադայի բրիգադավար, ՍՍՀՄ Գերագույն Սովետի դեպուտատ Սպարտակ Գալստյանը, Լենինի շքանշանակիր Շամիլ Սահակյանը և շատ ուրիշներ: Կառուցում են, և նրանց մեծ մասն ապահովված է բարեկարգ բնակարաններով: Իսկ Աղավնաձորում կառուցվող պրոֆիլակտորիումը կդառնա նրանց ուժերի վերականգնման, առողջության պահպանման ու հանգստի լավագույն վայրը:

Այդպիսի վիթխարածավալ շինարարությունը հնարավոր չէր լինի առանց երկաթբետոնե, խոշոր պանելային տնաշինական կառույցվածքների: Խոշոր պանելային տնաշինական կոմբինատում ամեն ինչ վերակառուցվում է. ամենուր բետոնե կառույցվածքներ են, երկաթաձողեր, սպասվում են նոր բետոնախառնիչներ...

— Կոմբինատի նախագծային կարողությունը 22 հազար խորանարդ մետր է,— ասում է գլխավոր ինժեների տեղակալ Հայկազ Ավետիսյանը: Իսկ դժվարությունները վերակազմվող այս կոմբինատում դեռևս շատ են. ապահովված չէ այն մեքենաներով, զգացվում է բանվորական ձեռքի մեծ կարիք...

* * *

Երեկո է. անտառներն ու սարերը պարուրվել են կապույտ մշուշով. արևն էլ այնտեղ՝ հեռվում, բացխփիկ է անում ծառերի հետևում, նրանց կանաչին խառնելով իր հրակարմիրը: Ու մեքենան, սուրալով Սպանդարյան փողոցով, հասցնում է մեզ արդի ոճով կառուցված բարեկարգ, հինգհարկանի հյուրանոցը, ուր այնպես հյուրընկալորեն մարդկանց ընդունում են հյուրանոցի, ես կասեի՝ տիրուհին՝ Նինա Անտոնյանը և Զարիկ մայրիկն ու ջահել ադմինիստրատորը՝ Մարինեն:

Հյուրանոցից վեր անտառն է, թավ ու խիտ սոճուտը, որից վեր նորատունկ խնձորենիներ են: Ու անտառից հովի հետ շնկշնկալով բարձր ու զիլ հնչում է երգն անտառապահուհու՝

*Լանջերդ կանաչ, գագաթներդ՝ ձյուն,*
*Հրազդա՜ն, հարազատ իմ քաղաք...*

Նորահարս էր Արեգնազը, երբ սկսվեց մեծ Հայրենականը: Իր նման շատ-շատերի հետ սպասում դարձավ և նրա ջահելությունը՝ անմուրազ: Աշխատեց մանկապարտեզում: Սերն իր տվեց մանուկներին, իսկ հետո՝ հայրենի քաղաքի նորատունկ ծառերին ու արդեն 20 տարի է, պահում-պահպանում է ամեն մի տունկը՝ իր պառաված, մի բուռ դարձած մոր հետ. պահում է անտառը, վերևից նայում սիրած քաղաքին ու երգեր կապում, սրտահույզ խոսքերով գովում... Այդ սիրո, բարեխիղճ աշխատանքի համար էլ Արեգնազ Անտոնյանին պարգևատրել են ոսկե ժամացույցով, որի մասին պատմելիս ավելի է շիկնում այդ մեծ անտառի պարզսիրտ ու կտրին, կարմրազգեստ անտառապահուհին:

Ընդլայնվել, մեծացել է Ախտան ու քաղաքի զարկերակի անունով վերանվանվել Հրազդան: Վեց տարի առաջ 18000 բնակչություն ունեցող քաղաքն այժմ դարձել է 30 հազարանոց, որից տասը հազարը՝ Միկրոշրջանում: Բազում ու բազմապիսի են հոգսերն այդ բոլորովին նոր ու նորակերտ թաղամասում: Մի քանի տարի առաջ ոչինչ չկար լեռնահովտի այս մասում, իսկ հիմա բոլորովին նոր մի քաղաք է բարձրացել՝ նորակերտ շենքերով, կուլտուրայի տըրանով, կինոթատրոնով, առևտրական կենտրոնով, կենցաղսպասարկման տաղավարներով... Նրա բնակչության զգալի մասը հայրենադարձներ են:

*Հրազդա՜ն, գետակդ իմ հայրենի,*
*Հրազդա՜ն, ջրիկդ իմ անուշիկ...*

Երգել է ամենուր տարագիր մեր հայությունն իր չտեսած գեղեցիկ գետն ու հիմա գալիս, շենացնում է նրա գեղատեսիլ ափերն ու շրջակա լեռները: Հետաքրքիր ժողովուրդ ենք հայերս՝ մեր մի կողմով նման փղերին, որոնք ձգտում են ինչ էլ լինի մեռնել Ավետյաց լեռում, իսկ հայ ծերերը՝ հայրենի երկրում: Ահա թե ինչու ոտք դնելով Սովետական Հայաստան՝ նրանք ասում են՝ «Ոսկորներս հասցրի այս հողին, էլ դարդ չունեմ»: Իսկ ջահելնե՞րը. նրանք շատ են տարբեր փղերից. «Ամուր ձեռքերս, առողջ մարմինս ու ողջախոհ միտքս հասցրի իմ երկրին, էլ ես դարդ չունեմ»: Ու եկել են կառուցելու, շենացնելու նվիրական ձգտումով:

— Մենք գոհ ենք հայրենադարձներից. լավ մարդիկ են. հանգիստ, աշխատող,— ասում է Խաչատրյանը:— Նրանք շատ բանով են օգնում տեղացիներին՝ քաղաքացի դառնալու. նրանց մեծ մասը բարեկիրթ է, ուսումնատենչ, աշխատասեր ու արվեստասեր:

Եվ ծանոթանում եմ. շրջանային բուժմիավորման գլխավոր բժիշկն է իրանահայ երիտասարդ Շահեն Պողոսյանը, ժողովրդական թատրոնի լավագույն ուժերից է քանդակագործ Վահան Սողոմոնյանը, հայրենադարձ բանվորուհի, 25-ամյա կոմունիստ Համիկ Մուրադյանը քաղաքային սովետի գործկոմի և կուսակցության շրջկոմի պլենումի անդամ է: Բոլորի՞ն թվել, անհնար է այդ:

* * *

Շրջանում գործող 53 կուլտուրայի տներից մեկում ենք, Հրազդանի քաղաքային № 2 կուլտուրայի տանը (№ 1-ը Միկրոշրջանում է): Նախասրահի պատերին № 1 միջնակարգ դըպրոցի ֆիզիկայի դասատու, ինքնուս նկարիչ Ս. Մելքոնյանի նկարած գեղեցիկ նատյուրմորտներն են, բնանկարներն ու դիմանկարները. իսկ մյուս կողմում՝ պիոներտան նկարչական խմբակի նկարների ցուցահանդեսն է. այն արտահայտությունն է երեխաների արվեստասիրության, լայն հետաքրքրասիրությունների, ձևավորվող ճաշակի:

Գեղեցիկ է հայկական զարդաքանդակներով, բազմօրյակ դահլիճը, որը վերանորոգվելու է շուտով: Շենքի 3—5 հարկերով մեկ տարածվում է հայկական պարերի՝ պարասերների եռանդը բունդ հանող մեղեդին... Պարի անսամբլի պարապմունքն է. այն վարում է պարավար Սարգիս Սարգսյանը:

Լայն ճանաչում է գտել, բարձր գնահատականի, խրախուսանքի և դիպլոմի է արժանացել նաև կուլտուրայի տան ժողովրդական թատրոնը, որի ներկայացումներին դահլիճը միշտ լեփ-լեցուն է լինում: Թատրոնը ղեկավարում է իր գործի սիրահար, մոտ 60-ամյա Արշավիր Ղազարյանը, որը, չնայած մեծ դժվարություններին (ձմեռ թե ամառ նա Երևանից է գալիս), մեծ ոգևորությամբ կազմակերպում, ղեկավարում է ժողովրդական թատրոնը: Բազմազան է խաղացանկը, հետաքրքիր— Ջեխովի *Արջը*, *Առաջարկություն*, իր իսկ՝ Արշավիր Ղազարյանի *Գողացված մանկությունը*...

Այստեղ են իրագործվում նաև քաղաքի կուլտուրական շատ միջոցառումներ-հանդիպումներ աշխատանքի հերոսների, գիտության ու արվեստի գործիչների հետ: Ինչպիսի՜ ջերմությամբ անցավ հանդիսավոր ցերեկույթը՝ կազմակերպված աշխատանքային վետերան, Լենինի, Հոկտեմբերյան հեղափոխության շքանշանակիր Հարություն Հակոբյանի թոշակավորման առիթով: Կուլտուրայի տանը գործում են և էստրադային նվագախումբը, կիթառիստների խմբակը: «Հրազդան» թերթում հաճախ կարելի է հանդիպել կուլտուրայի տանը գործող արվեստի համալսարանի ռեկտորատի հրավեր-հայտարարությանը՝ այդ համալսարանի հերթական պարապմունքի մասին, նվիրված արվեստի տարբեր բնագավառների— հայ ճարտարապետությանը, քանդակագործությանը, երաժշտությանը: Հրազդանցիների համար գենկուցում են հանրապետության լավագույն արվեստաբանները, ելույթ ունենում լավագույն կատարողները:

— Շատ բան է արվում աշխատավորներին կուլտուրային ավելի մոտեցնելու համար: Եվ, պետք է ասել, որ, չնայած ոմանք դեռ իրենց պահել չգիտեն համերգների ժամանակ, բայց մարդիկ արդեն շատ են փոխվել ու կապվում են կուլտուրայի այս օջախին, իրենց հանգիստը անցկացնում այստեղ: Իսկ մեզ մոտ գործող կարի և մեքենագրուհիների խմբակներն աշխատանքի նոր ասպարեզներ են բացում աղջիկների, կանանց համար,— պատմում է կուլտուրայի տան գեղարվեստական մասի վարիչ Մանուկ Նազարյանը:

* * *

Ամառ է. ավարտվել են դպրոցական պարապմունքները, հարկ է հոգալ պիոներ-դպրոցականների հանգստի մասին: Ու անձրևոտ մի առավոտ խորհրդակցություն է շրջկոմի քարտուղարի մոտ: Հավաքվել են ժողկրթության աշխատողները՝ դպրոցների դիրեկտորներ, մանկավարժներ, շրջանի կոմունալ բաժնի վարիչը... Պիոներական ամռան կազմակերպման հետ կապված խնդիրների, միջոցառումների մասին է խոսում կոմերիտմիության շրջանային կոմիտեի քարտուղար Նորա Սարդարյանը. ապա ելույթ ունեցողները լրացնում, պարտավորվում

# ԿՅԱՆՔԸ ՍԱՐԱՀԱՐԹԻ ՎՐԱ

## ՎԵՐՋԻՆ ԿԵՌՄԱՆԻՑ ՀԵՏՈ

Երևանից Ջերմուկ մոտ 190 կիլոմետր է: Ջուլֆա տանող մայրուղիով ընթանալիս, Արմաշն անցնելուց հետո, թեքվում ես դեպի ձախ՝ ոլորապտույտ, ասֆալտապատ ճանապարհը քեզ տանում է Սյունիք: Այն մեկ բարձրանում է բլուրների գագաթը, մեկ անցնում սարալանջերով, մեկ խիստ թեքությամբ իջնում հովիտը: Ահա Արենի գյուղը: Ճանապարհը ձգվում է Արփա գետի ափով: Բայց մի քանի կիլոմետր անցնելուց հետո նորից հեռանում ես դրանից: Ազիզբեկովում ճանապարհն ու գետը նորից են մոտենում և մինչև Ջերմուկ ձգվում զուգահեռ:

Ճանապարհի մի կողմը մի քանի տասնյակ մետր բարձրություն ունեցող, ուղիղ կտրված ժայռեր են: Գետի ափերը եզերվում են մրգի ծառերով, ընկուզենիներով, ուռենիներով ու թփուտներով: Հոսանքին հակառակ, որքան վեր ես բարձրանում, ճանապարհի մյուս կողմն էլ պատվում է ժայռերով, Արփան անցնում է կիրճի միջով... Ջուրն ավելի արագ է հոսում և արևի ճառագայթների տակ ցոլացող ջրվեժներն են դյութում: Դարերի ընթացքում հողմնահարվելուց ապառաժների հսկայական բեկորներ են պոկվել ժայռերից և հնադարյան ամրոցների կամ ատամնաձև պարսպի տեսք ընդունել: Մերթ ընդ մերթ հանդիպում ես հսկայական քարայրների, ուր ոչխարների հոտեր կտեղավորվեն: Որքան առաջ ես գնում, կինոժապավենի պես անընդհատ փոխվում է բնաշխարհը, մեկը մյուսից գեղեցիկ, մեկը մյուսից հմայիչ: Թվում է, թե գտնվում ես կախարդական աշխարհում: Ոչ վաղ անցյալում մարդը հազիվ է մագլցել այս վայրերով: Բայց այսօր, շինարարի խելքով ու հուժկու բազկով կառուցված ճանապարհով երթևեկում են ամենահզոր ավտոմեքենաներ:

Անցնում ես վերջին կեռմանը, աչքիդ առջև բացվում է մի չքնաղ բարձրավանդակ, որի մեջտեղով հոսում է Արփան: Հուլիսի առաջին կեսն է: Հովիտներում ու նախալեռներում վաղուց է վայրի վարդը թերթիկները թափել, մասուրն իր գույնը փոխել, իսկ այստեղ նրա կոկոնները նոր են բացվել. ալ ու սպիտակ թերթիկներն անուշահոտություն են սփռում շուրջը: Ամեն քայլափոխում ժայռերի միջից, ծառի տակից ժայթքում է աղբյուր, որի ջուրը սառնորակ է, վճիտ: Դրանց կողքին, ընդերքի խորքից, բխում են հանքային բուժիչ տաք ջրերը:

Սարահարթը շրջապատված է բարձր լեռներով: Երկինքը պարզ է ու արևի շողերով ողողված, օդը՝ մաքուր, գետափից մինչև լեռների կատարները ծածկված են թավշյա կանաչով: Սարալանջերից մեղմ գեփյուռն է փչում՝ իր հետ բերելով ծաղիկների բուրմունքը: Բուժիչ ու անմահական ջրերը, մաքուր օդը, հրաշալի բնությունը Ջերմուկ են ձգում Սովետական Միության ամենահեռավոր ծայրամասերում բնակվող մարդկանց:

Արփայի աջ ափին մի գյուղ կար՝ երեսուներեսունհինգ ծխից: Տները գետնափոր էին: Երկրի երեսին հազիվ երևացող: Մարդիկ և անասունները ապրում էին նույն երդիկի տակ. որձաքարից շարված բարակ պատն էր անջատում նրանց: Տաք ջրի մի աղբյուր էր գտնվում գյուղի վերևում, մյուսը՝ կիրճում՝ գետափին: Կար երկու ջրափոս, անտաշ քարերով պատած, ուր տաք եղանակին «լոգանք» էին ընդունում մոտակա գյուղերի բնակիչները, յայլաղների խաշնարածները, հեռուներից եկող հիվանդները:

Սովետական տարիներին մեծ փոփոխություններ են կատարվել այստեղ: Չկա հին գյուղը: Գետնափոր տների տեղը կառուցվել են սանատորիաներ, բնակելի տներ, հանրակրթական դպրոցներ և ուսումնարաններ: Երկրաբանները հայտնաբերել են հանքային ջրերի նոր ակունքներ, գիտահետազոտական ինստիտուտներն ու գիտնականները հետազոտել են այդ ջրերի քիմիական բաղադրությունն ու բուժիչ հատկությունները:

Առաջին առողջարանի հիմքը դրել է ՀՍՍՀ սոցիալական ապահովության ժողովրդական կոմիսարիատը՝ 1930-ական թվականներին: Կառուցումը կապված էր մեծ դժվարությունների հետ: Շինարարի գործիքներն էին՝ բահն ու բրիչը, մուրճն ու սեպը, փոխադրամիջոցները՝ սայլը, ջորին ու ավանակը, հազվագյուտ դեպքում՝ ավտոմեքենան: Բանվորները պատգարակով էին քարն ու ցեխը փոխադրում հարկից հարկ, ռոմնադիրները բազկի ուժով՝ քարը դնում քարին:

Ջերմուկի առաջին սանատորիայի ստեղծումը գրեթե զուգադիպում է Հայրենականի մեծ պատերազմին: 40 մահճակալ ունեցող այդ առողջարանը վերածվում է հոսպիտալի, ուր մինչև պատերազմի ավարտը բուժվում են մոտ 2000 զինվոր ու սպա:

Մեծ Հայրենականի հաղթական ավարտից հետո կոմունիստական կուսակցությունն ու սովետական կառավարությունը մտահոգվում են Ջերմուկ առողջարանն ընդարձակելու և բարեկարգելու հարցով: Տարեցտարի ավելանում են այդ նպատակին հատկացվող միջոցները: Շատ բան է արված վերջին երկու տասնամյակում: Մեկը մյուսի կողքին կառուցվել են առողջարանների կորպուսներ, պոլիկլինիկա, բնակելի շենքեր, կուլտուրական սպասարկման օբյեկտներ, դպրոցներ, խանութներ, հասարակական սննդի օբյեկտներ:

## ՀՐԱՇԱԼԻ ԱՌՈՂՋԱՐԱՆԸ

Ջերմուկը քաղաք է անվանվել 1961 թվականին: Այն տեղադրված է 180 հեկտար տարածության վրա, կառուցված Մ. Գրիգորյանի և Պ. Մսերյանի նախագծով: Քաղաքի ասֆալտապատ մայթերը եզերված են ծառերով ու թփերով: Շահումյանի անվան փողոցը ձգվում է մոտ երեք կիլոմետր: Ավելի քան հինգ հազար բնակիչ ունեցող Ջերմուկն ունի 30 հազար քմ բնակելի տարածություն: Բնակարանները հարմարավետ են. ունեն ջեռուցման սիստեմ, սանհանգույց, գազօջախներ:

Ջերմուկը աշխարհահռչակ անուն է վաստակել իր բուժիչ ջրերի շնորհիվ: Այստեղ հանքային ջրերի վեց ակունք կա, որոնք վայրկյանում տալիս են 18—20 լիտր 63°C ջուր, բուժում են աղեստամոքսային, լյարդի, հոդացավային հիվանդությունները, շաքարախտը:

Այդ ջրերի բազայի վրա են կառուցվում առողջարանների նոր կորպուսներ: Այժմ Ջերմուկի կուրորտային վարչությունը տնօրինում է երեք սանատորիաների՝ իրենց բաժանմունքներով: Յուրաքանչյուրն ունի իր ճաշարանը, պալատները կահավորված են ճաշակով, բուժվողների հանգստի համար ստեղծված են նորմալ պայմաններ:

Վարչությունն ունի իր պոլիկլինիկան՝ անհրաժեշտ լաբորատորիաներով, ֆիզիոթերապիայի, ռենտգեն, բուժֆիզկուլտուրայի, ֆունկցիոնալ դիագնոզման, աղիքային, գինեկոլոգիական, սորֆաբուժման, ջրաբուժման կաբինետներով, լոգանքասրահներով, որոնք կահավորված են բժշկական նորագույն սարքավորումներով: Ամռան ամիսներին լրացուցիչ գործում է Արփայի կիրճում կառուցված պոլիկլինիկան՝ կուրսովկայով բուժվողներին սպասարկելու համար: Կա մանկական սանատորիա՝ 25 մահճակալով:

Ջերմուկում բուժվելու են գալիս մեր հանրապետության տարբեր վայրերից, Սախալինից, Մուրմանսկից, Արխանգելսկից, Վլադիվոստոկից, Ղազախստանից, Լենինգրադից, Սովետական Միության այլ երկրամասերից, երբեմն էլ սփյուռքի հայերից: Կուրորտներում ու պոլիկլինիկայում կա մոտ 500 բուժաշխատող, որոնցից՝ 25 բժիշկներ:



Կուրորտային վարչության գլխավոր բժիշկ Ս. Պ. Դիլանյան



Պոլիկլինիկայի գլխավոր բժիշկ Օ. Ա. Սարգսյան

Իմ հարցին, թե ովքե՞ր են բուժվում Ջերմուկի առողջարաններում, կուրորտային վարչության գլխավոր բժիշկ ընկ. Ստեփան Դիլանյանը պատասխանեց.

— Մեզ մոտ բուժվելու են գալիս թե՛ բանվորներ, թե՛ կոլտնտեսականներ և թե մտավորականներ, ինչպես և Հայրենական պատերազմի հաշմանդամները և թոշակառուները:

Ջերմուկում ամեն ամիս բուժվում են ուղեգրերով՝ մոտ 400, իսկ ամռանը՝ կուրսովկայով՝ ավելի քան 300 մարդ: Ծառերը բուժօգնություն են ստանում պոլիկլինիկայից: 1966 թվականին այստեղ բուժվել են 5635, իսկ ամբուլատոր՝ 1890 մարդ: Անցյալ տարի այդ թիվը գրեթե կրկնապատկվել է:

Վաղ առավոտ է: Մարդիկ անհապարում են գործի: Դրանք սանիտարուհիներն են, բուժքույրերը, խոհարարները, մատուցողները, բժիշկները: Նրանց մտահոգում է մի բան՝ հոգատար սպասարկել բուժվողներին և հանգստացողներին: Լոգանքասրահներում աշխատողներն իրենց ջանքերը գործադրում են, որպեսզի շուրջը մաքուր լինի, պահպանվի հանքային ջրի ջերմության աստիճանը, հիվանդը լրիվ օգտագործի լոգանքում մնալու սահմանված ժամանակը: Բժիշկն ուշադիր ստուգում է հիվանդին, լսում նրա գանգատները, նշանակում համապատասխան պրոցեդուրա: Այն պահին, երբ ընդերքի խորքում լեռնագործներն ածուխ ու հանքաքար են հատում, մետաղաձույլ վառարանների մոտ քրտնաթոր բանվորները մետաղ ու պղինձ են ձուլում, դազգահների մոտ կանգնած ջուլհակուհիները մահուդ ու կտավ են գործում, կոմբայնավարը հանդում բերքն է հավաքում, այստեղ, սպիտակ խալաթ հագած մարդիկ լաբորատորիաներում ու կաբինետներում բուժում են մարդկանց, վերականգնում նրանց առողջությունը, որպեսզի լիակատար կարողությամբ նրանք վերադառնան իրենց աշխատանքին: Հարյուրավոր մարդիկ, գալով Ջերմուկ, իրենց կյանքը վստահում են բուժաշխատողներին, հավատալով, որ առողջ և կազդուրված կվերադառնան: Երբ խոսում ես բուժվողների ու հանգստացողների հետ, նրանք իրենց գոհունակությունն են հայտնում հանքային ջրերի բուժիչ հատկությունների, բժիշկների, քույրերի ու սանիտարների հոգատար վերաբերմունքի համար:

— Բուժվելու և հանգստանալու հիանալի վայր է Ջերմուկը,— ասում է ավտոդողերի գործարանի բրիգադավար Արմենակ Դարբինյանը: Բժիշկները միշտ հոգատար են հիվանդների նկատմամբ, ջանում են, որպեսզի մարդիկ այստեղից գոհ գնան:

— Ես Սովետական Մոլդավիայից եմ եկել,— ասում է բանվոր Ստեփան Մատվեևը,— տառապում եմ մարսողական օրգանների հիվանդությամբ: Բուժման բարերար ազդեցությունն արդեն զգում եմ: Հուսով եմ, որ առողջությունս կվերականգնվի: Պետք է ասեմ, սնունդը վատ չէ, բուժաշխատողները հոգատար են:

Իրենց հոդացավերը բուժելու համար են եկել Նովգորոդից՝ բանվոր Վլադիմիր Նիկիտինը, Երևանից՝ գիտական աշխատող Զաքար Մանուկյանը: Նրանք գոհ են բուժման մեթոդներից, բուժաշխատողների մարդասեր վերաբերմունքից:

Բժիշկներին գրած իրենց նամակներում Ջերմուկի մասին հիացմունքով են խոսում անցած տարիներին բուժվածները: Կրասնոյարսկից Պավել Սիրովատկինը գրում է. Երկար տարիներ տառապում էի ջլարմատների բորբոքումից (ռադիկուլիտից): Բժիշկներն ինձ խորհուրդ տվեցին բուժվել Ջերմուկում: Առաջին տարին այդտեղ եկա հենակներով, վերադարձա՝ ձեռնափայտով: Երկրորդ տարին թողեցի նաև ձեռնափայտը... Շնորհակալություն հոգատարության համար: Մի ուրիշ բուժվող՝ Լիեյդան (ցավոք, ազգանունն ու հասցեն անընթեռնելի էր) գրում է. Հիվանդությունս այնքան ծանր էր, որ որոշեցի ինքնասպանություն գործել... Բժիշկների խորհրդով եկա Ջերմուկ: Առողջությունս վերականգնվեց: Շնորհակալություն ձեր ցուցաբերած մարդասիրական վերաբերմունքի համար:

Ասում են՝ մեկը եկել է հենակներով: Բուժվելուց հետո կոտրել է դրանք, գցել խորովածի կրակի վրա:



*Լաբորատորիայի վարիչ, բժշկուհի*
*Թ. Ռ. Դաշտոյան*



Բազում են այսպիսի օրինակները:

Առողջարանի գլխավոր բժիշկ Ստեփան Դիլանյանը չորրորդ տարին է, ինչ այստեղ է, իսկ մինչ այդ տնօրինել է Ազիզբեկովի շրջանի առողջապահության գործը: Խելամիտ ու հմուտ հրամանատարի պես նա ըստ ունակությունների ու կարողությունների է դասավորել ենթականերին, որոնք ջանում են օրինավոր սպասարկել հիվանդներին և հանգստացողներին, հոգալ նրանց ամենօրյա կարիքները: Հիացմունքով են խոսում ընկեր Դիլանյանի մասին՝ որպես բժշկի և մարդու:

Պոլիկլինիկայի գլխավոր բժիշկ Օվսաննա Սարգսյանն, ինստիտուտն ավարտելուց հետո, իր բախտը կապել է Ջերմուկի հետ: Արդեն 17 տարուց ավելի է նա աշխատում է այստեղ: Պաշտպանել է թեկնածուական դիսերտացիա: Տարիների ընթացքում խորանալով իր մասնագիտության մեջ ու շարունակելով գիտական հետազոտությունները, մենագրություն է գրել դոկտորական աստիճան ստանալու համար: Բուժվողները գովեստի խոսքեր են ասում նրա մասին:

Բժշկուհի Թամարա Դաշտոյանը մոտ 10 տարի է, ինչ աշխատում է պոլիկլինիկայում: Տասնյակ տարիներ է նա ետևում թողել, շատ շատերի առողջությունն է վերականգնել: Եվ պատահական չէ, որ շրջապատը համակրանքով է վերաբերվում Թամարա Ռուբենովնայի հետ: Միաժամանակ հանդիսանալով արհեստակցական միությունների տեղական կոմիտեի նախագահ, նա ակտիվ մասնակցում է հասարակական աշխատանքներին:



*Լաբորատորիայի վարիչ, բժշկուհի*
*Ե. Պ. Գրիգորյան*

Բուժվողները հիացմունքով են խոսում երկրորդ սանատորիայի գլխավոր բժիշկ Տիգրան Մկրտչյանի, բժիշկ Գուրգեն Մակարյանի, բակտերիոլոգիական լաբորատորիայի վարիչ Ելենա Գրիգորյանի մասին:

Պատվաբեր գործ են կատարում միջին բուժաշխատողները: Բուժքույր Խանում Ծահինյանը Հայրենական մեծ պատերազմի տարիներին գնդակների սուլոցի, արկերի որոտի տակ առաջին օգնություն է ցույց տվել վիրավոր ռազմիկներին, նրանց դուրս բերել կրակի միջից, ուղարկել թիկունք՝ ապաքինվելու: Այսօր նա նույնպիսի բարեխղճությամբ խնամում է բուժվողներին: Առողջարանի ղեկավարների հաճախակի խրախուսանքին են արժանանում ավագ քույր Ռոզա Մկրտչյանը, երրորդ բաժանմունքի դիետ-քույր Մելիա Պապոյան: Տասը տարուց ավելի է լոգանքասրահում համեստ, բայց մեծ եռանդ պահանջող գործ է կատարում սանիտարուհի Սիլվա Սարգսյանը: Հիվանդների քմայքներին նա վերաբերվում է համբերատար: Այդպիսիք են նաև Ազնիվ Գրիգորյանը, Մարիա Հուսեինովան, Աղավնի Հարությունյանը:

Կուրորտային վարչության կուսկազմակերպությունը (քարտուղար Էլվիրա Հայրապետյան) մի համերաշխ կոլեկտիվ է, որը տքնում է իր գործունեությամբ նպաստել մարդկանց հանգստի ու բուժման կազմակերպմանը: Կոմունիստ բժիշկներ՝ Հովհաննես Կոշտոյանը (երրորդ սանատորիայի գլխավոր բժիշկ), Սերգեյ Բժավլյան, Պայքար Մարտիրոսյանը, բուժքույր Վարսենիկ Բաբայանը իրենց լավ գործերով ջերմ համակրանք են վայելում:

Քաղաքում ուշագրավ են բոլոր կառույցները, որոնք ինքնատիպ են իրենց ոճով. դրանք կառուցված են գլխավորապես տեղական քարով: Բայց առավել աչքի են ընկնում երկուսը՝ արհեստական լճակի մոտ կառուցված պոլիկլինիկայի շենքը և ըմպելասրահը (ճարտարապետ Գ. Թամանյան): Ասֆալտապատ փողոցից բազալտապատ աստիճաններով բարձրանում ես պատշգամբաձև բաց շինվածքը, որի լայնությունը 6—7 մետր է, երկարությունը՝ մոտ 20 մետր. ամբողջ տարածությունը պատված է բազալտով: Այդտեղից

# ԳՐԱԽՈՍՈՒԹՅՈՒՆ ԵՎ ՔՆՆԱԴԱՏՈՒԹՅՈՒՆ



## ԱՄԵՆՔԻ՛Ն ԱՆՀՐԱԺԵՇՏ ԳԻՐՔ[1]

Երկիր մոլորակի մարդկային հասարակության զարգացման բազմակողմանի վերլուծությամբ և ուսումնասիրությամբ զբաղվող պատմաբանների համար ամենադժվարինը, միաժամանակ, ամենահետաքրքրականը, անկասկած, կլինի 1900—1970 թթ. ընդգրկող նորագույն դարաշրջանը: Մեր դարաշրջանն ուսումնասիրող պատմաբանների առջև ծառացող դժվարությունները ունեն միանգամայն օբյեկտիվ պատճառներ:

Պատմական այդ կարճ ժամանակահատվածում մեր մոլորակի վրա զարմանալի և առավել անող արագությամբ ձևավորվել, զարգացել են բազում ու բազմապիսի պրոցեսներ, ամեն տեսակ՝ փոքր ու մեծ, դարակազմիկ երևույթներ ու իրադարձություններ, որոնք սերտ միահյուսվում ու, սահս, կազմում են մարդկային մտքի սլացքի բազմակատար ու վիթխարի լեռնաշղթաներ: Հաղթահարելով առաջինը, պատմաբան—«ալպինիստները» առջևում կտեսնեն երկրորդ, առավել վեհ բարձունքներ, իսկ երկրորդի գագաթները մագլցած կորիճները կապշեն լեռնաշխարհի երրորդ շղթայի բարդ կառուցվածքից ու վեհությունից...

Ու, եթե ինչ-որ հրաշքով հաջողվեր լիովին պատշաճ (գիտական մակարդակի առումով) պատմական հետազոտություններ կատարել, ստույգ ինֆորմացիա ստանալ կանխատեսումների, հանուն մարդկության պայծառ ապագայի մղվող պայքարի համար, ապա դրանց արդյունքներից կգոյանային ամենատարբեր չափի ու ծավալի գրքերի միլիոնավոր հատորների յուրօրինակ բուրգեր:

Նովար հատոր կկազմի գիտության պրոցեսների ծավալման և դրա դիալեկտիկական զարգացման պատմությունը՝ յուրահատուկ ճգնաժամերով, կարճատև դադարներով ու հեղափոխական բռնկումներով: Փոքրաթիվ չեն լինի նաև նյութական բարիքների արտադրությանը, տեխնիկայի ու տեխնոլոգիայի պատմությանը նվիրված հատորները:

Պատմությունը կհրտում են ժողովրդական մասսաները՝ բոլոր ասպարեզներում ստեղծաբար աշխատանքով զբաղված մարդիկ: Ու եթե շարունակենք մեր համեմատությունը լեռնաշխարհի հետ, ապա հանճարների ստեղծագործությունները կարող ենք նմանեցնել լեռնաշղթաների հսկա զանգվածներում պարզորոշ հառնող բարձրաբերձ գագաթների: Այդ առումով XX դարի գագաթներից իր թովիչ վեհությամբ զատվում է Լենինի պիկը: XX դարի ֆիզիկական գիտությունների լեռնագագաթներից թե՛ իր բարձրությամբ, թե՛ գեղեցկությամբ առանձնանում է, անշուշտ, Էյնշտեյնի պիկը:

Եվ, իրոք, մեր օրերում արդեն բազում հատորներ են նվիրվել Լենինի ստեղծագործական, հեղափոխական ու պետական գործունեությանը: Քիչ գրքեր չեն նվիրվում Էյնշտեյնի և XX դարի շատ ականավոր այլ գործիչների սխրագործություններին:

Այսպիսի գրքերը հաճույքով կարդում և ուսումնասիրում են բոլոր մայր ցամաքների միլիոնավոր մարդիկ: Դրանք ունեն և՛ ճանաչողական արժեք, և՛ միաժամանակ, ընթերցողներին գեղագիտական հաճույք են պատճառում, լիցքավորում նրանց գիտական ու բարոյաէթիկական պոտենցիալով:

Գիտնականները համոզված են, որ իրենց հետազոտությունների արդյունքները երկար ժամանակ ելակետ կծառայեն համապատասխան բնագավառներում որոնումներ սկսողների համար: Տեղին է հիշատակել Նյուտոնի հետևյալ նշանավոր ասույթը. «Եթե ես ուրիշներից ավելի հեռուն եմ տեսել, ապա շնորհիվ այն բանի, որ կանգնած եմ եղել հսկաների ուսերին»:

Սակայն սկսնակ և անգամ վաստակաշատ գիտնականներին հաճախ հետաքրքրում են ո՛չ միայն նախորդ գիտական աշխատությունների ավարտուն արդյունքները: Նրանք տենչում են առավել ամբողջական ինֆորմացիա ունենալ գիտական մեծ հայտնագործություններով կամ ինքնատիպ մշակումներով ավարտված մտածողական, ստեղծագործական պրոցեսների տեխնոլոգիայի վերաբերյալ: Ցավոք, պատմական ուսումնասիրությունների միջոցով հնարավոր չէ տեղեկություններ քաղել այդ անգնահատելի և բոլոր գիտնականներին անհրաժեշտ տեխնոլոգիայի մասին, եթե նշանավոր հայտնագործությունների և ինքնատիպ հետազոտությունների հեղինակներն իրենք չեն նկարագրել դրանք:

Մինչդեռ, ավա՜ղ, գիտնականները հազվադեպ են տալիս իրենց մտածողական պրոցեսների քիչ թե շատ մանրամասն նկարագիրն ու ժամանակագրությունը: Բայց ահա երջանիկ մի պատահականություն. Նորբերտ Վիներն իր Ես մաթեմատիկոս եմ խորագիրը կրող գրքում անդրադառնում է կիբեռնետիկայի—կառավարման գիտության ձևավորման պատմությանը: Եվ, քանի որ Վիների գիրքն ինքնակենսագրական անկնարկ է, այն պարզ ու մատչելի լայն հասարակությանն է ներկայացնում այդքան բարդ մի թեմա:

Ուշագրավ է և այն, որ շարադրելով իր խոհերը կարևոր, հիմնական պրոբլեմի վերաբերյալ, Վիները, միաժամանակ, անդրադառնում է իր և շատ այլ գիտնականների, ինժեներների, պետական գործիչների հայացքներին ու կոնցեպցիաներին, հաջողություններին ու անհաջողություններին:

Գիրքը բաղկացած է առաջաբանից, տասնյոթ գլուխներից (ներառյալ նաև վերջաբանը): Յուրաքանչյուր հաջորդ գլխի նյութերը նախորդի ժամանակագրական ու տրամաբանական շարունակությունն են: Այն գրված է հետաքրքրասեր բոլոր ընթերցողների համար, անկախ նրանց մասնագիտությունից:

Առաջաբանում Վիները նշում է, որ գիրքն իր կյանքի մասին է, սկսած 1919 թ.: Այստեղ նա ընդգծում է. «Իմ նպատակն է եղել գիտական գաղափարների էությունը խորապես բացատրել այն մարդկանց, ովքեր գիտությամբ հետաքրքրվում են միայն ընդհանրապես և, անկասկած, դրանով գործնականորեն չեն զբաղվում: Ուստի, ամենուրեք, որտեղ միայն հնարավոր է, ձգտել եմ խուսափել գիտական տերմինաբանությունից և մտքերս շարադրել հանրամատչելի լեզվով»: Այնուհետև Վիները բացատրում է, թե ինչու է ձեռնարկել այդքան շնորհակալ մի գործի: Եվ անուղղակի նշելով մի շարք խթանիչ շարժառիթներ, նա գրում է. «Բացի դրանից, ես ուզում էի որոշ մտքեր հաղորդել այն մարդկանց, ովքեր պատրաստվում են իրենց կյանքը նվիրելու մաթեմատիկային կամ որևէ այլ գիտության: Ինձ թվում է, որ մեր մտավորականությունը վատ է պատկերացնում, թե գիտությամբ զբաղվելն ինչպիսի՜ պարտավորություններ է դնում մարդու վրա և ի՛նչ իրադարձության մեջ է ընթանում գիտնականի կյանքը»:

Մի շնչով կարդացվող, հրապուրիչ և մեծարժեք այս գիրքն ընթերցողին կհամոզի, որ Վիները ո՛չ միայն հաջող է լուծել իր առջև դրված խնդիրը՝ շարադրելով իր գիտական աշխատանքի տեխնոլոգիան (որը խիստ օգտակար է բոլոր գիտաշխատողների համար, անկախ նրանց մասնագիտությունից), այլև կարողացել է անկեղծ ու ճշմարտացի պատմել իր մտորումները երկրագնդի բոլոր ժողովուրդներին հուզող բազում հարցերի վերաբերյալ:

Անհարկի կլիներ այս փոքրիկ գրախոսականում շարադրել գրքի յուրաքանչյուր գլխի թեկուզ կարճառոտ բովանդակությունը և արտահայտել մեր նկատառումները, մանավանդ որ չի կարելի չհամաձայնել ռուսերեն թարգմանության առթիվ գրքում զետեղված խմբագրական ակնարկի միանգամայն արդարացի գնահատականին. «Ինչպես ամեն մի ինքնակենսագրություն, Ես մաթեմատիկոս եմ գիրքը ևս խորապես անձնական է. այն արտացոլում է հեղինակի սուբյեկտիվ հայացքներն ու տրամադրությունները: Որոշ դեպքերում այդ հայացքներն ու տրամադրությունները զերծ չեն բուրժուական հասարակության պայմաններում դաստիարակված ու ձևավորված գիտնականների մեծ մասին հատուկ պատրանքներից. գիրքն ինչ-որ չափով արտացոլում է նաև հեղինակի բարձր անհատականությունը»:

Այս ամենին հարկ է ավելացնել, որ Վիների գրքի բոլոր նյութերը բավական ակնառու լուսաբանում են Մարքսի իրավացի ասույթը, թե՝ «Գիտության մեջ չկա լայն ճանապարհ, և միայն նա կարող է հասնել դրա շողշողուն բարձունքներին, ով, չվախենալով հոգնածությունից, մագլցում է նրա քարքարոտ արահետներով» (К. Маркс и Ф. Энгельс, Соч. т. 23, стр. 25): Եվ ահա թե ինչ է գրում Ն. Վիները. «Ես միշտ գիտության բնագավառում ինձ օտար էի զգում և չէի կարող որևէ բարիքի հույս ու-

[1] Նորբերտ Վիներ, Ես մաթեմատիկոս եմ, «Հայաստան» հրատ., 1969, 442 էջ:

նենալ, բացի իմ սեփական արյուն-քրտինքով ձեռք բերվող բարիքներից»:

Այժմ ընդհանուր գծերով նշենք, թե կիբեռնետիկայի մշակման տեխնոլոգիայից զատ, ուրիշ ինչ պրոբլեմներ են շոշափվում գրքում:

Ընտանիքի հարցերին սերտորեն առնչվող հայրերի ու որդիների, ինչպես և երիտասարդներից տաղանդավոր գիտական կադրերի պատրաստման պրոբլեմները Վիները քննության է առնում բավական հաճախ, գրեթե մշտապես և հար ուշադրավ: Ընթերցողներին հետաքրքրական կլինի իմանալ, թե ինչպես էր Նորբերտ Վիները վերաբերվում իր ծնողներին ու երեխաներին, ծանոթանալ նրան աշխատակցած ու մտերիմ գիտնականների մի մեծ շրջանի ընտանեկան ու ազգակցական հարաբերություններին: Այդ առթիվ նա գրում է. «Սակայն կյանքում իմ ձեռք բերած հաջողությունների, այդ թվում և՝ գիտականի համար, անշուշտ, ես պարտական եմ դաստիարակության որոշ առանձնահատկություններին»:

Վիներին բախտ է վիճակվել գործնական ուղևորություններ կատարել Եվրոպայի բոլոր երկրները, Կանադա, Մեքսիկա, Ճապոնիա, Չինաստան, Հնդկաստան: Այս, ինչպես և այն առիթով, որ, դեռ մանկուց, իբրև հրեա, նա ներգրավվել է ռասայական և ազգային հարցերի շրջանակը, բավական հաջողությամբ քննարկում է ողջ աշխարհի գիտնականների բարեկամության պրոբլեմը և բացահայտում իր ինտերնացիոնալիզմը, հիրավի, կոնկրետ գործերով: Մեկ տարի, 1935 թ., նա համատեղ աշխատել է մաթեմատիկայի չին պրոֆեսորի հետ և ահա թե ինչ է գրում. «Երեխաներս արդեն դուրս էին եկել մանկական հասակից և հետըզհետե դառնում էին մեր ընկերները: Նրանք սկսեցին իրենց կյանքը, երբ արդեն ունեին բարոյական վիթխարի առավելություն՝ տեսել էին աշխարհն իր միասնության մեջ, առանց բարձր ու ցածր ռասաների որևէ բաժանման»:

Բազմիցս անդրադառնալով պատերազմի և խաղաղության, ֆաշիզմի դեմ մղվող պայքարի հարցերին, Վիներն արտահայտում է իր վերաբերմունքը դրանց նկատմամբ. նա հանդես է գալիս իբրև ռազմական թեմաների մշակման համար մոբիլիզացված գիտնական, իբրև հիտլերյան Գերմանիայում ժամանակավորապես աշխատելիս հոգեկան ցնցում ունեցած մտածող, որն ակտիվ մասնակցել է Գերմանիայից ԱՄՆ հրեա գիտնականների ու հակաֆաշիստների մասսայական արտագաղթի միջոցառումներին: Նա առանձնապես նշել է այն մեծ ավանդը, որը ներդրին գիտության մեջ Գերմանիայից արտաքսված հրեա գիտնականները:

Պակաս հետաքրքրական չեն Վիների փիլիսոփայական մտորումները տեսության ու պրակտիկայի փոխադարձ կապի, հավանականության ու պատճառականության որոշ հարցերի շուրջ, նրա հուզումնալից պատմությունն իր հոգեբանական որոնումների, ինչպես և դատողությունները՝ գիտությունը պատերազմին ծառայեցնելու, Ճապոնիայի դեմ ատոմային ռումբ գործադրելու մտադրության վերաբերյալ: Նա դառնությամբ նշում է, որ «Ռումբի մահաբեր ներգործության մասին իմացող, ապագա ռումբերի ավերիչ ուժը ուրիշներից ավելի լավ պատկերացնող գիտնականների կասկածները պարզապես ուշադրության չառնվեցին»... Իսկ երբ ոճիրը կատարվեց, և սկսեցին հանցագործներ որոնել՝ «Կարելի՞ էր քավության ավելի լավ նոխազ գտնել, քան գիտնականներն են»: Վիները համոզված է, որ «...մաթեմատիկայի բարձրագույն կոչումը հենց մեզ շրջապատող քաոսում թաքնված կարգի հայտնագործումն է... Այսպես առաջին անգամ գլխումս ծագեց այն միտքը, որ մաթեմատիկական վերացական տեսությունները, որոնք ես ուսումնասիրել էի, անմիջական առնչություն ունեն բնության նկարագրության հետ: Այստեղից արդեն հեռու չէր այն համոզումը, որ բնությունը, բառիս լայն իմաստով, կարող է և պետք է լինի, ո՛չ միայն իմ հետազոտություններով լուծվող խնդիրների աղբյուր, այլև դրանց լուծման համար պիտանի ապարատ տրամադրի»:

Այդ գրքում Վիները ծավալուն տեղ է հատկացրել գիտական աշխատանքի բարոյականության, էթիկայի ու գեղագիտության պրոբլեմներին վերաբերող իր հայացքներին: Բարեխղճորեն նա հարգանքի տուրք է հատուցում այն գիտնականներին, որոնց մոտ ուսանել է, կրթվել, որոնք օգնել, խորհուրդներ են տվել իրեն. խոր հարգանքով է խոսում այն գիտնականների մասին (այդ թվում և սովետական), որոնք առանձին հարցերի մշակմամբ առաջ են անցել իրենից. տալիս է այլ գիտնականների հետ համատեղ աշխատանքի ճիշտ գնահատականը: Հատկանշական է, որ մեծաթիվ հետազոտությունների զգալի մասն ստեղծվել է այլոց համագործակցությամբ: «Գիտությամբ բեղմնավոր կերպով զբաղվելու համար,— գրում է նա,— ես նախ և առաջ պետք է ուրիշ գիտնականների հետ մտքերի փոխանակություն կատարելու հնարավորություն ունենամ»: Ապա՝ «Գիտնականը պետք է տեղյակ լինի այն ամենին, ինչ կատարվում է իր շուրջը, այլապես նրա աշխատանքն իսկական արդյունք չի տա»: Ահա թե ինչու այնպես անհրաժեշտ է, որ գիտնականն «...ապրի մի աշխարհում, որտեղ գիտությամբ զբաղվելն ապահովում է գոյության հնարավորությունը, որտեղ կան ընկերներ, որոնց հետ զրուցելով կարելի է կատարելագործել սեփական ունակությունները»:

Այս ամենի հետ մեկտեղ Վիները ցավով հիշատակում է գիտական էթիկայի կոպիտ խախտման դեպքեր... Ողջ սրտով նա խղճում է ժամանակակից երիտասարդ գիտնականներին այն բանի համար, որ նրանցից շատերը «...ուզում են նրանք այդ թե ոչ, ժամանակի ոգու պատճառով դատապարտված են ծառայելու որպես մտավոր լակեյներ կամ աշխատանքի գալու և գնալու ժամանակը նշող հաշվետախտակներ»:

Չի կարելի չանդրադառնալ գրքի հետևյալ հատվածին. «Գրեթե բոլոր նախընթաց դարաշրջաններում գիտության բնագավառն էին ընտրում միայն նրանք, որոնց չէին վախեցնում աշխատանքի խստությունը և արդյունքների ողորմելիությունը... Իսկ պատերազմի ժամանակներից այնպիսի բախտախնդիրները, որոնք առաջ բորսայի մակլերներ, կամ ապահովագրական բիզնեսի լուսատուներ էին դառնում, տառացիորեն հեղեղեցին գիտության ասպարեզը:

Մենք ստիպված էինք հրաժարվել վաղեմի շատ պատկերացումներից: Մենք բոլորս գիտեինք, որ գիտնականներն իրենց թերությունները ունեն: Մեր շրջանում կային մանրախնդիր մարդիկ, ոգելից խմիչքի սիրահարներ, փառասերներ, բայց նորմալ իրադրություններում մենք չէինք սպասում մեր միջավայրում հանդիպել ստախոսների և բանսարկուների»:

Ն. Վիների գրքում հետաքրքրական շատ մտքեր կան գիտական հիմնարկությունների կազմակերպման, թեմայի ընտրման ազատության, գիտաշխատողի ռեժիմի, տարբեր մասնագիտության գիտնականների համատեղ ուսումնասիրությունների արդյունավետության և շատ այլ պրոբլեմների վերաբերյալ: Հանգամանորեն բացահայտելով, որ, մի կողմից՝ «Ո՛չ լայն հասարակությունը, ո՛չ մեծ ադմինիստրատորները չեն հասկանում գիտության զարգացման ներքին պրոցեսները», և, մյուս կողմից, եթե կառավարողները հնարավորություն ունենային, կներքինացնեին գիտնականների գլուխները, ցույց է տալիս, որ «նրանք տեսնում են, թե գիտությունն ինչպես ուժգնորեն է ազդում աշխարհի ճակատագրի վրա և վախենում են նրանից»: Այս առումով իսկ ուշագրավ են նրա դատողությունները գիտության դերի, գիտական հաստատությունների մասին: Համալսարանները, ակադեմիաները և գիտական այլ հաստատություններ, գրում է նա. «...չեն կարող պահանջել և չեն պահանջում հույսերն ու իդեալները անհապաղ վերածել մանր ստակի: Նրանք գոյություն ունեն այն հավատի շնորհիվ, որ գիտելիքների կատարելագործումը բարիք է, որը վերջ ի վերջո պետք է օգուտ բերի մարդկությանը»:

Վիների գիրքը գրված է ո՛չ միայն և ո՛չ այնքան մաթեմատիկոսների, այլ կրթված, հետաքրքրասեր մարդկանց համար: Այստեղ բավական հաջող են արծարծված գիտական զանազան կոնցեպցիաներ, մարդկանց, երկրների, վայրերի, առողջարանների, քաղաքների, կենցաղային նկարագրությունները գեղագիտական հաճույք են պատճառում ընթերցողին:

Գիրքն ամենից ավելի օգտակար է գիտության տարբեր բնագավառներում գիտական աշխատանքին նվիրված երիտասարդությանը:

Գրախոսվող գրքի էջերում գիտության ու տեխնիկայի պատմաբանները հետաքրքրական մանրամասներ կգտնեն մաթեմատիկայի, կիբեռնետիկայի, կենսաբանության, հոգեբանության, ինֆորմացիայի տեսության, էլեկտրատեխնիկայի և հաշվողական տեխնիկայի նոր բնագավառների առաջացման ու զարգացման պատմության վերաբերյալ: Սոցիոլոգները, փիլիսոփաներն ու հոգեբանները հետաքրքրասիրությամբ կվերլուծեն և կքննադատեն Վիների հայացքները՝ կապակցված այնպիսի հարցերի հետ, որպիսիք են՝ ընտանիքի դերը տաղանդների դաստիարակման գործում, պատերազմի, խաղաղության, գիտության հասարակական նշանակության, կիբեռնետիկայի փիլիսոփայական եզրերը, ռասիզմն ու նացիոնալիզմը, կրոնի և գիտության փոխհարաբերությունները և այլն:

Ինժեները, էլեկտրիկը, էլեկտրակապավորն ու էլեկտրոնիկայի մասնագետը գրքում կկարդան Ն. Վիների հետաքրքրական շատ ասույթները, որոնք ցույց են տալիս, թե ինչպես են այդ բնագավառներում գյուտեր արվում և ինչպիսի անակնկալ արդյունքներ կարող է տալ ինժեներների, մաթեմատիկոսների, կենսաբանների, բժիշկների համագործակցությունը:

Կապիտալիզմի քննադատներն այստեղ շատ փաստեր ու տեսակետներ կգտնեն կապիտալիզմի արատներին վերաբերող հարցերի շուրջ:

«Հայաստան» հրատարակչությունը վերոհիշյալ գրքի հրապարակմամբ սքանչելի նվեր է մատուցել զանգվածային ընթերցողներին: Գիտության բոլոր բնագավառների, մանկավարժների, գրողների, ժուռնալիստների և առհասարակ մտքի մշակների սեղանի զարդը կլինի «Ես մաթեմատիկոս եմ» աշխատությունը, որն, ի դեպ, զերծ է մաթեմատիկական որևէ ֆորմուլից:

ԱԶ. Գ. ԱԴՈՅԱՆ

## ԿԱՐԵՎՈՐ ՃՇԳՐՏՈՒՄ

*ՀԿԿ Իջևանի շրջկոմի պրոպագանդայի և ագիտացիայի բաժնի վարիչ ընկ. Ռ. Նզդ... մեր խմբագրությանը հղած նամակում գրում է, որ 1920 թ. նոյեմբերի 29-ին, Հայաս... սովետական հռչակելուց հետո, Հայաստանի հեղկոմի նախագահ Սարգիս Կասյանը հաջորդ ... նոյեմբերի 30-ի առավոտյան, Իջևանից (Քարվանսարայից) հեռագիր հղեց Վ. Ի. Լենին...*

*Այս փաստն անառարկելի ճշմարիտ է, մինչդեռ մերթ ընդ մերթ մամուլի տարբեր օրգ... ներում ոմանք, անդրադառնալով այդ պատմական ակտին, հիշատակում են, որ հայ ժողով... համար բախտորոշ այդ հեռագիրը հղված է Դիլիջանից, և ոչ Իջևանից: Այդ անճշտությունը սպրդել է նաև «Հայաստանի կոմունիստական պարտիայի ուրվագծեր» գրքում (տե՛ս 1958 թ., Երևան, էջ 266):*

*Նակայն առավել հավաստի փաստերը վկայում են, որ Հայաստանի հեղկոմն իր առաջին հեռագիրը Վ. Ի. Լենինին ճղել է Իջևանից: Մեր ձեռքի տակ է դրա լուսանկարային պատճենը՝ ստացված Մոսկվայից՝ ՍՄԿԿ Կենտկոմին առընթեր մարքսիզմ-լենինիզմի ինստիտուտի (ՄԼԻ) կենտրոնական կուսակցական արխիվից: Դա ոչ մի կասկած չի թողնում, որ հեռագիրն, իրոք, հաղորդված է Իջևանից:*

*Հայաստանի հեղկոմի կողմից Վ. Ի. Լենինին Իջևանից հեռագիր հղելու մասին հավաստում են նաև Իջևանի (Քարվանսարայի) այն ժամանակվա փոստ-հեռագրատան պետ Ռ. Սահակյանը և հեռագրիչ Ս. Եդիլյանը, որոնք անձամբ են հաղորդել հեռագիրը: Մեր տրամադրության տակ են նրանց գրավոր բացատրությունները այդ մասին:*

*Հետևաբար, պատմական իրողությունն այն է, որ Հայաստանի Հ... առաջին հեռագիրը Վ. Ի. Լենինին հղվել է 1920 թ. նոյեմբերի 30-ի առավոտյան, Իջևան... ոչ ... րև Դիլիջանից:*

*

* *

Մեր խնդրանքով ՄԼԻ հայկական ֆիլիալի կուսպատմության սեկցիան 1971 թ. օգոստոս... 4-ին ճնճարկեց վերոհիշյալ նամակը և գտավ, որ 1920 թ. նոյեմբերի 30-ի առավոտյան Վ. Լենինին ճղած ճեռագրի օրվա ու վայրի վերաբերյալ ճշգրտումը միանգամայն տեղին է:

*ԽՄԲԱԳՐՈՒԹՅՈՒՆ*

ԽՄԲԱԳՐԱԿԱՆ ԿՈԼԵԳԻԱ.

ԱԴՈՅԱՆ Ա. Գ. (գլխավոր խմբագիր), ԱՎԵՏԻՍՅԱՆ Վ. Ա., ԳԵՎՈՐԳՅԱՆ Վ. Հ. (պատասխանատու քարտուղար), ԹԵԼՈՒՆՑ Ա. Մ., ՂԱՐԻԲՋԱՆՅԱՆ Գ. Բ., ՄԻՔԱՅԵԼՅԱՆ Ս. Ա., ՆԱԼԲԱՆԴՅԱՆ Ս. Ս., ՍՏԵՓԱՆՅԱՆ Ա. Հ., ՍԻՄՈՆՅԱՆ Ա. Ս., ՍԱՐՈՅԱՆ Է. Մ.

Адрес редакции,— Ереван-33, Барекамутян 59-г.

Խմբագրության հասցեն՝ Երևան—33, Բարեկամության 59 գ.: Հեռախոսներ՝ պատ. քարտուղար՝ 57—37—80, տեսության և էկոնոմիկայի բաժիններ՝ 57—25—29, կուսակցական կյանք և կուլտուրայի բաժիններ՝ 57—19—80, գրական աշխատող՝ 57—60—64:

ՎՖ 01658 *Պատվեր 1340* *Թղթի չափսը 70×108 1/16: Տիրաժ 12.300* *Գինը 25 կոպ.:*

*Տպ. 7 մամուլ, մամուլում 68840 նիշ:* *Ստորագրված է տպագրության՝ 15/IX 1971 թ.:*

*ՀԿԿ Կենտկոմի հրատարակչության տպարան, Ալ. Խասհակյան փող. № 28:*

# ՁԵԶ ՀԱՄԱՐ ԸՆԹԵՐՑՈՂՆԵՐ

## *ՆՈՐ ԳՐՔԵՐ*

ԼԵՆԻՆ Վ. Ի.— ԸՆՏԻՐ ԵՐԿԵՐ, *երեք հատորով, հատոր 1-ին (1897—1916 սեպտեմբեր): Մ.,* «Политиздат», *1971, 844 էջ:*

ԼԵՆԻՆ Վ. Ի.— ԿՈՒԼՏՈՒՐԱԿԱՆ ՀԵՂԱՓՈԽՈՒԹՅԱՆ ՄԱՍԻՆ: *Մ.,* «Политиздат», *1971, 256 էջ:*

*Այս ժողովածուում զետեղված են կուլտուրական հեղափոխության մասին Վ. Ի. Լենինի տարբեր տարիների աշխատությունները և երկերը, որոնք խմբավորված են ըստ թեմաների:*

ԼԵՆԻՆ Վ. Ի.— ԸՆԴԴԵՄ ՊԱՀՊԱՆՈՂԱԿԱՆՈՒԹՅԱՆ, ԽՄԲԱԿԱՅՆՈՒԹՅԱՆ, «ՁԱԽ» ՕՊՈՐՏՈՒՆԻԶՄԻ: *Մ.,* «Политиздат», *1971, 468 էջ:*

Լունաչարսկի Ա. Վ.— ՊԱՏՄՎԱԾՔՆԵՐ ԼԵՆԻՆԻ ՄԱՍԻՆ: *Մ.,* «Политиздат», *1971, 48 էջ:*

*Բոլշևիկյան կուսակցության հնագույն գործչի հուշերն են Իլյիչի մասին, որոնք վերաբերում են տարագրության, նախահեղափոխական և սովետական իշխանության հաստատման առաջին տարիներին:*

ՓԻԼԻՍՈՓԱՅ... ...ԱՆՐԱԳԻՏԱՐԱՆ: *Հատ. 5: Մ.,* «Энциклопедия» *հրատ., 1970, 740 էջ:*

ՍՈՎԵՏԱԿԱՆ ... ...ԻՆ: *Ուսումնական ձեռնարկ: Մ.,* «Высшая школа» *հրատ., 1971, 432 էջ:*

ԱՐՏԱՍԱՀՄԱՆՅԱՆ ՄԱՐՔՍԻՍՏՆԵՐԸ ԲՈՒՐԺՈՒԱԿԱՆ ԳԱՂԱՓԱՐԱԽՈՍՈՒԹՅԱՆ ԴԵՄ ՄՂՎՈՂ ՊԱՅՔԱՐՈՒՄ: *Թարգմանությունների ժողովածու: Մ.,* «Прогресс» *հրատ., 1971, 352 էջ:*

*Այստեղ զետեղված են արտասահմանյան ականավոր մարքսիստների հոդվածները, ...ր մերկացվում, քննադատվում են բուրժուական «հակակոմունիզմը» և գաղափարա...ան այլ հարցեր:*

ՓԱՐԻԶԻ 1871 ԹՎԱԿԱՆԻ ԿՈՄՈՒՆԱՅԻ ՊԱՏՄՈՒԹՅՈՒՆԸ: *Մ.,* «Наука» *հրատ., 1971, 804 էջ:*

ՈՒՂԵՂԻ ԲԻՈՔԻՄԻԱՅԻ ՀԱՐՑԵՐ: *Հատ. 6 (ժողովածու): Ե. ԳԱ հրատ. 1970, 284 էջ:*

Եղիշե— ՎԱՐԴԱՆԻ ԵՎ ՀԱՅՈՑ ՊԱՏԵՐԱԶՄԻ ՄԱՍԻՆ: *Գրաբարից թարգմանեց՝ Եր. Տեր-Մինասյանը: «Հայաստան» հրատ., 1971, 238 էջ:*

Թումանյան Հովհաննես— ԵՐԿԵՐ, *«Լույս» հրատ., 1971, 104 էջ (սփյուռքահայ մանուկների համար):*

...նդրաշով Ս. Ն.— ԱՄԵՐԻԿԱՑԻՆԵՐՆ ԱՄԵՐԻԿԱՅՈՒՄ: *Մ.,* «Известия» *հրատ., 496 էջ:*

«Известия»-*ի թղթակիցը, երկար ժամանակով լինելով ԱՄՆ-ում, գրել է հոդվածներ և թղթակցություններ Ամերիկայի և ամերիկացիների ապրելակերպի մասին, որոնք զետեղված են այս գրքում:*

Կոստյուկով Ի.— ՄՈԼՈՐՎԱԾ ՀՈԳԻՆԵՐ. *Խոհեր հավատի ու կյանքի մասին.* «Политиздат», *1971, 136 էջ:*

*Հրապարակախոսական հետաքրքրական ակնարկներ են, որոնք ցույց են տալիս, թե ինչպես հավատացյալները հեռանում են կրոնից. գրքում արծարծվում են հակակրոնական դաստիարակության բազմաղան հարցեր:*

Վաուպշասով Ս. Ա.— ՏԱԳՆԱՊԻ ԽԱՉՄԵՐՈՒԿՆԵՐՈՒՄ: *Չեկիստի նոթեր: Մ.,* «Политиздат», *1971, 464 էջ:*

*Գրքում նկարագրվող իրադարձությունները տեղի են ունենում մերթ մեր հայրենիքի տերիտորիայում, մերթ՝ Եվրոպայի և Ասիայի երկրներում, ուր ընթացել են Սովետական Միության հերոսի զինվորական ու չեկիստական ծառայության 40 տարիները:*

Ձենով Յու.— ՍԻՐԱԾՍ ԳՈՒՅՆԸ ԿԱՐՄԻՐՆ Է: *Պատմվածք Վիկտոր Նոգինի մասին— Բոցավառ հեղափոխականները շարքից: Մ.,* «Политиздат», *1971, 368 էջ:*

# ԳԻՏՈՒԹՅԱՆ ԵՎ ՏԵԽՆԻԿԱՅԻ ՆՈՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ

## ԼՈՒՅՍԸ՝ ՁՈԴԻՉ

*Մոսկվայի ավիացիոն տեխնոլոգիայի ինստիտուտի մասնագետների և էլեկտրավակուումային սարքերի գործարանի աշխատակիցների համատեղ ջանքերով ստեղծվել է փորձնական մի սարքավորում, որի էներգիայի աղբյուրը հզոր լամպն է. դրա կոնստրուկցիան մշակել է տեխնիկական գիտությունների թեկնածու Վ. Սասուրովը։ Մետաղապատված ձվածրաձև հայելին որսում և կենտրոնացնում է ճառագայթները միացվող նյութերի, ձուլախառնվածքների վրա։ Ջերմությունը ֆոկուսում հասնում է ավելի քան 1000 աստիճանի։ Լույսը, նույնիսկ հեռավորության վրա, կարող է տաքացնել ու զոդել ցանկացած մետաղները՝ անկախ դրանց էլեկտրական ու մագնիսական հատկություններից. Հարկ եղած դեպքում լույսը կարող է անցնել թափանցիկ արգելքների միջով, ինչպես նաև զոդել դետալները՝ վակուումում կամ գազային միջավայրում։*

## ԱՂԸ՝ ՉԱՓԱՎՈՐ

*Ռումինացի գիտնականների հետազոտություններից պարզվել է, որ կերին չափից ավելի աղ խառնելու դեպքում այն կարող է անասունների լուրջ թունավորում առաջացնել։ Թունավորման կլինիկական ախտանիշերը նման են ինֆեկցիոն որոշ հիվանդությունների նշաններին։*

## ԷԼԵԿՏՐՈՆԱՅԻՆ ՀԵՌԱԽՈՍ

*Վերջերս Ժողովրդական տնտեսության նվաճումների համամիութենական ցուցահանդեսում ցուցադրվեց «էլետապ» ոչ սովորական հեռախոսային ապարատը։ Էլեկտրոնային հիշողություն ունեցող այս ապարատն անհրաժեշտ է հատկապես հիմնարկ-ձեռնարկությունների ղեկավարներին, տեղեկատու ծառայությունների աշխատողներին, մի խոսքով՝ հեռախոսից հաճախ օգտվողներին։ «Էլետապն» իր հիշողության մեջ պահում է մոտ 60 հեռախոսային համար։*

*Այդ աբոնենտներից որևէ մեկի հետ կապվելու համար քաղաքային հեռախոսի 6—7 նիշ հավաքելու փոխարեն բավական է սեղմել ապարատի պանելի մի ստեղնը։ Եթե այդ աբոնենտը զբաղված է, որոշ ժամանակ անց, առանց հիշեցման, «էլետապն» ինքն է միացնում ձեզ նրա հետ։ Ապարատը հնարավորություն է ընձեռում միաժամանակ կապվելու երկու աբոնենտի հետ։ Իսկ եթե անհրաժեշտ է հավաքել մի համար, որ չի տեղակայված «էլետապի» հիշողության մեջ, այդ արվում է կոճակային նիշահավաքի միջոցով, որն ավելի հարմար է, քան սկավառակաձևը։*

## ԴԵՂԱՄԻՋՈՑ ԿՈՃԻԿԻՑ

*Նոր պրեպարատն արագացնում է վերքերի ապաքինումը,— գրում է «Կեմիկլ ուիկ» ամսագիրը, վկայակոչելով Կոլումբիայի բժշկական կենտրոնի բժիշկներ Լ. Բալասին և Ջ. Պրուդենին։ Հում կռճիկը մշակվում է ֆերմենտներով, մանրացվում ցածր ջերմաստիճանում, թրթված բացակայությամբ և ստերիլիզացվում։ Մարդկանց և կենդանիների վրա կատարված փորձերը ցույց են տվել, որ այդ դեղամիջոցը կարելի է օգտագործել ստոմատոլոգիայի և վիրաբուժության բնագավառում։ Այն փաստը, որ կոճիկները նպաստում են ապաքինմանը, հայտնի է վաղուց, բայց նոր պրեպարատը 2—3 անգամ ավելի արդյունավետ է սովորական չմշակված կոճիկներից։*